ջին անգամ այս միջոցը փրկարար համարեցի, բայց շուտով հիասթափ-վեցա: Իսկ այժմ քո պատասխանը դրեց ինձ մի այնպիսի դրության մեջ, որ ես ստիպված եմ անբախտ Համլետի նման բացականչել. «Լինե՞լ, թե՞ չլինել...»:

Բավական էր. այժմ գանք գործի դրությանը. ես ուզում եմ հանձնել հորս, որ նա իմ տեղը վիճակ հանի: Անցյալ երեկո մտածեցի գնալ Գուլոշ-յանցի մոտ և նրանից տեղեկանալ զինվորագրության կարգերի մասին, մանավանդ, նա ինձ վաղուց էր ասել, թե կարող է միջոց գտնել. իրան տղին էլ ազատել էր նույն միջոցով. և երեկոյան մի խնդիր պատրաստեց. պետք է ուղարկեմ զինվորագրական ատյանին, որ ինձ, ինչպես դեռ աշ-խատանքի ընդունակ հոր աշխատանքի ընդունակ առաջին որդի, որի փոքր եղբայրներն անընդունակ են աշխատելու, տան արտոնություն՝ ազատ լինելու 3 ամյա զինվորական ծառայությունից. տեսնենք ինչ կդառ-նա:

Ես կարծում էի, թե այսօր դուք կգաք: Գնացի հարցրի, որ չեք եկել, իսկ նամակումդ էլ չես որոշում, թե երբ եք գալու: Երևի շուտով կգաք: Ես մի այնպիսի անմխիթար և տխուր տրամադրության տակ եմ, որ պատ-րաստ եմ ամեն րոպե առանց խղճալու ինձ և ուրիշների հետ վերջացնել կյանքի հաշիվը, այն կյանքի, որ չժպտաց իմ դիմաց, որի տմարդի և ստոր խաղերն ու միջոցները նպատակին հասնելու ինձ այնքան են զզվեցրել, որ ես ստիպված եմ բացականչել - մեռնել-քնել, հանգստա-նալ(3): Բայց...

Ես կատարյալ մելամաղձոտ եմ դառնում մի խոսքով:

Երեկ 40 ռուբլի ուղարկեցի Մոսկվա, որով դարձավ 110: Երեկ առա-վոտյան ես սովորականի պես գնացի տեսա կոնսիստորում սեղանիս վրա չորս նամակ: Նրանց մեկի մեջ Ղլտճյանը 5 ռուբլի էր ուղարկել բա-ժանորդաթերթի հետ: Առաքելյանը, Աղաբալյանն ու Վանցյանն էլ խոս-տացել են շուտով ուղարկել:

Այսօր էլ ստացել եմ վեց նամակ, որոնց<ից> մեկը քոնն է(4):

Ես նկատում եմ՝ ֆիզիկապես բավականին ընկել եմ, մանավանդ այս վերջին օրերս, իսկ բարոյապես դեռ ընդդիմադրում եմ շրջապատող հան-գամանքներին, և քեզանից է կախված հաղթանակը...

- Վերջապես, չեմ ուզում ասել, բայց համբերությունս հատավ, շու-տով արի. եթե ուշանաս, ես գրքերի բանը մի խումբ տղերանց կհանձնեմ և գյուղը կերթամ: Շատ ուրախ եմ, որ ձեզ այդքան հյուրասիրում են ձեր

բարեկամները, բայց թող այդ խնջույքները չլինեն ձեր ուշանալու պատճառը, եթե իրավունք կտաք այսքանն ասել...

Ինչպես երևում է, Շաքարը բաղերը քաղել, գինին քամել է, պրծել և այժմ ուրիշ բան չունենալով խաղ է անում: Նշանել էր պրծել, հետ ուղարկեց նշանը, այժմ ուզում է կրկին ընդունել: Ինչո՞ւ հետ տվեց և նրանից հետո ինչո՞ւ է ընդունում:

Մեխակի աղջիկը մեռավ: Երեկ մի ծիծաղ բան պատահեց. մի բացանողի պատահեցինք մի տեղ, ինձ համար բաց արավ և ասաց, որ քո կինը հղի է և մի շատ սիրուն (էլ չեմ հիշում ինչ) տղա կծնի: Զարմանալի բան է, ես իսկի չգիտեմ, թե ինչ կա, նա ինձ հավատացնում է, որ տղա է:

Վերջ ամենայնի, մի խոսքով՝ գալի՞ս ես, թե չէ:

Քո ***Հովհաննես Թումանյան***

<Հ. Գ.>

Ուրիշ բան չկարծես: Նրա համար եմ ասում՝ արի, որ շատ տխուր եմ և անհանգիստ:

Արդեն ժամի 12-ն է գիշերվան, միայն ես ու տատդ ենք տանը և շատ տաք-տաք խոսակցության մեջ ենք:

*

Ինքնագիրը (4 էջ) պահպանվում է ԳԱԹ, ԹՖ, ց. 3, N 24:

1. Օլգա Թումանյանի նամակը, որը գրված պետք է լինի հոկտեմբերի 5-6-ին (՞), առայժմ անհայտ է:

2. Այս և հաջորդ ակնարկները վերաբերում են կնոջ հարազատների դժգոհությանը՝ Թումանյանի կայուն աշխատավարձ չունենալու, բանաստեղծ լինելու պատճառով:

3. «Լինե՞լ, թե՞ չլինել» մենախոսության մեջ Համլետը երկու անգամ տարբեր ձևով է արտասանում այս խոսքերը. «Մեռնել, քնել ոչինչ ավելի» և ապա՝ «Մեռնել-քնել-քնե՞լ» (**Համլետ,** Ողբերգություն հինգ արարվածով, հեղինակություն Վիլիամ Շեքսպիրի, թարգմ. Սենեքերիմ Արծրունու, 1889, Թիֆլիս, III արարված, առաջին տեսարան, էջ 59):

4. Պահպանվում են հոկտեմբերի 3-4-ին գրված Արամ Առաքելյանի (ԳԱԹ, ԹՖ, N 516. այստեղ այդ անթվակիր նամակը թյուրիմացաբար համարվում է նոյեմբերի 16-ի նամակի չորրորդ էջ), Բագրատ Թումանյանի՝ հոկտեմ-

բերի 3-ի (ԳԱԹ, ԹՖ, N 643), Դավիթ Շալամյանի՝ հոկտեմբերի 1-ի, Սիմեոն Ղլտճյանի՝ հոկտեմբերի 1-ի (ԳԱԹ, ԹՖ, ց. 2, N 381 (11) նամակները:

* * *

*<u>ՆԱՄԱԿ – 2</u>*

ԱՐՍԵՆ ՂԼՏՃՅԱՆԻՆ

Թիֆլիս-Էջմիածին

1892 թ. 27/I, Թիֆլիս

Սիրելի Սիմեոն,

Բաց նամակդ ստացա(1): Գրադարանի համար առայժմ չորս գիրք ունեմ մոտս, կուղարկեմ: Տեր-Դավթյանին հասցրի պատգամդ:

Երեկ կատարեցինք կաթողիկոսական ընտրության համար եկեղեցական պատգամավորների ընտրությունը, «մշակիստները» և առհասարակ երիտասարդությունը հաղթող է երևում առայժմ(2): Ես թեև, որպես խոխա, այսինքն անչափահաս (ոչ 25 տարեկան) զրկվում էի իրավունքից ձայն տալու, մանավանդ արգելած էր կոնսիստորը, այսուամենայնիվ խառնվեցի:

Վանցյանը «Մուրճին» ուղարկել է մի հոդ<ված> «Բոշաներ» վերնագրով. կտպվի մոտերքում(3):

Լրագիրներում կարդացած կլինես այստեղի ջրօրհնեքի կամրջի խորտակման մասին. այդ սարսափելի աղետը կատարվեցավ իմ աչքի առջև: Եթե կամենաս մի ժամանակ կնկարագրեմ. դեմոնստրացիաներ եղան առաջնորդարանի առջև: Սինոդն այս գործի համար ուղարկել է առանձին քննիչ հանձնաժողով. մեզ արդեն քննել են(4):

Արդեն որոշված է գրքիս երկրորդ հատորի տպագրությունը և նամակիս հետ ուղարկում եմ բաժանորդաթերթը. այս երկրորդ գիրքը առավել մեծ է և հարուստ, առայժմ այսքանը կասեմ, հենց գնիցը կարող ես եզրակացնել: Բաժանորդաթերթն ու բաժանորդագինը աշխատիր մինչև մի ամիսն ինձ հասցնել. գիրքն ինձ նստելու է 300-350 ռուբլի(5):

Ախպեր, դու էլ օրը մի հասցե ես փոխում, մարդ շշկլում է: Գրելիք նամակի մեջ մի հաստատ բան գրիր հասցեիդ մասին:

Ընդունիր մաղթանքներս:

Քո ***Հովհաննես Թումանյան***

Շրջիր(6):

Հ. Գ. Եթե Ալեքսանդրապոլ կամ այլուր ծանոթ - մոտիկ ծանոթ և հուսալի անձնավորություն ունես, գրիր, որ բաժանորդաթերթ ուղարկեմ:

***Նույն***

*

Ինքնագիրը (4 էջ) պահպանվում է ԳԱԹ, Թֆ, N 376:
Տպագրվել է ԵԺ V, 62-63:

1. 1892 թ. հունվարին Ա. Ղլտճյանի գրած բացիկը չի պահպանվել:

2. Խոսքը վերաբերում է Մակար կաթողիկոսին հաջորդող նոր կաթողիկոսի ընտրությանը մասնակցող ծխական պատգամավորների առաջադրմանը. անցել էր Գր. Արծրունու թեկնածությունը և դա համարվում էր «մշակական» երիտասարդության հաղթանակը: Վանքի մայր եկեղեցում նույնպես ընտրվել են Արծրունին, Ալեքսանդր Մանթաշյանը, Իսահակ Բուղդանյանը:

3. Հիշատակված հոդվածը տպագրվել է՝ Մճ, 1892, N 7-8, 9:

4. Դեպքը տեղի է ունեցել հունվարի 6-ին: Կամուրջը կառուցվել էր հատկապես ջրօրհնեքի այդ օրվա ծիսակատարության համար:

Այդ օրերին «Մշակի» խմբագրությունը Արծրունու նախաձեռնությամբ կազմակերպում է հանգանակություն զոհվածների ընտանիքներին օգնելու նպատակով:

Ուշագրավ է, որ այդ հանգանակությանը մասնակցել է նաև Թումանյանը, մուծելով 10 ռուբլի (ՄՇ, 1892, N 6), երբ ամիսը ստանում էր ընդամենը 16 ռ. 60 կ. աշխատավարձ:

Նամակի «մեզ արդեն քննել են» խոսքերը վերաբերում են կոնսիստորիայի աշխատակիցների հարցաքննությանը: Հոգևոր կոնսիստորիան էր մեղադրվում, քանի որ նա էր կառուցել ժամանակավոր կամուրջը, նա էլ պատասխանատու էր քանդվելու համար (**Լեո,** Գր. Արծրունի, 1902, հտ. III, էջ 407): Բացի դրանից, Թումանյանը նույնպես եղել էր դեպքի վայրում ոչ միայն որպես ականատես, այլև ենթակա այդ աղետին:

5. Բանաստեղծը նախապես բանակցություններ է վարել իր երկերի ժողովածուն Պետերբուրգում տպագրելու համար, բայց Բագրատ Թումանյանի խորհրդով դիմել է Մ. Բարխուդարյանին՝ Մոսկվայում հրատարակելու: Պատճառը Պետերբուրգում հայերեն տառերի պակասն էր և տպագրության այլ դժվարություններ (տե'ս Բ. Թումանյանի՝ 1890 թ. մարտի 29-ի նամակը, որից

երևում է, թե բանաստեղծը նրան դիմել է մարտի կեսերին գրած անհայտ նամակով (ԳԱԹ, ԹՖ, N 647):

6. Ստորագրությունից հետո **Շրջիր** գրված է «Հ.Գ.»-ն նամակի չորրորդ էջում կարդալու համար:

* * *

## *<u>ՆԱՄԱԿ – 3</u>*

ԱՎԵՏԻՔ ԱՐԱՍԽԱՆՅԱՆԻՆ

Ջալալօղլի - Թիֆլիս

1892, օգոստոսի 12, Ջալալօղլի

Հարգելի պ. Արասխանյան,

Ես մինչև օրս մեր գյուղումն էի: Մայրս սաստիկ հիվանդ էր, գնացել էի տեսնելու: Այնտեղից վերադարձա և ստացա նամակ պ. Վանցյանից(1), որ ուղարկելով նամակիս հետի թերթը, խնդրում է ուշադրություն դարձնել «Մուրճում» տպագրելի յուր «Բոշաներ» հոդվածի մեջ եղած օտարազգի բառերի ճշտության վերա(2): Այս թերթը պարունակում է նույն բառերը պարզ և մեկին գրած, որ Դուք աչքի առաջ ունենաք տպագրության ժամանակ, եթե կպատահեն դժվար ընթեռնելի օտարազգի բառեր:

Այստեղի մի քանի գյուղերում խոլերան ճարակում է: Ցուրտ է:

Խնդրեմ բարևեցեք տիկնոջը և Բարխուդարյաններին(3):

Ձեզ հարգող`

***Հ. Թումանյան***

*

Ինքնագիրը (3 էջ) պահպանվում է ԳԱԹ, ԹՖ, N 303:

Տպագրվել է ԵԺ V, 68-69:

1. Գր. Վանցյանի այդ նամակը չի պահպանվել:

2. Տպագրվել է Մճ, 1892, N 7-8, 9:

3. Նկատի ունի «Մուրճի» աշխատակից Արշակ Բարխուդարյանին և նրա եղբորը` Անդրեասին:

* * *

## *ՆԱՄԱԿ – 4*

ԱՐՍԵՆ ՂԼՏՃՅԱՆԻՆ

Թիֆլիս - Էջմիածին

1892, սեպտեմբերի 12, թիֆլիս

Սիրելիդ իմ Սիմեոն,

Ուրեմն՝ հոգով ու մարմնով կորար. այսպես է ասում ժողովրդական առածը կուսակրոն հոգևորականի համար:

Սակայն, սիրելի ընկեր, հայոց կուսակրոն հոգևորականությունը այս օրերում ծանր գործ ունի կատարելու. մեր ներկա վիճակի բարվոքման և ապագայի ապահովության խնդիրը դրած է նորա առաջին, դու էլ մտնելով այդ դասակարգի մեջ, պատասխանատու հոգատարի պարտականություններ ես հանձն առնում: Դու, անշուշտ, քաջ զգում ես այս բոլորը, և ես սրտումս հույս տածելով քո ապագա ազգանվեր և լուսամիտ գործունեության նկատմամբ, համբուրվելով՝ շնորհավորում եմ սրբազան պաշտոնդ և խորասիրտ մաղթում եմ հաջողություն...(1)

Սիրելի Սիմեոն, ես նոր եմ վերադարձել գյուղից, ամառանոց էինք գնացել: Խուլերայից պրծա, այնպես, ինչպես դու թեմական տեսուչներից և հոգաբարձուներից:

Գրքերս արդեն տպագրված են և ճանապարհ են ընկել Մոսկվայից(2):

Հենց փողն ստանալու օրը ես գնել եմ քեզ համար մի «Լուսադեմին»(3), իսկ մյուս գրքերից այն (ինչ-որ) «Պալատի գաղտնիքները» չկար(4), երրորդը՝ «Человек как» и т. д. նույնպես գտա, երկու հատորը 4 ռուբլի(5), յուր ժամանակին քեզ գրել եմ և դեռ պատասխան չեմ ստացել: Գրիր ինչ առնեմ: Դու աշխատիր գրքեր շատ ունենալ, «Մուրճի» փողը երբ որ լինի կարելի է: Առաքելյանը պսակվել է: Վանցյանը գրականության մշակ է դարձել. դու ինչո՞ւ չես բան գրում:

Արդյոք ե՞րբ ես պոպոզ դնելու գլխիդ:

Այստեղ մեծ աղմուկ է հանել և անախորժ տպավորություն արել «Արձագանքում» տպվող «Աստառը» Գամառ Քաթիպայի. Արծրունուն է ներկայացնում(6):

Գրիր տեսնեմ ոնց ես:

Քո ***Հովհաննես***

«Մուրճերը» կուղարկեմ:

*

Ինքնագիրը (4 էջ) պահպանվում է ԳԱԹ, ԹՖ, N 377:

Տպագրվել է ԵԺ V, 71-72:

1. Նկատի ունի Սիմեոն Ղլտճյանի աբեղա ձեռնադրվելը Արսեն անունով:

2. Խոսքը վերաբերում է Բանաստեղծությունների II հատորի տպագրությանը, որը ձգձգվում է մինչև նոյեմբեր (մանրամասնությունները տե՛ս հաջորդ նամակների ծանոթագրություններում):

3. Խոսքը վերաբերում է լեհ գրող Թոմաս Էժի (1824-1915) «Լուսադեմին» վեպի՝ Մ. Բարխուդարյանի ռուսերենից կատարած հայերեն թարգմանությանը (1891, Մ.):

4. Նկատի ունի գերմանացի գրող Գ. Բոռնի «Մադրիդի պալատի գաղտնիքները» վեպը:

5. «Человек как...» գրքի լրիվ վերնագիրը և հեղինակը չպարզվեց:

6. «Աստառը» չորս արարով դրամատիկական գործ է, պարսավագիր, որը ծաղրում է Գր. Արծրունուն և նրա կնոջը՝ Մարիամ Մելիք-Աղամալյանին: Գրելով ուրիշների դրդմամբ և տալով Աբգար Հովհաննիսյանին կարդալու, Պատկանյանը նպատակ չի ունեցել պարսավագիրը հրապարակելու, ընդհակառակը, ժամանակ անց, զղջալով գրածի համար, հետ է պահանջել Հովհաննիսյանից և ինքնագիրը ոչնչացրել: Տպագրության փաստը ինքնին ապացույց է, որ վերջինս, ինքնագիրը հանձնելով հեղինակին, իր մոտ պահել է կրկնօրինակը և սպասել համապատասխան առիթի տպագրելու և հակառակորդից՝ Արծրունուց, վրեժխնդիր լինելու համար: Առիթը ստեղծում է հեղինակի մահը (1892 թ. օգոստոսի 26), որից անմիջապես հետո «Արձագանքի» 1892 թ. N 102-ից սկսվում է «Աստառի» տպագրությունը, որը և, Թումանյանի խոսքերով, «մեծ աղմուկ է հանում» և «անախորժ տպավորություն» գործում ինչպես Թիֆլիսի, այնպես էլ Նոր Նախիջևանի ընթերցողների շրջաններում. ամենուրեք դատապարտվում էր Աբգ. Հովհաննիսյանի արարքը. բողոքում է նաև հեղինակի այրին և որբերի խնամակալը՝ Գր. Չալխուշյանը (Լեո, Գր. Արծրունի, հտ. III, էջ 441-444):

* * *

*<u>ՆԱՄԱԿ – 5</u>*

ԱՐՍԵՆ ՂԼՏՃՅԱՆԻՆ

Թիֆլիս - Երնջակ

1894, IV/17, Թիֆլիս

Սիրելի Արսեն,

Շնորհավորում եմ զատիկդ: Թող աքսորանքիդ մեջ ի մեռելոց հարյալ Քրիստոսի հավիտենական գաղափարները քեզ մխիթարեն: Թող ոչ թե աքսորավայրերն ու բնակատեղիքը լինեն քո տխրության և ուրախության պատճառները, ոչ թե բնակարաններիդ ու խցերիդ փոփոխությունը լինի վշտերիդ ու հոգսերիդ առարկան, այլ գաղափարներիդ և սկզբունքներիդ հաստատությունն ու պաշտպանությունը: Եվ ես քո զվարթ նամակից նկատում եմ, որ այսպես է: Քրիստոնեավարի տար քո լուծը և քրիստոնեավարի կռվիր թշնամիներիդ դեմ: Ահա մի անխորտակելի միջոց:

Էջմիածնից եկած լուրերը մեկը մյուսին գերազանցում են: Տեր Հովհաննեսի գործն էլ շատ աղմկալի եղավ. մի խնդիր (ժողովրդի կողմից) գնացել է վերև, մյուսը տված է սրբազան Պարայանցին(1):

Սպասում եմ, թե ինչ նյութ ես տալու վարդապետների կյանքից. հետաքրքիր է(2):

«Դաշնակներից» քեզ կուղարկեմ 50-60 հատ, վերջին «Դաշնակներն» են սրանք. այս էլ պահած էր Լոռու համար: Հետո կուղարկեմ գրքերը:

Քեզ մի լավ պաշտոն եմ հանձնում: Իմ «Արտավազդի» բանը լավ է երևում: Դու այժմ մի երկրում ես, որտեղ շատ բան կլինի մնացած հին ժամանակներից: Քո գիտեցած և լսած ժողովրդական երգերդ կգրես ու կուղարկես ինձ, քեզանից հիշատակ քո աքսորանքի օրերից: Անհասկանալի բառերը բացատրիր, մեկ էլ գրիր ինձ, թե այդտեղ մեկին մյուսի վրա սիրահարեցնելու համար ինչ միջոց են գործ դնում կամ ինչ ծաղիկ և ինչպես. հետո ասել տալու համար(3):

Տերտերն, Օլեն և բոլոր տանըցիք, և օրիորդները շնորհավորում են զատիկդ և շատ են բարևում:

Արիստակեսի հոդվածի ղալմաղալը երևի կարդում ես(4): Պատկերներդ գրքերի հետ կուղարկեմ. Արամին ու Գրիգորին էլ կուղարկեմ:

*Քո* ***Հովհաննես***

*

Ինքնագիրը (4 էջ) պահպանվում է ԳԱԹ, ԹՖ, 383:

Տպագրվել է ԵԺ V, 92-93:

1. Սրբազան Պարապյանցը եպիսկոպոս Գևորգ Սուրենյանցն է:

2. Հին Նախիջևանից (Երնջակից) մինչև ապրիլ Ղլտճյանի ուղարկած նամակներն անհայտ են, ուստի և հայտնի չէ, թե նա ինչ նյութեր է խոստացել վարդապետների (էջմիածնի կամ Երնջակի) մասին:

3. Խոսքը «Արտավազդ» դրամատիկական երկի մասին է, որից պահպանվում է միայն սևագիր մեկ պատառիկ (ԳԱԹ, ԹՖ, N 242: Այլ մանրամասնություններ տե'ս Ա. Ինճիկյան, 532-537): Այդ մասին տեղեկություններ տալիս են Դերենիկ Դեմիրճյանը, Վրեն Տաշրացին, Սերգեյ Գորոդեցկին (ԹԺՀ, 26, 298, 894): Անհայտ է, թե Ղլտճյանը կատարե՞լ է արդյոք Թումանյանի խնդրանքը:

4. Խոսքը վերաբերում է ապրիլի 9-ին «Մշակում» (N 41) տպագրված Արիստակես եպիսկոպոս Սեդրակյանի «Ո՞վ հավատաց» հոդվածին՝ գրված ի պատասխան «Արշեն երեց» կեղծանուն ստորագրությամբ Խրիմյան Հայրիկի «Քահանայական խնդիր» հոդվածի: «Արշեն երեցը» խիստ քննադատում էր տգետ, աղքատիմաց քահանաներին, նրանց ձեռնադրող բարձրաստիճան հոգևորականությանը և հետամնաց ժողովրդին, որը, չկարողանալով զատել գիտունին անգետից, շատ հաճախ ինքն է խնդրում մի տգետ տիրացուի քահանա ձեռնադրել (ԱՐ, 1894, N 3): Հիմնականում համամիտ լինելով «Արշեն երեցի» դրույթներին, Արիստակես եպիսկոպոսը իր հոդվածում բողոքում էր ժողովրդի հասցեին արված մեղադրանքի դեմ և իր քննադատությունն ուղղելով քահանա ձեռնադրող բարձրաստիճան հոգևորականությանը, անհրաժեշտ համարում սովորեցնել ժողովրդին՝ ջոկելու լավը վատից, գնահատելու գրագիտությունը, իմացությունը:

Հոդվածը մեծ աղմուկ է առաջացնում, և պատճառը պահպանողական հոսանքն էր. անմիջապես բացելով գաղտնիքը, որ «Արշեն երեց» ստորագրության տակ թաքնված է Խրիմյան Հայրիկը, «Արձագանքը» և «Նոր դարը» հայտարարեցին, թե Սեդրակյան եպիսկոպոսը դեմ է դուրս եկել հայոց կաթողիկոսին (մանրամասնությունները՝ ՄԵ, 1894, N 3, 4, ՄՇ, 1894, N 43-45 և այլն):

* * *

*<u>ՆԱՄԱԿ – 6</u>*

ԱՎԵՏԻՔ ԱՐԱՍԽԱՆՅԱՆԻՆ

Թիֆլիս

1895, III/21, Թիֆլիս

Մեծ<արգո> պ. Արասխանյան,

Այս տարվա «Մուրճի» N 2-ի Ձեր «Վեցամսյա գրական հանդեսների առիթով» հոդվածի մեջ իմ «Մուրճից» հեռանալը և «Հորիզոնում» երևալը բացատրել եք իմ փողասիրությամբ(1):

Եթե Դուք չեք մոռացել, ես կարծում եմ շատ կծանրանա այս մեղադրանքը Ձեր խղճի վերա, եթե մեզ անջատող օրերն ու դեպքերը չեք մոռացել, պետք է որ Ձեզ տանջի այն գիտակցությունը, որ այսպիսի սուտ եք գրել և այդպիսի ծգտում հատկացրել եք ինձ: Դուք Ձեզ անմեղ ցույց տալու համար անվանարկում եք ուրիշին, բայց այդպիսով ավելի եք տուժում, ընկնելով զրախոսության և անիրավության մեջ:

Սակայն գուցե Դուք մոռացել եք և' ինձ, և' այն օրերն ու դեպքերը, որ մեզ բաժանեցին. ես կհիշեցնեմ:

Ես միառմի, երկար ու բարակ չեմ պատմիլ այն բոլոր բարոյական պատճառները, որոնք ինձ հեռացրին «Մուրճից»: Հիշեցնում եմ միայն մի քանիսը, որ վերջին օրերում պատահեցին և ես իմ տպավորությունը հենց այն ժամանակ հայտնեցի, օր<ինակ>, «Մուրճի» խմբագրությունը վեհափառ կաթողիկոսի մոտ» հոդվածի փոփոխության գիշերը(2), Հակոբ Հակոբյանի առաջին ոտանավորի դեպքը(3), մեր վերջին երկու օրվան վեճերը: Առաջին օրը, երբ Դուք ինձ առաջուց մեղադրում էիք, թե ես «Մուրճը» կթողնեմ Վարդազարյանցի խաթեր, ապացույց էլ այն էիք բերում, թե այն ամսին ես նյութ չեմ տվել, ես Ձեզ ասացի, որ Վարդազարյանցին արդեն ասել եմ մարդոց ներկայությամբ, իրանց ընտանիքի շրջանում, որ ինքը հեռանալով, զգույշ լինի, ինձ չասի, թե դու էլ հեռացիր, որովհետև դրանով վիրավորած կլինի ինձ և կխզվի մեր բարեկամությունը և նա էլ հայտնեց, որ ինքն այդպիսի պահանջ չի անիլ երբեք: Ես Ձեզ ասացի, որ շատ զրկանքներ ես զանց եմ առել և զանց կառնեմ գրականության համար, թե «Մուրճի» նեղ վիճակն ինձ ավելի կմոտեցնի իրան և նույն ամսի համար առաջարկեցի «Բորչալվում» հոդվածը: Դուք ինձ պատասխանեցիք. «Դուք իբրև հոդվածագիր հայտնի չեք, «Շիլլիոնի կալանավորը»

տվեք(4). վեճն ավելի տաքացավ, և ես այնքան վրդովվեցի, որ վերջը, երբ Դուք ինձ իբրև նվեր «Արսեն Դիմաքսյանը» դրիք սեղանի վրա, թողեցի դուրս եկա(5):

Ես այդ միևնույն օրը նույնպիսի տաք վիճաբանություն ունեցա Վարդազարյանցի հետ, թե նա մի կերպ հաշտվի հանգամանքների հետ և չթողնի «Մուրճը», նա զայրացավ և նեղացած հեռացանք իրարից:

Երկրորդ օրը Դուք ինձ հանդիպեցիք պրոսպեկտի վրա, տարաք խմբագրատուն և ցավակցություն հայտնեցիք, թե ժողովուրդն իմ մասին ասում է, թե ես արդեն բարոյապես ընկել եմ, որ «Մուրճից» հեռանում եմ Վարդազարյանցի խաթեր, և այդ ժողովուրդը դուրս եկավ մի օրիորդ (օր. Ե. Բ.), որը սակայն, մինչև անգամ այդպիսի բան չէր ասել: Դուք ինձ առաջարկեցիք հարաբերություններս կտրել Վարդազարյանցի հետ (մինչդեռ գիտեիք, թե նրան ինչպես էի զգուշացրել, որ այդպիսի բան չասի Ձեր վերաբերությամբ): Դուք ինձ Ձեզ երախտապարտ հայտարարեցիք «Մուրճում» արած հառաջադիմությանս համար, իմ ունեցած (շատ ու քիչ) ժողովրդականության համար, և այլն, և այլն: Կհիշեք և իմ պատասխանները, որոնց դառնության պատճառը Ձեր խոսքերի մեջ պետք է որոնեիք: Կհիշեք և' խմբագրական ժողովի, և' «Մուրճի» խմբագրության մասին արած վիճաբանությունները, և' նրանից մի քանի օր հետո Գրիգոր Վանցյանի հոդվածի պատմությունը(6): Սրանք և շատ ուրիշ դեպքեր, որ չեմ հիշատակում, Ձեզանից սառեցնելու և հեռացնելու զորություն ունեցան ինձ համար: Եվ ես հեռացա լուռ, առանց թշնամանքի, չնայելով Դուք շարունակ գրգռում էիք, մեկին ասելով, թե Դուք ինձ վռնդեցիք, որովհետև ես անտանելի էի, մյուսին հավատացնելով, թե ես լիրբ եմ, և այլն:

Սակայն դարձյալ վերադառնանք վերջին հարվածին՝ փողասիրությանը. հիշո՞ւմ եք, երբ Դուք ինձ հրավիրեցիք «Մուրճին» աշխատակցելու (Ա. գիրքս հրատարակելուց հետո)(7): Յայտնեցիք ինձ արդեն հայտնի «Մուրճի» ֆինանսական դրությունը և հետն էլ խոստացաք վարձատրել: Ես մերժեցի, թեև այն ժամանակ ընտանիքի տեր <էի> և ստանում էի ամսական 16 ռ. 66 կոպեկ կոնսիստորից: Նրանից հետո Դուք ինձ մի չեկ տվիք, ես դարձյալ հայտնեցի, թե Ձեզ և թե հրատարակչին, որ վարձատրություն չեմ ուզում և հրաժարվեցի: Վերջին օրերում ուզում էիք ինձ վարձատրել երեք տարվան աշխատակցությանս համար, չեկ գրել, որ հրատարակիչը վճարի. ես դարձյալ մերժեցի, գլխավորապես ձևը պատճառաբանելով: Դուք վկա էիք իմ այն վարմունքին, որ ես թողեցի Վարդա-

զարյանցի առաջարկած 80 ռուբլիանոց պաշտոնը և ընտրեցի Հրատարակչական ընկերության գրասենյակը 20 ռ. ռոճիկով, իբրև գրական շրջան(8): Էլ ուրիշ փաստեր չեմ բերում, ոչ էլ նրա վրա եմ գնում, թե Դուք երեք տարվան ընթացքում, որ այնքան մոտիկ ենք եղել, ի՞նչ փողասիրություն, ի՞նչ կասկածելի հատկություն եք տեսել կամ ի՞նչպես եք ճանաչել ինձ:

Միայն այսքանը Ձեզ գրելով, ես խնդրում եմ և հուսով եմ, որ Դուք «Մուրճի» առաջիկա N-ում հետ կառնեք Ձեր այն խոսքերը, իբրև թե Վարդազարյանն ինձ այն ժամանակ ապահովում էր փողով կամ թեկուզ մտադիր էր ապահովելու և ես նրա համար հեռացա «Մուրճից»: Խնդրում եմ հանուն այն բարեկամության, որ ունեցել ենք երբևիցե, ինձ չհարկադրեք անախորժ բացատրություններ տալու(9):

Ձեր նախկին աշխատակից և բարեկամ՝

***Հովհաննես Թումանյան***

***Հասցեն. Норашенская ул. д<о>м Гевондянца***

*

Ինքնագիրը (8 էջ) պահպանվում է ԳԱԹ, Թֆ, N 304: Նույն տեղում է նաև նամակի սևագիրը՝ լեզվաոճական տարբերություններով:

Տպագրվել է ԵԺ V, 100-102:

1. Արասխանյանի հիշատակված հոդվածը պատասխան է «Մշակի» «Մեր ուժերը ջլատում ենք» թղթակցությանը (ստորագրված է Բ. Մատ.): Վերջինս այն կարծիքին էր, որ հայերեն հրատարակվող բոլոր հանդեսները պետք է միանան և հրատարակեն ամենաշատը երկուսը, մեկը՝ Պետերբուրգում, մյուսը՝ Թիֆլիսում. հակառակ դեպքում կատարվում է ուժերի ջլատում: Թղթակիցը նկատի ուներ «Մուրճը», «Թատրոնը», «Հորիզոնը»՝ Թիֆլիսում, «Արաքսը»՝ Պետերբուրգում, «Հանդես գրականական և պատմականը»՝ Մոսկվայում, որտեղ Ս. Մամիկոնյանը մտադիր էր հրատարակել ևս մի հանդես «Խոսքը» վերնագրով (ՄՇ, 1895, N 15, փետրվարի 7):

Համոզված, որ «Մշակն» ակնարկում է «Հորիզոն» հանդեսի հրատարակչի (Փիլ. Վարդազարյանի) և աշխատակիցների մի մասի «Մուրճից» հեռանալը, Արասխանյանն իր հոդվածում հերքում է «ուժերի ջլատման» մասին վերոհիշյալ կարծիքը, հայտնելով, թե «Հորիզոնի» միակ կարող ուժը Հովհ. Թումանյանն էր, որի «Մուրճից» հեռանալը ոչ թե բողոք է ամսագրի խմբագ-

րի դեմ, այլ հետևանք, իբրև թե Փիլ. Վարդազարյանից ունեցած նյութական ակնկալության: Չնայած Արասխանյանի բացահայտ միտումնավորության, նրա ափսոսանքը Թումանյանի նման մի աշխատակցից զրկվելու համար ակնհայտ է (Մճ, 1895, N 2, էջ 316, 317): Արասխանյանի հիշյալ հոդվածի պատասխանը` «Պոլեմիկան հայոց մամուլի մեջ» վերնագրով, տե՛ս ՄՇ, 1895, N 50:

2. «Մուրճի» խմբագրությունը վեհափառ կաթողիկոսի մոտ» հոդվածը վերաբերում է Խրիմյան Հայրիկի 1893 թ. օգոստոսի 31-ի ընդունելությանը: Խմբագրից (Արասխանյան) ու հրատարակչից (Փ. Վարդազարյան) բացի, այդ ընդունելությանը մասնակցել են ամսագրի բոլոր աշխատակիցները, այդ թվում և Թումանյանը: Ընդունելությունը տևել է կես ժամ, որի ընթացքում Խորեն վարդապետ Ստեփանեն բոլորին մեկ առ մեկ ներկայացրել է կաթողիկոսին: Նույն օրը «Մուրճի» խմբագրության աշխատակիցները այցելել են Արիստակես եպիսկոպոս Սեդրակյանին (Մճ, 1893, N 7-8):

Ինչպես երևում է Արասխանյանի պատասխան նամակից, այդ այցելությունների մասին վերջինիս գրած հաղորդումը, նախքան տպագրությունը, քննության առարկա է դարձել, և, ինչպես Թումանյանի, այնպես էլ «Մուրճի» մյուս աշխատակիցների դրդմամբ Արասխանյանը ինչ-որ փոփոխություններ է արել հակառակ իր ցանկության (ԳԱԹ, Թֆ, ց. 2, N 262):

3. Խոսքը վերաբերում է Հ. Հակոբյանի «Ուխտ բարեկամության» ոտանավորին. հաշվի չառնելով Թումանյանի բացասական կարծիքը` Արասխանյանը տպագրել է այն (Մճ, 1893, N 10. Հ. Հակոբյանի առաջին տպագիր գործն է): «Մուրճի» խմբագրությունը վեհափառ կաթողիկոսի մոտ» հոդվածի (տե՛ս N 2 ծանոթագրությունը) և Հակոբյանի ոտանավորի տպագրության առիթով եղած վիճաբանությունների միջոցին Թումանյանի արած դիտողությունները յուրովի ընկալելով, Արասխանյանը նկատել է դիտավորություն, որը, ըստ վերջինիս, եղել է Վարդազարյանի դրդմամբ կամ նրանից նյութապես կախման մեջ լինելու պատճառով (ԳԱԹ, Թֆ, ց. 2, N 262):

Չնայած Վարդազարյանին գործակցելը որոշ չափով նյութապես ապահովում էր բանաստեղծին, այնուամենայնիվ, Թումանյանի հեռանալը «Մուրճից» ուներ ավելի շուտ բարոյական պատճառ, քան նյութական:

4. Ինչպես երևում է այս փաստերից, 1893 թ. աշնանն ավարտված էին և' «Բորչալվում» ճանապարհորդական ակնարկը, և' «Շիլիոնի կալանավորը» պոեմի թարգմանությունը: Ճամփորդական ակնարկի փաստերից մեկը վերաբերում է 1894 թվականին (ԵԺ VI, 55). ուրեմն, 1894 թ. «Հորիզոն» հանդեսի

առաջին գրքում տպագրելուց առաջ հեղինակը «Բորչալվում» ակնարկը վերանայել է:

«Շիլիոնի կալանավորը» պոեմի թարգմանության թվականը համարվել է 1895-ը (ԵԺ II, 435): Հենվելով այս նամակի վրա, Ա. Ինճիկյանը թվականը ճշտել է 1893 (տե'ս էջ 503):

5. «Մուրճի» 1893 թ. 1-6 համարներում տպագրվել է «Արսեն Դիմաքսյան» վեպը, որից հետո, արտատպվելով ամսագրից, հրատարակվել առանձին գրքով: Թերևս այդ հրատարակության հետ առնչվող ինչ-որ դեպք զայրացրել, վիրավորել է Թումանյանին:

6. Խոսքը վերաբերում է Գր. Վանցյանի «Մեր ուսումնարանների և ուսուցիչների ապահովության մասին» հոդվածի տպագրությանը: 1893 թ. սեպտեմբերի վերջերին Թումանյանն Ախալքալաքից ստանում է Վանցյանի հիշյալ հոդվածը և հանձնարարական նամակ, որով հեղինակը խնդրում էր շտապ իմանալ Արասխանյանի կարծիքը հոդվածի տպագրության մասին, մերժման դեպքում՝ անմիջապես հետ վերցնել և տրամադրել «Տարազին» (ԳԱԹ, ԹՖ, N 994): Արասխանյանը պատասխանն ուշացնում է և հոդվածը չի վերադարձնում: Նոյեմբերին, կրկին նամակ ուղարկելով Թումանյանին, Վանցյանը խնդրում է հոդվածը հետ վերցնել և պահել, տպագրությունն այլևս անժամանակ համարելով (ԳԱԹ, ԹՖ, N 994): Չնայած դրան, Արասխանյանը հոդվածը տպագրում է (ՄԾ, 1894, N 1):

7. «Մուրճին» աշխատակցելու հրավերը Թումանյանը ստացել է 1891-ի հունվարին. նույն թվի «Մուրճի» N 2-ում տպագրվել է «Երգչին» բանաստեղծությունը:

8. Թումանյանի ծոցատետրերից մեկում պահպանվում է Փիլ. Վարդազարյանի 1891 թ. դեկտ. 15-ի երկտողը, որով, դիմելով Հակոբ Անագչյանին, նա հիշեցնում է իրենց բանավոր պայմանավորվածությունը՝ գրությունը հանձնող երիտասարդին (Թումանյանին) «կրկնակի հաշվապահություն» սովորեցնելու մասին (տե'ս ԹԹ, ՄՄ, N 10, 37, ծոցատետր N 11): Միջնորդագրի՝ ծոցատետրում մնալն ապացույց է, որ դա չի հասել հասցեատիրոջը և որ հաշվապահությունը որպես ապրուստի միջոց բանաստեղծին չի գայթակղել:

Այս նամակում հիշվող Փ. Վարդազարյանի առաջարկած «80 ռուբլիանոց պաշտոնը», հավանաբար, Թումանյանը պետք է ստանար «կրկնակի հաշվապահություն» սովորելուց հետո, այնինչ, գերադասելով գրական միջավայրը, պակաս աշխատավարձով, 1892 թ. մարտից նա աշխատանքի է անցել հրատարակչական ընկերության գրասենյակում:

9. Արասխանյանը նկատի է ունեցել, որ Փիլ. Վարդազարյանի հրատարակությամբ արդեն լույս էր տեսել Դ (1893) գրքույկը:

* * *

*<u>ՆԱՄԱԿ – 7</u>*

ԱՐՍԵՆ ՂԼՏՃՅԱՆԻՆ

Թիֆլիս - Հին Նախիջևան

1895, IV/14, Թիֆլիս

Սիրելի Արսեն,

Երևի առաջին նամակս քեզ վրա տխուր տպավորություն է թողել. բայց ինչու չես պատասխանում, մանավանդ, այդպիսի նամակները չի կարելի անպատասխան թողնել(1): Հիվանդության անկողնից նոր վեր կացած, վրդովված գրեցի այդ նամակը - այնքան մութը, որ պետք է մի քանի բացատրող նամակներ էլ գրեմ: Հարկավ, հետաքրքիր կլինի քեզ համար, և ես կգրեմ ուրիշ անգամ:

Հիվանդությունից անմիջապես հետո Աղայանցի ցավով բռնվեցի՝ ինֆուլենցիայից հազիվ պրծած: Նորա նյութական շատ նեղ դրությունը ուժերս ավելի շուտ կազդուրեց: Միջոցների դիմեցինք. թե ինքն անձամբ, թե ես դիմեցինք բարեկամների և խնդրեցինք փոխառություն ապահով մուրհակով, որի տակ ստորագրում էր և Ն. Տեր-Ղևոնդյանը, որը 400 ռ. պետք է տա Աղայանցին մի քանի ամսից հետո: Փոխառությունը, որքան իջեցրինք, տոկոսը բարձրացրինք, տվող չեղավ: Մի քիչ էլ իզուր դես ու դեն ընկնելուց հետո ես մի հոդված գրեցի, գնացի «Մշակի» խմբագրատուն - հոդվածս հավանեցին, իսկ միտքը՝ ոչ - ժամանակն առարկելով(2): Շատ հետաքրքիր է այս անցքը. թե ինչ պատահեց այնտեղ, այդ էլ մի ուրիշ անգամ կգրեմ, բայց հրաժարվելուց հետո մի լուր տպեցին, որ գուցե տեսած լինես(3):

Դարձյալ ուրիշ անգամ կգրեմ, թե ինչ պատահեց Աղայանցի հետ սրանից հետո, միայն առայժմ այսքանն ասեմ, որ շատ հուսահատական էր և ցավալի: Դու պետք է ներկա լինեիր այն տեսարանին, երբ ամեն կողմից մերժված, ընտանիքից ստացած նախատական նամակն առաջին, նա կոտրված ու լցված, մի քանի կցկտուր խոսքեր արտասանեց ու գլուխը ներքև թողնելով, սպիտակ միրուքը բռնած աշխատում էր հետ կուլ

տալ արտասուքները, որոնք սակայն երևացին, որպես 33 տարվան գրական գործունեության հաղթանակի նշաններ:

Նրան թողեցի այս դրության մեջ, եկա պատմեցի երկու ընկերի և վճռեցինք ժողով անել: Առավոտը, երբ գնացի պատմելու, թե ժողով ենք անում, մի ավետիք տամ, նա հայտնեց, թե ժողով չէր ուզում, բայց արդեն ուշ էր: Ժողովն ընտրեց 4 հոգի, իմիջիայլոց և ինձ, բայց ես հանձն առա միայն քարտուղարության համար, որովհետև իմ անունը հարուստների մոտ հեղինակություն չի ունենալ: Ինչևիցե, արդեն սկսված է գործունեությունը, բայց դու գիտես ինչ տեսակ է լինում ժողովի գործունեությունը, պաշտոնական, սառն ու դանդաղ:

Կարճ կտրեմ, որոշված է հանգանակել նեղ - հարուստ շրջանում, իմիջիայլոց դիմել և քեզ, հանգանակելու քո վիճակում, հարուստներից(4): Այս ժողովի խնդիրն ու առաջարկությունն է, որ գրում եմ քեզ. քո անունն Աղայանցն էլ է տվել ինձ, ես էլ քո նամակի՝ նրան վերաբերյալ տողերը կարդացի յուր մոտ, որի համար շատ է շնորհակալ և բարևում է քեզ(5):

Թե ինձ հարցնես, ես «Մծիրին» եմ շարունակում և մի քանի այլ բաներ(6): Մյուս անգամ կգրեմ իմ և Արասխանյանցի նամակագրության(7) և իմ ու Աղայանցի շուն ազատելու պատմությունը(8):

Նամակումդ, չմոռանաս, գրիր, որ ես ասացի Գրիգորին, թե Արասխանյանին ասի, թե ինքն է նամակներ գրել, որ հոդվածը ետ առնեմ (նամակները մոտս են), միասին գնացիք, եկաք ասացիք, որ հերքեցիք(9): Ի՞նչ եք ասել, որ Արասխանյանին այժմ էլի տեղիք է տալիս հարցնելու:

Համբույրս:

Քո ***Հովհաննես***

*

Ինքնագիրը (4 էջ) պահպանվում է ԳԱԹ, Թֆ, N 386:
Տպագրվել է ԵԺ V, 103:

1. Խոսքը վերաբերում է Ղլտճյանին գրված մարտի 21-ի նամակին:

2. Այդ հոդվածը հայտնի չէ: Խմբագրությունը հրաժարվել է հոդվածը տպագրել «ժամանակն առարկելով»: Հավանաբար, դա նշանակում է, թե դեռևս մոռացված չէր այն աղմուկը, որ բարձրացրին «նորդարականները» Աղայանի «Իմ կյանքի գլխավոր դեպքերը» հուշագրությունը հրատարակվելու կապակցությամբ: Ի վերջո, այդ նույնը պատճառ դարձավ Գևորգյան ճեմարանից Աղայանի հեռանալուն և այնուհետև անգործ մնալուն:

3. «Մի ուրիշ անգամ» Թումանյանն այդ հարցին չի անդրադարձել, իսկ հիշատակված լուրը, որը տրվում է ստորև, տպագրվել է մարտի 30-ին (ՄՇ, 1895, N 37)։ «Մեր ժողովրդական գրող Ղազարոս Աղայանը, ինչպես մենք տեղեկացանք, գտնվում է նյութական ծանր դրության մեջ։ Ճակատագիրը հալածում է այդ շնորհալի գրողին և բեղմնավոր դպրոցական գործողին։ Տասն տարուց ավելի է, որ հայոց դպրոցներում մի ապահով տեղ չի գտնում այն մարդը, որը թե իր դասագրքերով և թե իբրև ուսուցիչ, ահագին ծառայություն է մատուցել մեր կրթական գործին։ Անցյալ տարի նա հրավիրվեց ճեմարան և հազիվ մի տարի անցած՝ հալածվեց։ Դպրոցներ ունենք, բայց ամենալավ ուժերն այնտեղ տեղ չունեն. քաղաքակրթվող ազգի անուն ենք վայելում, բայց մեր գրողները, ծանրաբեռնված ընտանիքով, առանց միջոցների, առանց ապահովության, ողբում են իրանց դառն օրերը...»։ Շուտով Թումանյանին արձագանքել է Շիրվանզադեն՝ տպագրելով իր «Ամոթ է, վերջապես» հոդվածը, որով նա պարտադրում էր հայ հասարակությանը մտահոգվելու Աղայանի ճակատագրով (ՏՂ, 1895, N 12, էջ 178)։

Թումանյանի միջամտությունն ունեցել է նաև այլ արձագանքներ, մինչև որ Աղայանի բանտարկությունը (1895 թ. սեպտ. 7-ին) գործին այլ ընթացք է տվել։

4. 1894 թ. սեպտեմբերից Ղլտճյանը վարում էր Արարատյան հոգևոր թեմի Հին Նախիջևանի հաջորդի պաշտոնը (ՄԵ, 1894, N 9)։

5. Նկատի ունի 1895 թ. հունվարի 30-ին Ղլտճյանի գրած մեզ անհայտ նամակը, որտեղ նշվել է, թե՝ «Յակառակ հոգևորականության վերաբերմունքի՝ մտադիր է տոնել Աղայանի հոբելյանը» (ԵԺ V, 104)։

6. «Մծիրի» պոեմի թարգմանությունն ավարտվել է 1896 թ. գարնանը, երբ այն Թումանյանը կարդացել է Իսահակյանի և Դեմիրճյանի համար (ԹԺՅ, 9)։ «Մի քանի այլ բաներ» գրելով նա, հավանաբար, նկատի ուներ, որ վերամշակում էր «Լոռեցի Սաքոն»՝ առանձին գրքով հրատարակելու համար, տպագրության էր պատրաստում «Շիլիոնի կալանավորի» թարգմանությունը, «Դաշնակներ» նոր գրքույկը և այլն։

7. Տե՛ս Արասխանյանին Թումանյանի գրած մարտի 21-ի նամակը (Յովհաննես Թումանյան, Երկերի լիակատար ժողովածու 10 հատորով, հատոր 9-րդ, Ե., 1997, էջ 149-152, նամակ N 73) և ստացած պատասխանները (ԳԱԹ, Թֆ, N 548 և գ. 2, N 262)։

8. Խոսքը վերաբերում է նույն թվականի գարնանը վարարած Քուռ գետում խեղդվող շանը փրկելու Թումանյանի և Աղայանի անհաջող փորձին (**Շիրվանզադե,** Կյանքի բովից, Ե., 1930, էջ 311-312)։

9. Նկատի ունի Գր. Վանցյանի «Մեր ուսումնարանների և ուսուցիչների ապահովության մասին» հոդվածի տպագրության պատմությունը, որին, ինչպես երևում է այս տողերից, տեղյակ է և մասնակից նաև Ա. Ղլտճյանը: Վանցյանից Թումանյանի ստացած այդ նամակները պահպանվում են. կարմիր մատիտով ընդգծված են այն տողերը, որոնք վերաբերում են հիշատակված հոդվածը հետ վերցնելուն (տե'ս ԳԱԹ, ԹՖ, N 2025 (994), 2026 (995):

Նամակի առաջին հրատարակության ծանոթա·րության մեջ (ԵԺ V, 104) Վանցյանի վերոհիշյալ հոդվածը շփոթվել է նրա «Հայ բոշաներ» հոդվածի հետ (տպա·րվել է Մճ, 1892, N 7-8 և այս նամակին չի առնչվում):

* * *

## *<u>ՆԱՄԱԿ – 8</u>*

ԱՎԵՏԻՔ ԱՐԱՍԽԱՆՅԱՆԻՆ

Թիֆլիս

1895, IV/25, Թիֆլիս

Մեծարգո
պ. Ա. Արասխանյան,

Ձեր իմ մասին գրածների մի քանի կետեր ավելի լուսաբանելու համար, խնդրեմ, պատասխան տաք այս մի քանի հարցերին.

1. Դո՞ւք եք ինձ հեռացրել «Մուրճի՞ց», թե՞ ես եմ հեռացել(1):

2. Դուք ինչպես իմացաք՝ պ. Վարդազարյանցի հետ ես ընչի համար և ինչ պայմանով էի կապվել(2):

3. 1893 թ. վերջին ամիսներին ինձ տանո՞ւմ էիք Ձեր խմբագրական ժողովներին, թե չէ, և այդ ժողովներում տվե՞լ եք ինձ կարդալու և կարծիք հայտնելու համար, օր. Մելքումյանի քննադատությունը՝ Հովհաննիսյանի բանաստեղծությունների մասին, Շաքիրյանի «Մծիրին», Արգահատյանի վեպիկը (մի ինչ-որ երեցի մասին), և այլն, որոնք և օրերով, եթե ոչ շաբաթներով եղել են մոտս(3):

4. 1894 թ. հունվարին ի՞նչ է ասել Ձեզ պ. Վանցյանն յուր հոդվածի և ինձ գրած նամակի մասին(4):

5. Խնդրեմ նայեք 1893 թվականի Ձեր չեկերի տետրակին, այնտեղ կա՞ իմ անունով մի չեկ՝ «Սովի ժամանակից» վերնագրով գրվածքիս համար, որ տպված է «Մուրճի» N 5-ում 1893 թ.(5):

Եվ 6. Դուք գրում եք, թե ինձ միակ գնահատողն եք եղել և պաշտպանել եք ոչ միայն դրսի մարդկանցից (!), այլև «Մուրճի» գրողներից (սկզբի տարում). խնդրեմ տաք այդ գրողների անունները(6):

***Հ. Թումանյան***

*

Ինքնագիրը (4 էջ) պահպանվում է ԳԱԹ, ԹՖ, N 305:
Տպագրվել է ԵԺ V, 106:

1. Այս նամակով Թումանյանը պատասխանել է հասցեատիրոջ՝ նույն թվականին գրած մարտի 21-ի և ապրիլի 4-ի նամակներին, որոնցով վերջինս աշխատել է մի կողմից՝ մեղադրել բանաստեղծին «Մուրճից» Փիլ. Վարդազարյանի ազդեցությամբ հեռանալու համար, մյուս կողմից՝ ցույց տվել, իբրև թե ինքն է նրան հեռացրել: Երկու դեպքում էլ ակներև է Արասխանյանի միտումնավորությունը: Թումանյանի տված հարցերին Արասխանյանը պատասխանել է իր նույն օրվա նամակով, որտեղ գրել է. «Թե ե՛ս եմ Ձեզ հեռացրել, թե Դո՛ւք եք հեռացել: Նամանավանդ որ անձեռնահաս եմ այս կետին պատասխանելու, թե Դուք ինչ մտքով հոկտեմբեր-նոյեմբերին 1893 թ. այնպես սկսեցիք վարվել հետս, որ ես դրդված տեսնեի ինձ՝ Ձեզ հայտնի ծանր խոսքերն ասելու, որից հետո Ձեր հեռանալը անխուսափելի պիտի լիներ: Ես ենթադրում եմ, որ Դուք գոռոզացել էիք Վարդազարյանի հետ կապվելով»: Ինչպես այստեղ էլ պարզորոշ երևում է, Արասխանյանն այնպիսի մթնոլորտ է ստեղծել խմբագրության մեջ Փիլ. Վարդազարյանի օգնությունից զրկվելուց հետո, որ Թումանյանը **ստիպված** հեռացել է (ԳԱԹ, ԹՖ, գ. 2, N 262/2):

2. Արասխանյանի նամակները կարևոր են բանաստեղծին վերաբերող արժեքավոր փաստերով, թվական տվյալներով. այսպես, երկրորդ հարցին տված պատասխանից պարզվում է, որ Թումանյանը 1893 թ. նոյեմբերի 10-ին է «Մուրճի» խմբագրին հայտնել, թե Վարդազարյանը հրատարակելու է ժողովածու («Հորիզոն») և իրեն **առաջարկում է լինել ռոճիկով աշխատակից** և **լեզու սրբագրող** (ընդգծումը մերն է - Հովի. Թումանյան, Երկերի լիակատար ժողովածուի 9-րդ հատորի (Ե., 1997) խմբ.): Նոյեմբերի 12-ին Թումանյանը զգուշացրել է, որ Արշակ Բարխուդարյանը նույնպես կապված է Վարդազարյանի հետ որպես խմբագիր, որը և հաստատում է Բարխուդարյանը հետևյալ խոսքերով. «Այո՛, մենք հրատարակչական ընկերություն ենք կազմում. նա փողն է դնում, մենք մեր աշխատանքը. գրքեր ենք հրատարակելու, նաև ժողովածու»: Պարզվում է նաև, որ Թումանյանը «Մուրճից» հեռացել է նոյեմբերի 26-27-ին (ԹՖ, գ. 2, N 262/2):

3. Ինչպես Թումանյանի տված այս հարցերից, այնպես էլ Արասխանյանի պատասխանից դարձյալ երևում է, որ երիտասարդ բանաստեղծը, չնայած աշխատավարձ չի ստացել, բայց կատարել է բավական գործեր. նախքան խմբագրությունից հեռանալը կարդացել է և' Հովի. Կոստանյանի, և' Շաթիրյանի թարգմանած «Մծիրին» և կարծիք հայտնել (որից հետո թարգմանությունը չի տպագրվել), Մելքումյանի քննադատությունը Հովի. Հովհաննիսյանի մասին (նույնպես չի տպագրվել), Արշալույս Արգահատյանի (Ա. Մխիթարյան) «Ուխտավորը (Մի հատված իմ հիշողությունից)» ակնարկը՝ գրված Հարություն քահանա Մանուկյանցի մասին (Մճ, 1893, N 11):

4. Տե՛ս սույն բաժնի 6–րդ նամակի 6–րդ ծանոթագրությունը:

5. Արասխանյանը ապրիլի 25-ի նամակում այս կետին պատասխանելուց խուսափել է, բայց ապրիլի 4-ի նամակից պարզվում է, որ «Մուրճի» խմբագիրը 1893 թ. հոկտեմբերի վերջին կամ նոյեմբերի սկզբին, նկատի ունենալով Թումանյանի նյութական վիճակը, որպես **բացառություն** վարձատրություն է առաջարկել, բայց վերջինս մերժել է (ԳԱԹ, ԹՖ, գ. 2, N 262/1, 2):

6. Այս կետին նույնպես Արասխանյանը պատասխան չի տվել, գրելով՝ «այդ մասին հաշիվ չունեմ տալու Ձեզ» և պահանջել է դադարեցնել նամակագրությունը, թեպետ նամակը ստորագրել է՝ «Ձեր բարյացակամ...» (ԹՖ, գ. 2, N 262/2):

Չնայած երկու կողմերի լարված հարաբերություններին, նրանք ի վերջո հաշտվել են, բայց Թումանյանը, քանի դեռ խմբագիր էր Արասխանյանը (մինչև 1900 թ.), այլևս չի աշխատակցել «Մուրճին»: Հայտնի է, որ անկախ գժտությունից, Թումանյանը բարձր է գնահատել Արասխանյանի գործունեությունը, հատկապես գրական ֆոնդ ստեղծելու համար նրա թափած ջանքերը:

* * *

## *<u>ՆԱՄԱԿ – 9</u>*

ԱՐՍԵՆ ՂԼՏՃՅԱՆԻՆ

Թիֆլիս - Բաքու

<1902, սեպտեմբերի 1-5, Թիֆլիս>

Սիրելի Արսեն,

Վերջին ժամանակներս ինձ շատ թույլ էի զգում: Իմ բարեկամ բժիշկ Զարգարյանը խորհուրդ տվեց դիմելու իր ծանոթ մի ուրիշ բժշկի. հիվան-

դությունս երևի նրան կասկածելի թվաց: Վերջապես քննեցին և գտան, որ առանց հետաձգելու պետք է գնամ Աբասթուման, առանց ընտանիքի: Հակառակ դեպքում, ասում են, անբուժելի կհիվանդանամ և այնպես կընկնեմ, որ էլ չեմ կանգնիլ: Այս, իհարկե, լավ են ասում և, եթե կուզես ես էլ գիտեի - բայց... այս բայցն է բանը:

Երեխաներիս բանը պետք է հոգամ, ինչպես իմ մասին մտածեմ, քանի որ նրանք դեռ մնում են իմ առաջին հոգսն ու մտածությունը. դրա հետ միասին՝ այնքան պարտքեր ունիմ վճարելու և չեմ կարող հետաձգել. օրինակ, 7 ամսվա տան վարձ է, խանութների ապառիկ և մանր պարտքեր. մեծերը թողնում եմ անորոշ ժամանակի:

Եվ ահա իշխանուհի Թումանյանն ու Վարդազարյանը, բժշկի հետ խորհրդակցելուց հետո, ինձ ղրկում են, հանձն են առնում այնտեղի հոգսը, բայց, ինչպես ասի, պոչս սառուցին է կպած...

Այժմ, եթե կարող ես, ինչպես գրում ես, մի բան ղրկելու, շտապիր, որ շատ ժամանակին կլինի:

Բժիշկը թեև արգելել է պարապելը, բայց հետս տանելու եմ մի քանի վերջանալի բաներ՝ վերջացնեմ, բերեմ: Աշխատելու հարմար առիթ է: Ես կյանքումս ազատ ոչ թե ամիս, գրեթե, օր չեմ ունեցած. այս ինձ համար մեծ հանգամանք է և ես կօգտվեմ: Դու չես իմանում, որքան ցանկություն ունիմ աշխատելու. բայց հնար չկա. հիվանդ, ջղային, մի խոսքով կատարյալ ընկած, և այսքան հոգս ու հուզմունք անընդհատ:

Մի խոսքով, դու գրածս չմոռանաս, մնացածը հետո: Գրիգորից բարև: Մերոնք բարևում են:

Քո **Հովհաննես**

*

Ինքնագիրը (3 էջ) պահպանվում է ԳԱԹ, ԹՓ, N 393: Անթվակիր է. ժամանակը որոշվում է մոտավորապես՝ Աբասթուման մեկնելու փաստով:

Տպագրվել է ԵԺ V, 214-215:

1. Ղլտճյանի այդ նամակն անհայտ է:

* * *

**ԲԱԺՆՈՒՄ ԿԻՐԱՌՎԱԾ ՀԱՄԱՌՈՏԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ**

Դ - Դաշնակներ, Թիֆլիս, 1893:

ԵԺ I, II, III, IV, V, VI - **Հովհաննես Թումանյան,** Երկերի ժողովածու (գիտական հրատարակություն) վեց հատորով, Երևան, 1940-1959

ԳԱԹ - Գրականության և արվեստի թանգարան

Թֆ - Թումանյանի ֆոնդ

ց 2, 3 - ցուցակ 2, 3 (լրացուցիչ)

Ա. Ինճիկյան - **Արամ Ինճիկյան,** Հովհաննես Թումանյան, Երևան, 1969

ԹԺՀ - Թումանյանը ժամանակակիցների հուշերում (տեքստը պատրաստեց և ծանոթագրեց՝ Լ. Մ. Կարապետյան), Երևան, 1969

ՏՁ - «Տարազ», շաբաթաթերթ, Թիֆլիս

ԱՐ - «Արարատ», ամսագիր, Էջմիածին

ՄՃ - «Մուրճ», ամսագիր, Թիֆլիս

Արձ - «Արձագանք», շաբաթաթերթ, օրաթերթ, Թիֆլիս

ԹԹ - Թումանյանի թանգարան

գ. - գործ

թ. - թերթ

վ. - վավերագիր

< > Սուրանկյուն փակագծերի մեջ դրվում են հեղինակի բաց թողած, Հովհաննես Թումանյանի «Երկերի լիակատար ժողովածուի» 9-րդ հատորի խմբագրության վերականգնած և ըստ տրամաբանության ավելացրած տառերը, տողերը, թվագրությունները:

***Հովհաննես Թումանյան, Երկերի լիակատար ժողովածու տասը հատորով, հատոր 9-րդ, ՀՀ ԳԱԱ «Գիտություն» հրատարակչություն, Երևան, 1997***

## *ՆԱՄԱԿ - 1*

## ԱՐԱՄ ԱՌԱՔԵԼՅԱՆԻՑ ՀՈՎՀԱՆՆԵՍ ԹՈՒՄԱՆՅԱՆԻՆ

1890, 2/X, Ախալցխա

Սիրելի Հովհաննես,

Թեև գալիս չկարողացա քեզ տեսնել, բայց և այնպես կարող ես բավականանալ այս մանրատառ բաց նամակից: Ես, որպես գիտես, արդեն Ախալցխայումն եմ և ազգային վարժապետ, թեև ցավ էր ինձ համար բաժանվել իմ սիրած ընկերներից և ուսումնարանից (Նորաշենի), սակայն անհնարին էր նյութական կողմից: Ինչևիցե, եկանք մի գավառական քաղաք, որտեղ ավելի ազատ եմ, քան եթե Տփղիսում, բայց և այնպես չունիմ լավ ընկերներ, որոնց հետ կարելի լինի լավ ժամանակ անցնել, բայց ինչ արած, պետք է տանել մինչև որոշած ժամանակը, որովհետև որոշված է և պիտի տանել: «Նոր-Դարում» կարդում եմ հայտարարությունդ(1), երևի շուտով դուրս կգա, չմոռանաս ինձ մի երեսուն օրինակ ուղարկելու, այստեղ կարելի է ծախել, եկող ամսին կուղարկեմ փողերը բաժանորդների, իսկ թերթը շուտ կուղարկեմ: Որովհետև Վանցյանի թերթն էլ ինձ է ուղարկել, որ փողը դարձյալ ես ուղարկեմ, այդ պատճառով մի փոքր կուշացնեմ, որովհետև բոլորը ի միասին կուղարկեմ, այժմ փուղ չունիմ, քեսիբ եմ, մանավանդ որ գալուս պես հիվանդացա և բավական ծախս ունեցա: Աստված կտրի վարժապետի կյանքը, ինչ արած, երբ որ փոսի մեջ ես ընկնում, պիտի դուրս գաս: Ես տղայոց ուսումնարանումն եմ և ունիմ շաբաթական քսան ու երեք դաս: Պետք է ասած, որ շատ տխուր են անցնում օրերս, որովհետև շրջան չկա, մարդ չկա, ինչ պիտի անես, պետք է լռելյայն տանել մինչև տարվա վերջը և պուկ, մին փախչել: Թեև ուսուցչական խումբը բաղկացած է տասը հոգուց, բայց և այնպես կարելի է յոլա գնալ: Շալամովից եթե նամակ ունիս, գրիր ինձ նորա հասցեն, կամ գրիր, որ ինձ նամակ գրի: Գոնյա դորանով միայն կարելի է մխիթարվել: Գրիր լավ-լավ բաներից: Ի՞նչ նորություն կա մայրաքաղաքումդ, ես զուրկ եմ թազա խաբարից, թեև լրագիր ստանում ենք և կարդում, բայց քո խաբարի և չալ-չալ սրախոսությունների տեղը չի տա: Ի՞նչ ես անում, գրելդ շարունակո՞ւմ ես, թե չէ, ի՞նչ ես անում, բանաստեղծություններիդ հավելվածը պիտի դուրս գա՞, թե ոչ: Վեճդ Ղազարի հետ ինչ արիր(2), վերջացրիր, թե ոչ: Նոր ոտանավոր դուրս կգա, գրիր ընդար-

ծակ: Բարևիր իմ կողմից տեր հորը, տիկնոջը և այլ ծանոթներիս: Տերտերին ասա բարևի իմ կողմից օրհորդներին: Ի՞նչպե՞ս է անցնում ուսումնարանը և ի՞նչ արին կոպարի բանը, ա թե՞ բ(3), պատասխանի'ր*:

Ողջույն քեզ, Արամ քո:

*

**Առաքելյան Արամ** (1870-1933) - Թումանյանի դասընկերներից Ներսիսյան դպրոցում. ուսուցիչ, լրագրող:

1. Նկատի ունի «Նոր-Դարի» 1890 թ. N 184-ում տպագրված հետևյալ հայտարարությունը. «Մի շատ սիրուն և շնորհքով գրված գրքույկ ենք ստացել. դա Հովհաննես Թումանյանի (Դսեղեցու) բանաստեղծությունների ժողովածուն է»:

2. 1890 թ. հուլիսի 29-ին Ան. Աբովյանին ուղղած նամակում բանաստեղծը տեղեկացնում է, թե Ղ. Աղայանի հետ վեճ է ունեցել «Լոռեցի Սաքոյի» խելագարության հոգեբանական պատճառաբանվածության հարցի շուրջ (V, 19-20):

3. Հնարավոր չեղավ պարզել, թե այստեղ ինչի մասին է խոսքը:

* * *

*ՆԱՄԱԿ – 2*

ԲԱԳՐԱՏ ԹՈՒՄԱՆՅԱՆԻՑ

1890 ամի, 23 հոկտեմբերի, <Մոսկվա>

Սիրելի Հովհաննես ջան,

Անհամբերությամբ սպասելով քո նամակին, վերջապես ստացա ամսույս 18-ին: Հովհաննես ջան, իհարկե ճակատագիրը մարդուս միշտ ընթանում է յուր ընթացքով և անհնարին է այդ ընթացքը փոխել: Բայց դարձյալ մարդս միշտ համբերությամբ և խաղաղությամբ պետք է աշխատե այդ ընթացքին լավ ուղղություն տալ: Այժմ դու ինձ գրում ես այդ անգութների բարբարոս վարմունքը դեպի քեզ(1), բայց իհարկե դու չպետք է նեղանաս կամ բարկանաս, այլ պետք է ցավես դոցա վերա, որովհետև դոքա չգիտեն, թե ինչ են անում, դոքա այն պարազիտներն են, որ դու արտահայտում ես այս խոսքերով.

Դո'ւք, որ ուզում եք աշխարհքին խաբել,

---

* **Վերին լուսանցքում**` բաց նամակդ որ ստացա, շուտով կուղարկեմ թերթը և փողը:

Եվ դատաստանի առաջ դողալով
Գիտեք կեղծավոր արտասուք թափել
Չարությամբ լեցուն, հանցավոր սրտով...
Կըհասնի նա ձեզ, բարկությամբ արդար
Արժանի մահով պատուհասելու...(2)

Քո նամակը ստանալուն պես ես գնացի Աստվածատուրյանցի հետ Մկրտիչ Բարխուդարյանցի մոտ, նա այնտեղ չէր, ես ծանոթացա Ավետիսյանի հետ և խնդրեցի գալ ինձ մոտ, նա խոստացավ, բայց մինչև այժմ չի եկել: Մկրտիչ Բարխուդարյանցը գալով, ես հարցրեցի, թե գրքերը ուղարկե՞լ եք, նա ասաց, թե վաղը պետք է ուղարկեմ: Ես վերցրեցի նորանից 40 օրինակ, թեպետ, իհարկե, քիչ չէ, պետք է խոստովանեմ ամաչեցի: Յովհաննես ջան, քանի միտս է ասեմ. Մելքոնի բաժանորդաթերթումն գրած է Աղեքսանդր Մելիքյանցի անունը, նա այստեղ ինձանից ստացավ: Մեկ օրինակ ընծայել եմ ուսանողության գրադարանին: Երբ վաճառեմ բոլորը, փողը կամ քեզ կուղարկեմ և կամ թե կտամ Մկրտիչ Բարխուդարյանին, որովհետև ինչպես նա ասաց դեռ երեսուն ռուբլի մնացել է քո հաշվից: Այստեղ ուսանողների օգտին ներկայացումն պետք է տրվի, գուցե Աստվածատուրյանցը զավեշտի ժամանակ ոտանավորներիցդ մեկը կարդա: Նա քննադատում է և պետք է այստեղի գրականական ընկերության առաջ կարդա: Խրախուսվիր, սիրելիս, հառաջ, ասպարեզը բաց է և լայն: Յովհաննես ջան, «Բանաստեղծություններդ» իմ սիրելի գրքույկն է, այնքան կարդացել եմ, որ շատ տեղեր անգիր գիտեմ: Մեկ բան պատմեմ. անցյալ օրը գրքերից մի քանի հատ տարա այստեղի շուշեցի վաճառականներին, նոքա ուրախությամբ ընդունեցին և խնդրեցին ինձ մի քանի կտոր կարդամ: Ես կարդացի «Սաքոն», «Ալեքը», «Միեն» և այլն, նոքա այնքան հափշտակվեցին, որ անկեղծ եմ ասում, մի քանիսը սկսան լաց լինել, մանավանդ երբ կարդացի նոցա «Միեն»: Մտադիր եմ մի-մի հատ տալ Գամբարյանցին, Խալաթյանցին և Ներսիսյանցին (պրոֆեսորներին): Ափսո՜ս, որ քիչ վերցրեցի: Աստվածատուրյանցը ինձ ասում է՝ մի շտապիր, դեռ մի ծախիր, այդ գրքերը պետք է մեկ ռուբլիով վաճառեմ, որովհետև դա 35 կոպեկանոց գրքույկ չէ: Յովհաննես ջան, դարձյալ կրկնում եմ, խրախուսվիր և շարունակիր գործդ, ասպարեզը բաց է: Մելքոնից ստացա նամակ, նա շատ շտապով էր գրել, այնպես որ ոչինչ չէր գրել: Ես նորան պատասխանեցի Դիլիժան: Գրում ես, թե թեմական տե-

սուչը ուսուցչության հրավիրեց, իհարկե, անհարմար է քեզ գնալ: Գրիր, թե ինչպես վերջացավ զինվորագրությունը, դուրս պրծա՞ր, թե ոչ: Ես որ քեզ խնդրել էի կարմիր կիրակեի մասին շատ լավ էր և այդ ես խնդրել էի ուսանող Տերյանցի համար: Նա ողջունում է քեզ և խորին շնորհակալություն է հայտնում, բայց խնդրում էր, եթե հնարավոր է ընդարձակ գրիր և մի քանի կտոր ջանգյուլում գրիր: Աստվածատուրյանցը քեզ ի սրտե ողջունում է: Էլ ինչ ես ուզում գրեմ, Յովհաննես ջան, ողջույն տիկնոջը և համբույր փոքրիկ Մուշեղին: Գալով ինձ՝ ես պատրաստվում եմ, օգոստոսին մտադիր եմ եթե կհաջողվի կամ Գանձակ և կամ Երևան գիմնազիայի յոթերորդ դասարան քննություն տալ: Յովհաննես ջան, Դարչինյանից և Վանցյանից մի տեղեկություն տուր և եթե հնարավոր է, նոցա հասցեները ուղարկիր: Ողջույն ծանոթներին: Գրքերդ արդեն ուղարկել է, ափսոս քիչ վերցրեցի, լավ կլիներ ուղարկել և' Պետերբուրգ, և' ուսանողների մեջ տարածել:

Մնամ քեզ կարոտ **(Բ. Թումանյանց)**

Իմ հասցեն՝

В Москву

Старо-газетный переулок, дом Селезнева

Меблированная комната N 20, Баграту Туманянцу

**Յ. Գ.**

Խնդրեմ նամակ գրիր

**Բ. Թ.**

Յովհաննես ջան, ների՛ր, որ այսպես խառն եմ գրել, որովհետև քունս տանում է. մեկը լրացել է և երկուսն է գնում, գիշեր բարի*

**Բ. Թ.**

*

1. Թումանյանի և կոնսիստորականների հարաբերությունները առանձնապես սրվում են 1889 թ., երբ Թիֆլիսի թեմի առաջնորդ է նշանակվում Մամբրե եպիսկոպոս Սանասարյանը, որի ժամանակ կոնսիստորիայում չարաշահումներն ավելանում են: Թումանյանը չի կարողանում հանդուրժել այդ ամենը և բողոքի ձայն է բարձրացնում դրա դեմ: Այդ բանը արտացոլվում է այդ ժամանակ գրած մի շարք բանաստեղծությունների մեջ («Երանություն էր

---

* **Վերին լուսանցքում՝** Մելիքյանցը ողջունում է:

խոստացել հույս ինձ...», «Ի՞նչ ես կատաղել անմեղ արարքից...», «Մարգարե», «Չարամիտներին» և այլն), որոնք և առիթ են դառնում Թումանյանի՝ կոնսիստորիայից արձակվելուն, որը տեղի է ունենում 1892 թվին (մանրամասնությունները տե'ս **Ա. Ինճիկյան,** Հովհաննես Թումանյան, Երևան, 1969, էջ 207-220):

2. Բերված են «Չարամիտներին» բանաստեղծության 4-րդ տունը և վերջին տան առաջին երկու տողերը (I, 40-41):

* * *

## *<u>ՆԱՄԱԿ - 3</u>*

ԲԱԳՐԱՏ ԹՈՒՄԱՆՅԱՆԻՑ

1890 ամի, 10 նոյեմբերի, <Մոսկվա>

Սիրելի Հովհաննես ջան,

Ստացա քո թանկագին նամակը ամսույս 6-ին: Հովհաննես ջան, ամենահարկավորը և ամենահետաքրքիրը դու ինձ չես գրում, թե զինվորագրությունից ազատվեցիր, թե՞ ոչ: Հովհաննես ջան, այստեղ սաստիկ ցրտեր է անում, ցրտության աստիճանը հասնում է մինչև 17: Չենք կարողանում դուրս գնալ տանից: Արդեն ամբողջ քաղաքը սպիտակել է: Ժողովուրդը կրում է յուր համար ձմեռվա լավ բաները: Հովհաննես ջան, երևի այժմ ստացած կլինես գրքերը: Ես այստեղ, ինչպես քեզ գրել էի, վերցրել եմ 40 օրինակ, որից 10-ը ընծայել եմ ուսանողների ընկերությանը, 1 օր. Տերյանին, 1 օր. Աստվածատուրյանցին, 2 օր. Մելիքյանցին (մեկ օրինակ իբրև նվեր, իսկ մյուս օրինակը իբրև բաժանորդ: Նա Մելքոնի բաժանորդաթերթումն է գրված, այնպես որ դուրս կգա): Մեկ օրինակ էլ ես կվերցնեմ կարդալու: Այնտեղ մնում է 34 օրինակ: Այդ 34 օրինակից 24 օրինակ վաճառել եմ, ինձ մոտ մնացել է 10 օրինակ, այն էլ շուտով կվաճառեմ: Իհարկե, ես չեմ շտապում, յուրյանք են գալիս խնդրում: Այսպես, Հովհաննես ջան, ես Բարխուդարյանցին կտամ 12 ռուբլի: Հովհաննես ջան, ինչ կվերաբերի իմ գրած բաժանորդներին, դու առայժմ այն գրքերը քեզ մոտ պահիր: Անցյալ օրը ես Բարխուդարյանցի մոտ էի, տեսա Ավետիսյանցին, նա էլ էր քեզանից նամակ ստացել, ես նորանից հարցրեցի քո հեռագրի մասին: Հովհաննես ջան, աշխատիր բանաստեղծությունները գրելիս (պոեմաները առավել) համեմատել բնության հետ, թե դա կարող է իրա-

կան կյանքում գոյություն ունենալ, իսկ ինչ կվերաբերվի գեղարվեստական տեսակետին, ոչինչ չունեմ ասելու, որովհետև շատ գեղեցիկ են: «Սաքոյի» համար ասում են, թե դա մի փոքր անբնական է, թե նա այդպես շուտով չէր կարող խելագարվել և այլն: Բայց «Ալեքի» և «Մեհրու» վրա հափշտակված են, մանավանդ բանաստեղծություններդ՝ «Մարգարեն», «Շատերի նման...», «Գիշերվա աստղի դիմաց», «Չարամիտներին», «Երանություն էր խոստացել հույս ինձ», «Ինչ ես կատաղել...» հափշտակված են թե' վեհ մտքերի և թե' գեղարվեստականության վրա: Այնուամենայնիվ, Հովհաննես ջան, հառաջ գնա, երեկո չէ լինում, որ քո բանաստեղծությունների մասին չխոսանք Աստվածատուրյանցի հետ: Հովհաննես ջան, գալով հայկական հարցին՝ այստեղի ռուս լրագիրները համակրանքով են վերաբերում: «Русская ведомость» լրագրի խմբագիրներից մեկը, որ հայ է Ջանշյան ազգանունով, նա Պոլիս է և թղթակցություններ է լինում այդ լրագրի մեջ Պոլսից, որի մեջ գլխավորապես խոսում է հայկական հարցի մասին և գրում է այն դեպքերը, որ պատահում են այնտեղ: «Հայաստան» լրագիրը բոլորը ստանում են այստեղ, իմիջիայլոց և ես: Եթե կարոտություն ունիս այդ լրագիրը կարդալու, ես քեզ կուղարկեմ. ամիսը երկու անգամ դուրս է գալիս: Հովհաննես ջան, Մելիքյանցը, Տերյանցը և Աստվածատուրյանցը ողջունում են քեզ: Իմ կողմից բարևիր տիկնոջը և համբուրիր փոքրիկ Մուշեղին: Գալով երկրաշարժին՝ այստեղի լրագիրներում գրած էր:

Ափսո՜ս, ես սխալվեցի և շատ չվերցրեցի գրքերից, նախ այստեղ կվաճառեի և երկրորդ Պետերբուրգ կուղարկեինք մի քանիքը: Բայց, ոչինչ, այստեղ էլ կվաճառվի: Ես էլ պատրաստվում եմ, տեսնենք կհաջողի, թե չէ:

Մելքոնի մասին լավ էիր գրել ճշմարիտ(1), նա ինձ վրա էլ էր նամակ գրել նույն բովանդակությամբ: Հովհաննես ջան, երբ Վանցյանից, Դարչինյանից տեղեկություններ ստանաս, ինձ գրիր: Բարև ծանոթներիս:

***Իմ հասցեն՝***

***В Москву, Старогазетный переулок, дом Селезнева***

***Меблированная комната чердака, N 20, Б. Туманяну***

Մնամ քեզ կարոտ՝ **Բ. Թումանյան**

*

1. Բանաստեղծի՝ Բ. Թումանյանին հասցեագրված նամակը, որտեղ նա «լավ» է գրել Մելքոնի մասին, մեզ չի հասել:

* * *

## *<u>ՆԱՄԱԿ - 4</u>*

ԱՐԱՄ ԱՌԱՔԵԼՅԱՆԻՑ

16-ն նոյեմբերի 1890 թ., Ախալցխա

Սիրելի Հովհաննես,

Նամակովս ներփակյալ ուղարկում եմ հինգ ռուբլի և հիսուն կոպ., բաժանորդագները հանդերձ թերթերի:

Կտնօրինես այսպես.

2 օր. ուղարկիր Աղբալյանցին Թելավ, ուսուցիչ հայոց ուսումնարանի

1 օր. Արշակ Մինասյանին

1 օր. Սեդրակ Մասանջյանին

1 օր. Հմայակ Աղբեկյանին

1 օր. Հմայակ Ալբերտյանցին

1 օր. Տիգրան Հարությունյանցին

1 օր. Ջալալ Տեր-Գրիգորյանցին

1 օր. Ղազանչյանցին

1 օր. Վարդան Տեր-Կիրակոսյանցին

1 օր. Հովհաննես Շահպարոնյանցին

1 օր. Սուրեն Դեմիրչօղլյանցին

Այս բոլորը ուղարկիր Ախալքալակ պ. Ջալալ Տեր-Գրիգորյանցին, որը քաղաքական ուսումնարանի ուսուցիչ է, և մի ցուցակ այս ազգանվանց, որպեսզի նա հասցնի յուրաքանչյուրը ըստ պատկանելույն, որպեսզի վերջ դրվի: Գրիր, որ իմ առաջարկությամբ ես ուղարկում:

Մի-մի օրինակ կտաս մեր օրիորդներին՝ այն է Վարդանյանին, Սողալյանին, Շահնազարյանին և Մալումյանին, մի օրինակ Ներսիսյան դպրոցի վերակացու Աբուլյանցին, 1 օր. Ասպետին, իսկ 3 օր. կուղարկես ինձ, հանդերձ մի քանի օրինակի, այստեղ վաճառելու համար, եթե հար-

մար կդատես: Այս երեք օրինակից մեկն Չիլինգարյանց Գրիգորինն է, իսկ մյուս երկուսը ինձ, որոնց բաժանորդագները սույն նամակավս պատիվ ունիմ ներկայացնելու Ձերդ մեծասքանչ բանաստեղծությանը:

Շնորհավորում եմ գրականական առաջին փորձդ, ցանկամ կատարյալ հաջողություն և հառաջադիմություն՝ հաղագս ազգասիրության և մարդասիրության:

Անպիտան երկրաշարժը միթե այնքան սաստիկ էր, որ կարողացավ ցնցել և տատանել մեծանուն բանաստեղծիդ վայրը(1), ո'չ, ո'չ, այդ անկարող է, բնությունը չէ կարող մերձենալ քեզ այդպիսի չար դիտավորությամբ: Օ'ն, արիացիր, ո'վ մեծանուն, արի բանաստեղծ, շարժիր ոսկելար քնարդ, ոգևորիր մարդոց, միայն էնպես արա, որ մուզայիդ չփախցնես:

Բարևիր տերտերին, ուհուդ և ժառանգիդ:

Քո **Արամ Առաքելյան**

В Телав, учителю армянской приходской школы Гну Седраку Агабалянцу.

В гор. Ахалкалаки. Г-ну Джалалу Тер-Григорянцу.

1 օր. ուղարկիր. В Батум. Почто-телеграфному чиновнику А. Тамбашеву.

Վանցյանը գտնվում է Նուխվա գավառի Վարդաշեն գյուղում, ուսուցիչ է: Նորա հասցեն՝ В гор. Нуху. В армянское духовное правление, прошу переселать в Вардашен, учителю Григорию Ванцянцу.

*

1. Երկրաշարժը տեղի է ունեցել 1890 թ. հոկտեմբերի 29-ին:

* * *

*<u>ՆԱՄԱԿ – 5</u>*

ՋԱԼԱԼ ՏԵՐ-ԳՐԻԳՈՐՅԱՆԻՑ

Սիրելի Հովհաննես,

Ստացա թանկագին նվերդ՝ «Բանաստեղծություններիդ» II հատորը: Կարդացի ու հոգեկան մեծ բավականություն ստացա: Համեմատեցի առաջին գրքույկիդ հետ և մեծ առաջադիմություն նկատեցի: Համոզվեցի, բանիմաց, հասկացող և ծեռնհաս ընթերցողներիդ հետ, որ քնարերգակ

բանաստեղծ ես բառիս բուն նշանակությամբ և լավ ապագա ես խոստանում: Հուսով սպասում ենք, որ մեր աղքատիկ, դեռ չզարգացած քնարերգության սակավաթիվ մշակներից մեկը կլինես: Առաջին գրքույկովդ հանդիսացար գլխավորապես ինչպես ժողովրդական բանաստեղծ, որ շատ բնական է այն գրողի համար, որ ժողովրդի մեջ ծնվել և նրա կրծքով է սնվել: Թեև ներկա գրքույկումդ էլ կան բուն ժողովրդական ոգով խմորված երկեր, որ ցույց է տալիս, թե ժողովրդի զարկերակը սերտ կերպիվ կապված է սրտիդ հետ, որ հասկանալի, ուրեմն և շատ թանկագին են միայն բուն ժողովրդի հարազատ զավակների համար, բայց և այնպես ուրիշ հարցեր էլ են հուզում քեզ... Կասկած չկա, որ թե' ընտանեկան և դպրոցական կրթությունը, թե' մանկական կյանքը, ծննդավայրը, բնությունը, շրջանը, ընկերությունը և թե' ընթերցանությունը մեծ ազդեցություն են անում հեղինակի գրականական ուղղության վերա: Կարելի է այս կամ այն միջոցով, այս կամ այն ցանկալի ուղղությունը ձեռք բերել: Բայց ես անտեղի եմ համարում քո բարեկամներից ոմանց երկյուղը, թե մի գուցե դադարես բուն ***ժողովրդական*** բանաստեղծ լինելուց և այդ երկյուղից առաջացած խորհուրդը՝ միշտ ժողովրդական մոտիվներով առաջնորդվել: Ես կարծում եմ, որ հիշյալ պայմանները, այն է կրթությունդ, մանկական կյանքդ, ծննդավայրդ և այլն, ամեն մեկը այնպիսի ֆակտորներ են, որ քեզ միշտ կապված կպահեն ժողովրդի հետ, քեզ միշտ սիրահար կպահեն իդիլլիային: Վերջապես, այդպիսի մի խորհուրդ՝ միայն ժողովրդական բաներ գրել, կարելի էր տալ ավելի նվազ շնորհք ունեցող մեկին: Իսկ իմ անկեղծ խորհուրդն է տաղանդդ ***բազմակողմանի*** զարգացնել, ի միջի այլոց ***ընթերցանությամբ:*** Բանաստեղծը ժողովրդի, ժամանակակից հասարակության, նույնիսկ ժամանակի որդին, արտահայտությունն է: Նա իր գրվածների մեջ, իբրև հայելու մեջ, պետք է ցոլացնե և ջանա լուծել ժամանակակից հարցեր, խնդիրներ... Իսկական տաղանդը հավասար ավյունով, հավասար աշխուժով և գրգիռով գրում է այս կամ այն մոտիվով: Նա չէ կարողանում զսպել իրան, սորա կամ նորա ցանկությամբ, խորհրդով կամ, այսպես ասած, պատվերով գրել, «րոպեն է նրան հրամայողը» («Минута ему повелетель»), ինչպես ասում է Ժուկովսկին: Այս պատճառով էլ ես շատ ուրախացա, որ այս հատորումդ՝ ժողովրդական մոտիվներիդ հետ ես գտա և ընդհանուր քաղաքացիական (гражданские) մոտիվներ, հասարակական և ազգային մոտիվներ և այլն: ***Նկարագրություններդ,*** մանավանդ բնության նկարագրություններդ,

հրաշալի են: «Անուշիդ» մի քանի տեղերը աննման են: Նորանց գլխավոր արժանավորությունը կայանում է նրանում, որ դու բնության հետ չես նկարագրում կամ արտահայտում նրա ազդեցություններից առաջացած զգացմունքներդ, հոգեկան տրամադրությունդ, ուրեմն նկարագրություններդ սուբյեկտիվ չեն, այլ ***օբյեկտիվ,*** որ գեղարվեստական մեծ նշանակություն ունի: Ոչ նվազ աջողված են և սիրո երգերդ: Աշխատիր հերոսուհիներիդ հաճախ տեղ տալ բնության ծոցում: Այն հոգեկան տրամադրությունը, որ առաջ է գալիս բնության տեսարանի և սիրելի, համակրելի, բնությունը համահավասար սիրող կնոջ ընկերակցության ազդեցությունից, այնքան վեհ և սուրբ է, որ միայն բանաստեղծը կարող է արտահայտել. անկասկած է, որ այդ զգացմունքները երջանիկ են, թևավորում են մեր հոգին և դարձնում են մեզ աստվածանման: Այդպիսի տրամադրությունը բախտավորության ամենալավ գրավականն է: Միայն այդպիսի րոպեներում մարդս ընդունակ է զգալու յուր մեջ բարձր հոգեկան էլեմենտ: Միայն բնության հետ համաձայն և պոեզիայով բացատրված, պոեզիայից առաջացած սերն, միայն այն սերն, որ պոեզիայի ծնունդ և արգասիք է, կարող է ստիպել մեզ հավատալու ճշմարտության, բարվո և գեղեցկի անմահությանը և հավիտենականությանը... Սիրո առարկան էլ բնության ծոցում սորա ազդեցությունից դառնում է իրավ որ գեղեցկության իսկական աստվածուհի: Բայց ո՛չ Վեներան՝ ծովի ալիքներից, փրփուրից դուրս եկած և բոլորի մեջ ցանկություն ծնեցնող Վեներան, այլ ահեղ, անհաղթելի գեղեցիկ, անսահման վեհ, մարդկանց սրտերին սրբազան սարսուռ ներշնչող, կարծես աստղյաց թագը գլխին աստվածուհի, որի սիրտը միևնույն ժամանակ մի անմատչելի, մաքուր, անբիծ տաճար է, որն ունի ամենին նվաճող համեստություն, ներողամտություն, քնքշություն, մաքրություն և որը խաղաղացնում, հանդարտեցնում է ամենակրքոտ տղամարդին անգամ՝ հարկադրելով նրան համբույրի տեղ օրհնություն խնդրելու: Նրա սերը բնության ծոցում ավելի մաքուր կլինի, քան աստղերը, ավելի վախկոտ, քան գիշերը և ավելի սարսափելի, քան խավարը... Այս է, գոնյա, իմ իդեալը: Քաղաքացիական մոտիվներիցդ էլ ամենից աչքի ընկնողը «Կանչդ» է, որ միանգամայն գլուխ գործոցդ է: Հրաշալի տպավորություն թողեց վերաս:

Սիրելի Հովհաննես, պոեզիան մի լուսատու փարոս է, որը հենց ինքն արարիչն է վառել, որպեսզի մենք մեր կյանքի դառն րոպեներին չշեղվենք ցանկալի ճանապարհից: Բանաստեղծները այդ փարոսի բոցերից

պետք է վառեն այն ջահերը, որով ուզում են լույս սփռել ամենուրեք: Պոեզիան մի աստվածուհի է, որ գոյություն ունի մարդկային սուրբ մտածմունքներում և ստեղծագործություններում: Բանաստեղծները այդ աստվածուհու քուրմերը պիտի լինեն: Պոեզիան առաքինություն է, նա ինքը կյանքն է: Բանաստեղծները պետք է լինին մի կարողավոր, ուժեղ թև, որ բարձրացնեն մեր սրտերը, վառեն մեր զգացմունքները, լինեն ճշմարտության զինվոր, բարոյական վերքերին բարոյական սպեղանիներ դնող, կյանքի վսեմ խորհուրդների արտահայտիչ, նրանք պետք է ձգտեն արտահայտել մարդկային հոգու մաքրությունը և մարդուն ուղղել դեպի բարին: Նրանք պետք է գործեն ընդհանուրի համար, ապրեն և մեռնեն հասարակական կյանքով և այլն: Ուստի ես փափագում եմ քեզ տեսնել միշտ կանգնած բանաստեղծի այս վեհ, վսեմ կոչման վերա, իսկ սա կարելի է ինքնակրթությամբ, ընթերցանությամբ, ճոխ գրականության ուսումնասիրությամբ և այլն: Վերջացնելով խոսքս կրկին դիմում եմ քեզ, սիրելի Յովհաննես, եղիր մեզ համար լուսավորող, պայծառ գաղափարներ տարածող ոգի, սովորացրու մեզ մտածել և զգալ, ամեն մի լավ բան սիրել, ամեն մի ազնիվ բանի համակրել և, իհարկե, ատել, ինչ որ ատելի է, ապրել ոչ թե հաշվով, շահի համար, այլ հավատով: Փայլիր մեզ համար, ինչպես մի առաջնորդող աստղ, այն ժամանակ մենք կգանք քո ետևից դեպի իդեալը, զգալով մեզ բախտավոր, ոգևորված... Եվ ես կրկին անգամ բարձրագոչ կգոռամ. «Դու բանաստեղծ ես»: Երևի կրկին առիթ կլինի խոսելու այս հարցի առթիվ: Բարև Գրիգորից:

Քո ***Ջալալ Տեր-Գրիգորյան***

***24 մայիսի 1893 թ.,***
***Ախալքալաք***

**Յ. Գ.** Գրիգորին նամակ պետք է գրեիր, բաներ պետք է ղրկեիր, ի միջի այլոց և թարգմանությունը, ինչի՞ չես գրում կամ ղրկում:

Յովհաննես ապեր, կարդացի Ջալալի ոգևորված նամակը քեզանից առաջ: Ահա մի ամիս է սպասում եմ նամակիդ, որ խոստացել էիր բաց նամակովդ և ուզած բաներիս, բայց ոչ նամակ ես ուղարկում, ոչ էլ մին զատ:

Ողջույն. **Գրիգոր:**

Չմոռանաս հարցերիս պատասխանել:

*

Տեր-Գրիգորյան Ջալալ (1866-1939) - մանկավարժ, հասարակական գործիչ, թարգմանիչ:

* * *

* Հովհ. Թումանյանի ստեղծագործություններից կատարված մեջբերումները, բացի հատուկ նշվածներից, քաղված են բանաստեղծի երկերի ակադեմիական հրատարակությունից (վեց հատորով, 1940-1959): Մեջբերումների աղբյուրները նշվում են բնագրում, փակագծերի մեջ` ցույց տալով համապատասխան հատորն ու էջը («Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ»-ի 4-րդ հատորի (Երևան, 1985) խմբագրություն):

***«Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ», գիրք 4, Երևան, 1985, էջ 272-273, 277-279, 281-284, 316-319, 330-331, 335:***

* * *

## *ՆԱՄԱԿ - 6*

ԱՐՍԵՆ ՂԼՏՃՅԱՆԻՑ

Въ Тифлисъ
Норашенская улица
Домъ бывшій Пугинова
Его Высокоблагородію
Ованесу Туманянъ

Յաuցէu. черезъ Игдыръ
Въ Кулбъ,
Учителю N. N.

***91 թ. 12 նոյեմ.***
***Կողբ***

Սիրելի Յովհաննէս.

Վերջապէս քեզանից նամակ ստացայ. և ահա շտապով պատասխանում եմ, կամ աւելի լաւ ասած քեզ յանձնարարութիւններ եմ անելու. կուղարկես շուտով հետևեալ պիէսաները. Քաղցածներ, Երեք քաջեր և Մադոյի կտակը, վերջնիս համար իմացիր Դաւիթ Տէր-Դաւթեանից (Ջգրաշէնում ուսուցիչ է), թէ ուղարկել է, մի ուղարկիր, թէ չէ ուղարկել կամ ուղարկելու, կուղարկես էլի. այստեղ նոր տարուն մի ներկայացում ենք տալու յօգուտ դպրոցի գրադարանի որ նոր մտադրուած եմ կազմելու: Անպատճառ կրկնում եմ այդ պիէսաները կը գտնես և կուղարկես, փողը կուղարկեմ, կամ հակառակ դէպքում պիէսաները: Յետևեալ անգամ կը գրեմ շարունակութիւնը սոյն նամակիս: Վանցեանի մասին տեղեկութիւն գրիր: Բարև քեզ և ընտանեացդ, նամանաւանդ փոքրիկ Մուշեղին:

Քո Սիմէօն

***ԳԱԹ, ԹՖ, 1560***

* * *

*<u>ՆԱՄԱԿ – 7</u>*

ԱՐՍԵՆ ՂԼՏՃՅԱՆԻՑ

94 թ. փետ. 23,
Էջմիածին

Սիրելի Օհաննէս.

Ստացայ նամակդ. շտապում եմ պատասխանել. պատկերներիս մէկը կտաս <…>եանին, մէկը օր. Նունէին, մէկը կուղարկես Արամին, մէկը Գրիգորին, մէկն էլ <ճանճի> փոստով քեզ, մնացածները կուղարկես, երբ հասցէս ղրկեմ:

Կաթուղիկոսի գործունէութեան մի երկու կէտերը յիշեցի անցած նամակովս, այժմս դարձեալ գրում եմ նրա մասին: Անցած անգամ գրել եմ խառն, անկարգ, այժմս էլ թէև յոյս չունեմ թէ կարողանամ ուզածս կերպով գրել, բայց և այնպէս գրում եմ. ինչ դուրս գայ գայ... Մի քանի գործեր կան որ կաթուղիկոսը, ա'յն էլ Խրիմեան կաթուղիկոսը պիտի անպատճառ կատարէր. 1. պատրիարքը - Պոլսի շարունակում է իր ազգավնաս գործունէութիւնը և պատրիարքութիւնը հակառակ ժողովրդի կամքի. սահմանադրութիւնը ոչնչացուած է, կաթուղիկոսը պարտաւոր էր իբր եկեղեցու պետ, հրաւիրել նրան՝ գործել յօգուտ տառապեալ ժողովրդի, փոխանակ շրջաբերականներ հրատարակելու թէ վեհ. սուլթ. հովանոյն ներքոյ ազգը և այլն և այլն. իսկ եթէ այդ չօգնէր, կանչէր իր մօտ, եթէ չգար, բանադրէր, զրկէր եպիսկոպոսութիւնից, որով ինքն ըստ ինքեան նրա պատրիարքութիւնը կոչնչանար - կը լուծուէր. այս բանը Խրիմեանը կարող էր և իրաւունք ունէր անելու և չարաւ, ու չի էլ անելու:

2. Նա կարող էր գաղթականութեան առաջն առնել, բայց փոխանակ այդ անելու եկողին փող տալով առիթ եղաւ աշնան աւերող գաղթականութեան, մինչդեռ այդ հազարներով կարելի էր բուն երկրում օգնել նրանց, որով և գաղթականութեան առաջն առած կը լինէր:

3. Տաճկահայաստանում սարսափելի սով կայ, նրա պարտականութիւնն էր մտածելու դրանց մասին և շուտափոյթ օգնութիւն հասցնելու. նրան նկարագրում են աղետալի վիճակը տաճկահային, իսկ նա «Յա, կը խորհիմ, փան մ'ընելու է» և այդ «փան մը» ընելը տևում է ամիսներ. քաղցածին ամիսներ է սպասեցնում, կարծում է թէ իր վեհարանի առատութիւնն է: Սովեալների համար փողեր են ստացւում, բայց նպատակին չի

գործ դնում: Երևանից գալիս են Բայազիտի սովելոց համար օգնութիւն ուզում, երկար բանակռուից <յետոյ> «Է՜, ինչ ըսել կուզէք, փարա՞ կուզէք, ըշտէ գանձարան դատարկ է, աթոռ չի կրնար անոնց օգնել, ինծմէ կուզէք, ես ալ ախքատ մըն եմ, փարա ինձի ո՞ւսկից»: Բայց տեսնում է որ պատգամաւորները - բժ. Յովհաննիսեան և Սմբատ Խաչատրեան - շատ են ստիպում օգնել, հանում 200 րուբլի է տալիս, մինչդեռ այդ նպատակի համար հազարներ է ստացել:

4. Մօտակայ մի քանի գաւառներում սով կայ, Բայազիտում մարդիկ են մեռնում քաղցից. ի՞նչ է անում Խրիմեանը, ոչի'նչ: Եկող տարի ժողովուրդը ցանելու ցորեն չունի. մօտ 2000 րուբլի ցրուել է կաթուղիկոսը զանազան թափառաշրջիկների, ողորմութիւն է տուել. այդ փողով նա արդեօք չէր կարող աւելի քան 100 ընտանիքի գարնան ցանքս ապահովել. Բայց անո՞ւմ է, իհարկէ ոչ. և դեռ ասում է, «Իշտէ այդ կարօտեալներին միաւորեցէք hou, ես փան մը կուտամ և այլն». այս խօսքերը նա ասեց Երևանից եկած պատգամաւորներին: Աղուանեանի թողած 18000-ով կարող է Բայազիտի, Ապարանի, Դարաչիչակի հայ ազգաբնակութեան ցանքսը բոլորովին ապահովել և դրանով ազատել ապագայ աւելի մեծ չարիքից: Ժամանակը մօտ է, ձիւները վերնում են. դաշտում ձիւն չկայ արդէն. անհրաժեշտ է այդ գործին ձեռնարկել. իսկ կաթուղիկոսը չի էլ ուզում դրա վրայ մտածել. թէև իր ամենամեծ պարտականութիւնն է այդ: Խեղճ ժողովուրդ և դեռ «Հայրիկ» են ասում:

5. Դպրոցական խնդիր կայ. ի՞նչ է մտածում. արդեօք Խրիմեանի պարտականութիւնը չէ՞ հոգալ, բարձրացնել մեր բոլոր դպրոցական հիմնարկութիւնները ներկայ քայքայեալ վիճակից. ծրագրի, կանոնադրութեան խնդիր կայ. գալիս է չարաբաստիկ մարտը, ցենզի մասին հոգալու ամենամեծ պարտիքը Հայոց կաթուղիկոսինը չէ՞. չէ՞ որ դպրոցները նրա իրաւասութեան տակին են. բայց նա այդ բոլորը թողած մանր ինտրիգներով է զբաղուած. նրան դուր չի եկել կամ նրան շրջապատողներին, որ Մուղնու ծխականները ղալաթ են արել սևցրել սևերին. ուստի մտածում է քանդել ընտրութիւնը ըստ առաջնորդի խնդրանաց, որը տրամաբանում է՝ թէ ընտրութիւնը կանոնի համաձայն չէ եղել և թէ բարեկամների բարոյական պարտքն է հոգալ դպրոցի բարեկեցութիւնը նայլն:

Այս բոլորից և ոչ մէկն էլ չի անում:

6. Պիտի վերջ տար կաշառակերութեանը մեր ատեաններում, այժմս իր քթի տակ են կաշառք վերցնում:

7. Տգէտներին քահանայ չձեռնադրելը, որ ընդունուած է տեղապահութեան օրով Արիստակէս Սեդրակեան եպիսկոպոսի առաջարկութեամբ, ինքը լուծում է և հրամայում տգէտների քահանայ ձեռնադրել:

8. Ճեմարանը խայտառակ դրութեան մէջ է. իսկ աւելի վատ դրութեան մէջ ձգելը Խրիմեանի տենչերից մէկն է:

9. Փոխանակ զեղծումների առաջն առնելու, գողերին, անբարոյականներին պատժելու, նա պաշտպան է հանդիսանում նոցա, ու սկիզբն է դնում աւելի մեծ զեղծումների:

10. Առհասարակ հեռացնում է վանքից մարդկանց, որոնք բարեխղճաբար են պաշտօններ վարել, կամ սխալուել պաշտօնեաների զեղծմունքները, ապօրինութիւնները բացել, օրէնքի առաջ մերկացրել:

Ո՞ր մէկը գրեմ. առ այժմս այսքանը բաւ է: Մի օր յիշատակարանս, եթէ յարմար եղաւ, կուղարկեմ:

Բարևս տէր տէրին, տանեցոց, Բէկնազարեանին, օր. Նունէին և ծանօթ օրիորդներին ու երիտասարդներին, նաև քառատասարդներին:

Կերթամ կամ վաղը, կամ երեքշաբթի:

Օլգայի բողոքը ինձ հասաւ, թէև աքսորուած իրաւունք չունիմ, բայց ասում եմ քեզ, որ երեկոյթների շատ չերթաս, օրիորդների հետ շատ սիրալիր չլինես և այլն ըստ կարգին, թէ չէ վերջը դու էլ կաքսորուիս. Օլգան կարծեմ գոհ կը լինի ինձանից:

Քո Արսէնդ

Պատկերիս մասին չես գրում թէ ստացար. ես կարծում եմ թէ այդ նամակս չես ստացել:

Փետր. 3-ին ինձ համար կոնդակ էր ղրկել սինօդ Եր<ն>ջակ նշանակելու համար. 4-ին գնացի մօտը բացատրութիւն պահանջելու, մի թունդ կռուեցի հետը և ասացի որ չեմ գնայ. մի քանի օր անցաւ կարգադրութիւնը փոխեց. հակառակ կողմի մարդիկ խմբով գնացել ճնշում էին գործ դրել և պահանջել որ հեռացնէ ինձ, ուստի և նորից հրամայեց, որը 17-ին ստանալով <…>ինք այս անգամ էլ հակառակուել, բայց տեսայ որ դրանով մեր կուսակցութիւնը ներկայացրած կը լինեմ իբր խռովարարներ, ուստի որոշեցի գնալ՝ միայն թէ ուշ. այժմս բոլորը խօսում են թէ հրամանը չի ուզում կատարել և այլն ու ուզում են մէջը մի բան խառնել: Եթէ ես միայն Արսէն աբեղայ լինէի և մի կուսակցութեան մարդ, որը հալածւում է այդ կուսակցութեան պատկանելու համար, այն ժամանակ բոլորովին այլ կերպ կը վարո-

ւէի սրանց հետ. իսկ այժմս ընդհանուրի շահը պահանջում է տանել զրկանքները, ես ուրախութեամբ տանում եմ, այն յուսով, որ ապագան մերն է: Արսէն

* < > Սուրանկյուն փակագծերի մեջ դրվում են նամակի հեղինակի բաց թողած կամ անընթեռնելի մասերը, ինչպես նաև կազմողի կողմից վերականգնած և ըստ տրամաբանության ավելացրած տառերը, բառերը (ծանոթություն կազմողի):

***ԳԱԹ, ԹՖ, N 1566***

## Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆԻ ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐԱԿԱՆ ԳՐԱՌՈՒՄՆԵՐԸ

Երկար ժամանակ Հովհաննես Թումանյանը ցանկացել է գրել իր ինքնակենսագրությունը: Դա լինելու էր ոչ թե կենսագրական փաստերի ու թվականների սովորական «անկետային» շարադրանք, այլ բանաստեղծի հոգևոր զարգացման, միջավայրի մարդկանց, կյանքի ու կենցաղի կենդանի ու մանրամասն, բազմակողմանի ու բազմագունեղ նկարագրությունը՝ սկսած ամենավաղ մանկական տարիներից: Նույնիսկ այն փոքրիկ (ընդամենը 3-4 էջից բաղկացած) հոդվածը, որը 1905 թ. Թումանյանը հրապարակեց իբրև ինքնակենսագրություն, նվիրելով հիմնականում դպրոցական տարիների հուշերին, ակնառու կերպով ցույց է տալիս, թե ինչպիսին պիտի լիներ ամբողջ աշխատանքը. դա լինելու էր իրականության կենդանի պատկերներով հագեցած մի պատմություն, որի մեջ հիմնականը ոչ այնքան պատմողի անձնավորությունն է, որքան կյանքի ընդհանուր իրադրությունը, շրջապատի մարդիկ, տիպերը, այն բարդ ու բազմազան տպավորությունները, որոնք ծնավորել են բանաստեղծի հոգևոր աշխարհը: Դժբախտաբար, մանրամասն ինքնակենսագրություն գրելու մտահղացումն էլ անկատար մնաց, ինչպես որ անկատար են մնացել չափածո, արձակ և դրամատիկական շատ ու շատ երկերի թումանյանական ծրագրերը: Եվ դա նույնպիսի մեծ կորուստ է մեր գրականության համար: Ինչքա՜ն շատ նյութ կպարունակեր Թումանյանի ինքնակենսագրությունը, ինչպիսի՜ լույս կսփռեր նրա ստեղծագործության վրա:

Ճիշտ է, կարելի է մխիթարվել նրանով, որ Թումանյանն, այնուամենայնիվ, ինչ-որ չափով արտահայտել է իր ինքնակենսագրական տպավորություններն ու մտորումները ուրիշ առիթներով՝ որոշ գեղարվեստական երկերում (հատկապես պատմվածքներում) և մանավանդ մի քանի հոդվածների ու նամակների մեջ (հիշենք, օրինակ, «Երկու մեծ թիֆլիզեցիներ», «Մ. Նալբանդյանի հիշատակին», «Ադամյանի օրերից հիշողություն», «Պատանեկության օրերից» և այլ հոդվածների մեջ եղած ինքնակենսագրական բնույթի հատվածները): Բարեբախտաբար, պահպանվել են նաև Թումանյանի ծրագրած ինքնակենսագրության առաջին մասերի նախնական գրառումները, կոնսպեկտները, որոնք, հավանաբար, գրված են 1910-ական թթ. վերջերին: Ինքնակենսագրական այս գրառումներն են, ահա՛, որ մենք անհրաժեշտ ենք համարում ներկայացնել ընթերցողի ուշադրությանը:

Իհարկե, այս նյութերը ամենևին նախատեսված չեն եղել տպագրության համար: Դրանք արվել են միայն և միայն իր՝ բանաստեղծի համար, որը նախքան մեծ աշխատանքին անցնելը անհրաժեշտություն է զգացել թղթին հանձնելու գրելիքի համառոտ բովանդակությունը, դեպքերի ու դեմքերի թվարկումը, հերթականությունը: Մեր առջև ապագա գործի կոնսպեկտն է, ընդհանուր սխեման, արծարծվելիք հարցերի մոտավոր շրջանակը: Այս հանգամանքով է պայմանավորված շարադրանքի արտակարգ ժլատությունը, իսկ երբեմն էլ ակնհայտորեն անավարտ, թերի, նույնիսկ անհասկանալի լինելը: Բայց այդ հատ ու կենտ ակնարկները բավական էին հետագայում լիարյուն և կենդանի պատմություններ ստեղծելու համար:

Դատելով հրապարակվող նյութերից, Թումանյանի կենսագրությունը շատ լայն ընդգրկում և բազմազան տարրեր էր ունենալու: Պետք է բնութագրվեին հայրենի բնաշխարհի սոցիալ-կենցաղային և աշխարհագրական միջավայրը, ժամանակի քաղաքական դեպքերն ու գյուղական հասարակության ըմբռնումները, բանաստեղծի տոհմը, պապերն ու ծնողները, մոտիկ ու հեռավոր ազգականները, հասակակից ընկերները և պարզապես հետաքրքիր ու ինքնատիպ բնավորություններ, որոնք կոնսպեկտում կոչվում են «գյուղի տիպեր»: Կասկած չի կարող լինել, որ եթե Թումանյանն իրագործեր իր գրառումների մեջ նշված բոլոր դեպքերի ու դեմքերի մասին պատմելու մտադրությունը, ապա դա կլիներ մեծ ու բարձրարժեք, իսկական գեղարվեստական մի ստեղծագործություն, ժամանակակից տերմինով ասած՝ մի յուրօրինակ կենսագրական վեպ:

Հրապարակվող նյութերը հիմնականում վերաբերում են Թումանյանի մանկության տարիներին, մինչև Ջալալօղլի տեղափոխվելը, ուր նա տասնամյա հասակում մեկնեց սովորելու: Ջալալօղլու շրջանի և հետագա տարիների մասին կան միայն առանձին հիշատակություններ:

Չնայած իրենց կոնսպեկտային բնույթին, այս նյութերն անպայման ոչ միայն պատմա-կենսագրական, այլև գեղարվեստական հետաքրքրություն են ներկայացնում: Թումանյանը զարմանալի դիպուկությամբ կարողացել է կենդանացնել գյուղական կյանքի շատ բնորոշ մանրամասներ ու դեպքեր, որոնց մեջ կռահում ես ապագա լիարյուն գեղարվեստական պատկերների սաղմերը: Բավական է, օրինակ, մի սեղմ հիշատակություն զրույց անող կամ չոնգուր նվագող հոր, տան հոգսերից խոսող մոր մասին, բարձր ժայռի գագաթից առաջին անգամ շրջապատի աշ-

խարիը դիտած մանկան զարմանալի տպավորությունների, կապուտակ երկնքի անսահմանության մեջ խորասուզված հայացքի, նույնիսկ հայրական տան ընտանի կենդանիների վերաբերյալ, որպեսզի մի խոր հարազատությամբ զգաս այն միջավայրը, կյանքն ու կենցաղը, որ շրջապատել են մանուկ Թումանյանին: Կարդալով այս գրառումները, ավելի շոշափելի, իրական գծերով ես տեսնում ու հասկանում Թումանյանի ստեղծագործության առաջին կենսական ակունքները:

Թումանյանի ինքնակենսագրական այս նյութերը մինչև այժմ անտիպ են մնացել: Նրանցից միայն առանձին հատվածներ ժամանակին օգտագործվել են Նվարդ Թումանյանի գրքում՝ նվիրված բանաստեղծի մանկության և պատանեկության տարիներին: Ձեռագիրը գրված է մատիտով, փոքր թերթիկների վրա և պահվում է Թումանյանի ժառանգների ընտանեկան արխիվում (բացի «Թե ինչպես իմ «Անբախտ վաճառականները» դարձավ американская» հոդվածի անտիպ հատվածից, որի ձեռագիրը գտնվում է Գրականության և արվեստի թանգարանի Հովի. Թումանյանի ֆոնդում): Գրառումներին կցվող ծանոթագրություններում բացատրված են առավել կարևոր անունները, տեղանունները, բարբառային բառերը և Թումանյանի երկերի ստեղծագործական պատմության հետ կապված որոշ հարցեր: Տեքստը պատրաստել և ծանոթագրությունները կազմել ենք բանաստեղծի դուստր Աշխեն Թումանյանի հետ միասին, որին, օգտվելով առիթից, հայտնում ենք մեր խորին շնորհակալությունը:

***Է. Մ. ՋՐԲԱՇՅԱՆ***

ՎԱՂ ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ

Մայրս ասում է, որ շատ վաղ եմ ոտն եղել, սովորականից շատ վաղ:

Հիշում եմ ես երկու դեպք, մին, որ պատը բռնած դուրս էի գալիս մեր երկար սոխախից և մեր կարմիր կովը (կարծեմ Ծաղիկ) ինձ հարու տվեց, պատին կպցրեց, ծղրտացի, եկան տարան: Մին էլ հիշում եմ, որ դռանը, կանաչ լուսամուտների տակ պատը բռնած գնում էի, մեր սև եզը դռանը խոտ էր ուտում, գնում էի նրա մոտ, եկան ինձ բռնեցին տարան:

...Թռչելու տրամադրություն ունեի միշտ և ինձ թվում էր միշտ, թե կարող եմ օդում թռչել, էնպես թեթև էի զգում, և այժմ էլ ինձ թվում է թե թռչում էի կամ թռել եմ:

Գիշերները կոշմարներ-մղձավանջներ:

Ինաղը(1):

Սարում, Հացուտ:

Ծաղիկ ընկնելու ծվանը:

Երկինքը:

Մի քանի տարեկան էի - կարտոֆիլի, նավթի (իմ պապի խոսքը) և կաղամբի մուտքը մեր գյուղը:

Կաղամբն ավելի շուտ?

1.

1. **Մեր ցեղը.**

Սովորություններ, ավանդություններ ևն:

2. Ես մանուկ - ամենավաղ հիշողությունները և անձնահատկություն-ներն ու առաջին տպավորությունները:

2. **Մեր տունը** ազնվական - Աղոնց(2).

Տատս,

Հերս,

Մերս,

Հորեղբայրներս,

Ղոնախներ,

Մեր բաղը:



3. Իմ պապոնց տունը. Սարո(3) - հովիվ, տավարած (Նիկալայ(4), իմ հասակակից, էդպես էլ մնաց):

Տատս - դեղին, կանաչ, կարմիր:

Պապս,

Քեռիներս:

4. Մեր գյուղի տիպերից:

5. Ես աշակերտ - առաջին երգերը.

Գրիշկի(5) մոտ,

Սահակ վարժապետը(6):

Միշտ ղոնախներ, մորս և Թագուհու(7) լացով տանջվելը:

Օհանես աղի(8) ծառայողը - денщик և շատ ծաղրածուներ:

Մուրադանց Մարգարը,

Երկար շամդանը(9), ես, մաղաշը(9ա), որ կտրելիս հանգցնում էի:

Կարասով մոմը, ճրագվի և մոմ գցելը:

Մեր բաղը – Լիթոնը(10), դեղձերը թափած, Լիթոնի որձակը:

Ռուս ջաղացպանը - <2 անընթեռն.>:

Ալխոանք, նրանց կռիվը:

Ալխոն(11) ու իր կնիկը (միշտ տանը կռիվ էր լինում), Օսմանը(12) ևն:

**Մինչև տասը տարեկանը գյուղում:**

Հետո Ջալալօղլի:

Քարափներ բարձրանալը, ձոր գնալը: Կնանիքը մեզ վախեցրին իբրև քաջքեր, Թագուհին - հեքիաթ, Նեսոն(13) և այլ հեքիաթներ:

Մաթոսի խելագար<ությունը> - Լոռեցի Սաքոն(14): Ջալալօղլի էի էս ժամանակ, թե՞ Թիֆլիս:

Քեռիներս: Սարում, սարից գալիս տունը:

Տատս ու պապս:

Սմեյիլը(15):

* * *

Մեր տանը թուրք աղալարները:

* * *

Մինը ազնվականի տուն - մյուսը սարըցու(16):

76 թվի կռվի ժամանակ մեր Գրիշկեն իր հոր թուրն ու խաչերն ուզում էր որ գնա կռիվ:

Լորիս Մելիքովի երգի վրա ավելացնելը:

Իմ առաջին երգերը:

Վարդան փեսեն(17). «Է՞ր հեռանաս», «Հայրենիք սրբազան», «Ազնիվ ընկեր»(18):

Դպրոցը - «խնդրեմ վե'ր կացեք»:

Պապիս երգը. «Առավոտ լուսուն» ևն:

Գիշերները մեր խաղերը - հարամոլլա(19):

Ինձ վախեցնելը:

Շանից վախելն ու փախչելը, շները ետևից չհասան:

Սմբատի(20) գլուխը, որ ծեծում էինք: Ճանճանոցը, ճանճերի քշելը: Ծտերի բները քանդելը(21):

Գառնարած - Նիկալի հետ:

Իմ հերս ինձ ղարաուլ էր կանգնեցնում, որ սրան նրան տանիցը բան տա:

Իմ տատը - եզանը չոշ էր ասում. իմ պապի թողածները:

Իմ պապերից պատմություններ:

Մեր մեծերից կենդանի մնացածները և նրանց զրույցը:

Իմ հոր իրիկունները - սազ ածելը նն:

Դպրոցում մեր ձեն պահելը - ը՜ ը՜ և ծիծաղելն ու ծեծվելը:

Ման գալիս վազում էինք, թե ես, թե ախպերս(22):

* * *

Յորս մեզ էջմիածին տանելը, Ալիքուչակ, որ տուն չէին ընդունում, բռնել տվեց ձին և սիլլա տվեց, հետո լավ վճարեց:

(Թիֆլիս городов. խփեց):

«Առավոտ լուսուն» երգը և գիշերը:

Մասիսը տեսնելը:

Դեղնած փարաջավոր աշակերտները ու մեռած աշակերտը: Ետ բերեց:

Գյուղի տիպեր(23):

Քոչնանց Սիմոն - միշտ ճիպոտը ձեռին, ուշունցով ու ծեծով անաստված: Նրա շրջանը: Չումանը - նրա մարդիկը:

Գյուղի հարսանիքը, մեծ <2 անընթեռն.> և զուռնաչին, որ ռուսերեն էր խոսում, առանց մի բառ ռուսերենի, Մարգարը (նրա ոտանավորներից ու հանաքներից) - իմ տատի ղարկած բոխչեն, որ իրեն վրա իրեն ու իր մարդու համար պատմություն չանի, բերեց հարսանիք, անեմ թե չէ:

Շաշ Դավոն, միշտ իշի վրա, ոտները գետնին քաշ գալիս, ոչինչ չուներ և միշտ գյուղի հանդի նն դարդն էր քաշում ու ամբողջ օրը գոռգոռալով իշին նստած ման գալիս:

Օսմանը - Ալեքը(24):

Մելքոնանց Օհաննեսի(25) առակները:

Իմ պապը թե ինչպես էր գողությունից խրտնում, ուրիշի մոտ միս չէր ուտում, թե գողացած կլինի:

* * *

Մորս երազ տեսնելու և նախազգացումի ընդունակությունը, օրինակներ (իմ հիվանդության ժամանակ նն):

Յերս, որ ինչ առնում էր, միշտ թողնում էր տեղը - փող: Նրա պատարա· անելիս ·ունատվելը և եկեղեցուց փախչելը: Մեռել թաղելուց փախչելը:

* * *

Առաջին անգամ իմ պրիստավ տեսնելը և Դուլի բիձեն:

Տատիս պատմություններից - Աղասու(26) մասին:

Մովրովին խեղդելը:

Ինքը, որ նոր հարս է եկել - մի շարք սպիտակամորուքներ են:

Յասան խանի տարին - մեր իլխեն և գյուղի փախուստը:

* * *

Իմ պապը, որ կռիվը թողել է մի հարսի՝ իր երեխի օրորոցի վրա սպանելու համար իր զինվորներից - «հարամ է սրանց հացը, արյուն է»:

Օվագիմի(27) պատմությունները: Ուզունլարցու պատմությունները:

Մեր ցեղի մասին ավանդությունները (**սկզբումը - Մեր ցեղը**):

Ղուզղունանք, Լուսավորչի ցեղը, Տերսանք(28) են, են - սուրբ Գրիգոր, սուրբ Գրիգորի աջը, Լուսավորչի երդումը - ամենամեծ երդումը Տերսանց:

Օջախի հիմքը արնով է դրած. հայ չեն եղել նախնիք: Տերսանց երազումը տեսնելը լավ է, սուրբ են(29):

Մեր օջախում մատաղ մորթելը, մեր օջախում որդեգրվելը, ով չի ապրում և շապկով անց կացնելը:

Կնանոցը ծեծելու սովորությունը և իմ բիձա Մամի(30) ծեծելը:



* * *

Կենդանիները - մեր եզները, ես եզնարած:

Ատուլ, շիշվիկ, օռոլ, և զանազան բանջարեղեններ ու հունդեր:

Դըդի(31) գլուխը - քարի տակը անձրև ժամանակ: Էն քարը էլի կա և տեսնելիս զարմանում եմ, թե ինչպես էի նրա տակը մտնում:

* * *

Աղբյուրները նրա տակ, որ էլ չկա:

Անտառները, ծառերը - չկան:

* * *

Առավոտվա ծտերի ծլվլոցը, տանձի ու մոռի գնալը:

* * *

Առաջին անգամ գյուղից հեռանալս և նապաստակ տեսնելս - «Գա-զա՜ն», ու փախուստս:

* * *

Իմ խաչը - փոքրիկ: Սպիտակ արխալուղով:
Իմ տատի հետ Դիդը - թաթախվելու կարմիր ձվով:

* * *

Իմ մորաքույր Սաչլուն, իր հասակակից աղջիկները և Համբարձումը:

* * *

Ուխտատեղերը -

Սուրբ Գրիգոր, գանձը և Տիգր<անի> պատմությունը: Օսմանի թվանք գցելը:

* * *

Խիզախ բաների գնալը - Դեբեդի մեջ խորը գնալը և հազիվ ազատվելը: Քարափների բարձրանալը:

* * *

Քուրքը թարս հագնելը, մերոնց վախեցնելը:

Գողություն և մորս գողություն ասելը, ինչպես ինձ կտրից շպրտեց ներքև:

Մի գիշեր տեսա - երազումս բեղերս դուրս էին եկել, ինչպե՜ս էի լաց լինում:

* * *

Մերս իբրև թե մեռել էր - պա՜, ես էլ չեմ ապրիլ:

Եվ մինչև մեծ հասակս - 17 տարեկան - մոտիկ մարդու մահը էն տպավորությունը չթողեց:

Առաջինը՝ Օսմանի:

Միկոյի մահը - իմ ընկեր Մոսին ձորիցն եկավ, թշերը կարմիր բալը քսած, բալի ճյուղը ձեռին - եկավ տեսավ իրենց տանը սուգ են անում, հերը մեռել էր:

Իմ բիձա Գրիշկի դպրոցը, մեծ աշակերտներ, արճըճե մատիտներ: Ես ինչպես էի պըտից թանաք եփում:

* * *

Քավորանց տունը գնացի (Օսեփանց), բոխչա տարա: Մի թաղիք մի քանի տակ ծալեցին տակս դրին. որ վրեն նստեցի, թաղիքը ետ գնաց, ինձ էլ շուռ տվեց մեջքիս վրա: Լաց էլա. ծվածեղ արին դրին առաջս, կարմիր ձու տվին:

* * *

Առաջ օթախումն էինք քնում, հետո մեծ տանը, հետո սրահում: Գիշերներն ու աստղերը:

Գելը, որ սրահը մտավ, մերս կարծեց իշի քուռակն է:

* * *

Հարսանիքներին - իծի կերպը, իծի պես մկըկալը և մեծ ահագին թաղիքի ֆալլուսը:

Ամեն պսակվող ժամից առաջ մեր տունն էր գալիս:

* * *

Բոլորն իմ տատի քաթիպան էին տանում հագնում պսակվելիս:

Իմ տատի հին թղթերի մեշոկը - զանազան կապույտ ու դեղնագույն թղթերով և զանազան կնիքներով:

Հետո իմ բիձա Գրիշկեն մեծ մասը լուսամուտները թղթեց դրանցով ու ձեթ քսեց:

* * *

Որ տատիս ծոցումն էի քնում, իմ ախպեր Ռոստոմն էլ էր կարծում, ես էլ, որ ես տատիս տղեն եմ: Ասում էր - այ պառավ, ի՞նչ ես քու տղին տալիս:

Մեր Սաղար գոմեշը, գիշերները միշտ պոզով խփում էր գոմի սնին, թրխկոցը գալիս էր:

Հորեղբայրներս - Մամը գյուղի առաջին մաճկալը:

Գրիշկեն անհաջող խանութպան ու վարժապետ և լավ ձայնավոր տիրացու: Խեղճ ու անշառ:

Մամի բիձու հորովելները - սելի և կալի:

Հերս հասարակական գործերով, գյուղի մեջը և ղոնախների հետ:

Հերս իրիկունները միշտ մարդ էր կանչում, կամ ղոնախ էր բերում, որ զրույց անի և սիրում էր զրույց անելով էլ քնել, կամ թե չէ չոնգուր էր ածում, խաղ ասում, բայաթին են: Իսկ մերս էդ ժամանակ տան հոգսերից էր խոսում, անասուններից, մեր տան պակասություններից, ուրիշներին օրինակ էր բերում և խանգարում: Ու միշտ կռվում էին: (Վերջին գիշերը - «թողեք սազս ածեմ, էլի»):

* * *

Եվ դրա համար էլ, որ երևակայում եմ միշտ - հորս անհոգ ու զվարթ զրույց անելիս, ձի նստած, կամ սազ ածելիս, իսկ մորս հոգսի մեջ, գյուղից դուրս - հողերում մեր կորած անասուններին գնալիս ման գալու են:

* * *

Հերս նշանավոր հրացանաձիգ էր և ձի նստող: Մեր մեջ ես ժառանգել էի:

* * *

Մեր ցեղը - ֆանտազյոր - ոչ թե ստախոս, մեծ խոստումներ են: Հավատարմությունը - «Տերտեցու հավատարմությունը - շունն էլ չի ունենալ»:

* * *

Մեր պարտքատերերը: Պապիս պարտքերը ճամփա շինելու, կամուրջ շինելու են:

Հերս չէր թողում գյուղը կամուրջ շինի. մարդիկ էին խեղդվում:

* * *

Ղարսի պատերազմի(32) խաբարը:

Լորիս Մելիքովը կարգադրել է ինչ ուզում է լինի - Ղարսը վերցնեն: Ռուսները վերևից թափել են, թուրքերը խշտիկները բռնել են - էնքան վերևից թափել են, որ շամփրի պես լցրել են - նոր վերևիցը գնացել են:

* * *

Գիշերների լռության մեջ միշտ ականջ էի դնում Դեբեդի ձենին, որ գալիս էր խոր ձորից երբեմն խուլ ու խոր, երբեմն պարզ ու ահավոր: Եվ կարծես խոսում էր հոգուս հետ:

* * *

Ինչքա՜ն էի սիրում առավոտը աքաղաղների ծուղրուղո՜ւն - գիշերվա շների հաչոցը:

* * *

Մերս գիտեր, որ ես վախում եմ գիշերները մթնում, որ չեմ քնում, ու միշտ հարցնում էր - աղա, քնել չե՞ս... խոսում էր, որ իմանամ զարթուն է, չվախենամ:

* * *

Կարմիր Էրում(33), բարձրից աշխարհքը: Ջալալօղլու սիպտակ տները, Թիֆլիսի կողմը: Ճերմակ ամպերը, որ հազար ու մի ձև առնելով փոփոխվելով պտտվում են մեր երկրի շուրջը և մենք ենք կենտրոնը:

Մեր ձորերն անտառապատ, դուզղունները մեծ քանակությամբ:

* * *

Մեծերի խաղերը - ջուր տու քշի ևն: Կոճի ևն: Մանավանդ Բարեկենդանին ևն ծերունիները կոճի էին խաղում:

Սար -

Շվին, խաղը, բայաթին, հանկարծակի փոթորիկը, հեղեղը, կայծակներն ու գողի վրա տալը:

* * *

Աղջիկ փախցնելը:

* * *

Նապաստակն առաջին անգամ և գյոլի–ուրթում(34) առաջին անգամ թռչունի բույնը ծառի արմատին, որ մերկ ճուտերը դեղին կտուցներով բերանները լեն լեն բացեցին ու վիզները ձգեցին դեպի ինձ - ի՜նչ սարսափ:

Տան տակի ձորը - Էրերում, որ ծղրտում էինք ու քաջքերը ձեն էին տալիս (Սալոմը, Խանումը ու մյուս կանայք քարափի գլխին):

* * *

Հասան Ջալալյանի «Ճանապարհորդութիւն ի մեծն Հայաստան»(35), սեր դեպի արձանագրությունները և արձանագրելը պատերի վրա:

* * *

Ջաղի ձորում լողանալը (կրիան և երկյուղը):

* * *

Իմ մերը ղաչաղանցի տիրացու Արութնին բերել տվեց, գիր անել տվեց ինձ համար, որ գիշերները մթնում վախենում էի:

Հեռավորություն չափող գործիք էի շինել կլոր լուցկու ամանից:

* * *

Մի անգամ շատ փոքր էջմիածին եմ եղել - միտս է միայն հորաքույրս ու փեսա Վարդանը, նրանց տունը, նրանց դեղին կավի պարիսպն ու պարտեզը, սև բադրիջանի ու պոմիդորի թփերը և նրանց հոտը: Կուրկուռները(36), էջմիածնի տաճարի ներսը, փշոտ ու արևոտ ճամփեն, փշատի ու նռան ծառեր - վրեն ճաքած նռներ ու դեղին փշատ, Աշտարակը, Շահազենց տան մառանը - բայց իսկի չեմ հիշում Մասիսը, միայն կարծես թե մի սիպտակ մեծ բան եմ հիշում, էն էլ հիշում եմ թե միայն թվում է - չգիտեմ:

* * *

Իբրև հին կարոտ մտերիմներ հիշում եմ մեր Պոզատ գոմեշը, Սաղարը, Նազլուն, Ծաղիկը, Չերքեզը, Աբաշը, Թոբլան շունը, ղայթարը, իմ պապոնց, մեր Մարինոս էշը, ղռաթ ձին - և մեր սև Մաշկոն, որ պապս էր հետը բերել Ռուսաստանից - ծառերն ու անտառները - քարերը:

* * *

Առաջին տետրերը (Այբբենարան), որ բերին Թիֆլիսից - կանաչ, դեղին, կարմիր - ճակատին՝ «Խաչ, օգնեա ինձ...»:

* * *

Իմ պապի փշտովը, որ նորոգել տվին - գնացի հոն քաղող կանանց հետ Ջաղի ձորը և ետ գալու պատմությունը -

Մակո բիձեն: Մտածում էի, թե որ մեծանամ, էնպես մարդ դառնամ, որ մեր Լոռու ձորի վրով կամուրջ շինել տամ:

* * *

Գրիշկեն հլեբն(37) ուսին Դդի գլխին տնկված:

- Այ տա, մեր կալումը լծած մեջքը թոզոտ եզը տեսել չե՞ք:

* * *

Ես միշտ կորցնում էի անասունները, մերս ինձ տանում էր էստեղ, էնտեղ պահում - Բալոյի(38) տանը (կարտոֆիլը), Աթի բիձոնց տնում (քաշովին):

Զարմանալի լավ կոճի էի խաղում ու քար էի գցում:

* * *

Պապս նավթի մասին - առանց փիլթեն(39) առաջ գցելու են: Կարելի է մի ժամանակ մեզ էլ հասնի:

* * *

Փոքր երբ էջմիածին էինք գնում - զարմանալի հիշում եմ էն հրաշալի երկինքը, որ տեսա երբ պետք է տային մորս ձիու վրա, մայրս ձիու վրա էն երկնքի մեջ կարծես:

Ծիլկուսով(40) ձուկը բռնելը: Վախից լոքոից փոքր - (վերջում իմացա, որ լոքո է եղել):

* * *

Ծտեր բռնելը (Թագուհին):

Քոշաքարից(41) են - հեղեղի և **կայծակի** սերը - մինչև հիմա:

ՁԱԼԱԼՕՂԼԻ

Գնալու նախընթաց գիշերը. գաթա, թխվածք, ամեն բան պատրաստ:

Մորս քունը չի տանում:

Աղ է աղում երկանքով, լաց է լինում ու խոսում մեզանից իրեն իրեն մենակ:

Ես էլ անքուն տեղի մեջ լաց եմ լինում, լաց եմ լինում:

* * *

Ճամփին ձյուն ու քամի: Երկուսիս, ինձ ու եղբորս ձիու վրա դրած, իրեն փարաջեն էլ հանած մեզ վրա գցած, ինքը ոտով ցեխի ու ձյունի մեջ գալիս մեր կողքով, ձիու հետ, ոտով հերս: Նրա սպիտակ մեծ մորուքը ձյունախառն քամին ցրիվ էր տալիս, կրծքին կպցնում, ուսովը տանում:

Էդ գիշեր հասանք Քոլագերան: Մի տաք օդա:

* * *

Մյուս օրը Ջալալօղլի:

Ճերմակ տները:

Ա՜յ, Սաթենիկը:

Երկար սապոկների հանելը - պատիժ, ես նրանն էի հանում, նա իմը: Բայց նա ոտը ծռմռում էր, ինձ չարչարում:

Կեպին և այլն:

Դպրոցը:

Աղջիկների դպրոցը և աղջիկները...

<1 անընթռն.> պատկերները -

Ամեն օր գաթով ու կաթով չայ, և այլն.

Ջալալօղլու շրջանը, նոր աշխարհք, կարմիր տանիքներ, սիպտակ տներ, արևածաղկի արտեր, սագեր, ֆուրգոններ, ձիով լծած կառքեր, զորք և այլն...

Մանկությանս նոր երգ էր դուրս եկել: Երգում էի ես եղբորս հետ զիլ ձենով: Երբոր բացվին դռներն հուսո...(42)

Հասակ մը կա մեր կենաց մեջ,
Ուր ամենայն իղձ կավարտի...
Հասակ մը ուր հոգին ի տենչ
Հիշատակաց յուր կարոտի...

Ու չէի հասկանում թե ինչ եմ երգում: Նոր եմ հասկանում:

Այժմ անցյալի հուշերն ավելի են ուժեղ ու գրավիչ, քան իրական կյանքը: Եվ էն աշխարհքում ավելի շատ բան ունեմ, քան էս:

Երևակայում եմ, եթե մարդիկ երկար ապրեն՝ ճիշտ որ ինչքան քաղցր պիտի լինի մահը:

<ՄԱՆԿՈՒԹՅԱՆ ՇՐՋԱՆ>

1869 - մանկությունս մինչև դպրոցից դուրս գալը.

1886 - ուսումնարանից դուրս գալը, հեղափոխ. - Գոլոշյան(43) - հիվանդություն, կոնսիստորիան, ամուսնություն, քահանայություն, ապահարզան, եկեղեցիներ - կռիվ - քեֆեր:

1890 - Գիրքս. հրատարակչական ընկերություն, խմբագրություններ:

* * *

Մինչև տաս տարեկանը (2-ից) երեխաները սաստիկ անհանգստանում են և սաստիկ շարժվելու (ձեռք ու ոտը) կարիք են զգում:

* * *

Երեխան արտահայտում է հենց առաջին անմիջական տպավորության տակ - ուրախ թե տխուր:

* * *

Մեր հարսներն ու մայրս գերի մեր հյուրերին. հորս կամուրջ շինելը և այլն:

Ծաղրածուները պապերիս:

* * *

Իմ մեծ <ուսուցիչը> Դեբեդի վշշոցը, աստղալի երկնքի տակ քնելը և հանդերում մենակ կանաչում պառկելը ժամերով երկնքի մեջ խորասուզված հայացքով: Երազներ, նախագուշակություններ և նախազգացումներ:

* * *

Թռչունների բները քանդելու, ձվաններն ու ճուտերը տանելու սովորությունները գյուղի երեխաների մեջ: Մենք էլ էինք անում, բացի ծիծեռնակից:

* * *

Պատանի ժամանակ սիրում էի մեր հանդերում ու բլուրների վրա, ծառերի տակ մեջքիս վրա պառկել ու ժամերով խորասուզվել երկնքի մեջ կամ բնության:

Չէի սիրում կալի և այլն աշխատանքը - փախչում էի և այլն. հորս հետ սել գնալը գլխովն էի գցում, կամ զոռով <հազում>:

* * *

Իմ մանկությունը անց է կացել մի աստվածային շռայլության մեջ: Լոռու գեղեցիկ բնությունը, անմահական օդը, զրնգան աղբյուրների ջուրը, լեռնական գյուղական կյանքի ազատությունը, էն հավասարությունը - որ կար հին գյուղական կյանքում, ամենքն էլ մի տեսակ էին ապրում, ուտում, խմում ու իրար հետ:

Էս ամենի հետ մի տեսակ անհոգություն ասեմ թե ծուլություն ընդհանուրի վրա, գարնանը սարերի լանջերին, ամառը անտառների շվաքներում, ձմեռը պատերի տակ արևկող արած, իսկ գիշերը օդաներում զրույց անելով համով, կամով:

Դեռ լեռնային մեր անկյունը չէր հասել կուլտուրան, իր տենդը:

* * *

Մի էս տեսակ աշխարհք եմ կորցրել - բնությունը զրկվել է իր նախկին պատկերից - երկրագործը, նահապետը ու հովիվը. մարդիկ էլ դարձել դուքանչի ու աբլակատ և այլն:

* * *

Յողերի գործը: Ապա Ռոստոմի(44) և Արտիկի(45) մահը:

* * *

Իմ առաջին ուսուցիչներից: Ժամերով պառկել հանդում ու խորասուզվել երկնքի մեջ լուռ: Արծիվն է ծղրտում կամ թռչուններն են... <մի քանի բառ անընթեռնելի>:

ԻՄ ՄԻ ՔԱՆԻ ԳՐՎԱԾՔՆԵՐԻ ԲԱՑԱՏՐՈՒԹՅՈՒՆԸ(46)

1. Զուռնաչի Սաքոյի աղջկա պատմությունը և Մարոն,

2. Ռամազի Մաթոսը և Լոռեցի Սաքոն,

3. Գևոյի, Ալեքի, Օսմանի և այլն աղջիկ փախցնելը և Անուշը,

4. Քեռի Իսային(47) և Արծիվն ու կաղնին, Շունն ու կատուն, Անբախտ վաճառականները,

5. Ղոխնանց պապին(48), մեր գյուղի Չոփուրի տղերքը(49) և Յառաչանք պոեմը,

6. Փարվանա, Վանցյան(50) և Փշրանքներ թե Ջավախքի բուրմունք,

7. Թմկաբերդի առումը, Ջավախքի բուրմունք(51):

## ԹԵ ԻՆՉՊԵՍ ԻՄ «ԱՆԲԱԽՏ ՎԱՃԱՌԱԿԱՆՆԵՐԸ» ԴԱՐՁԱՎ АМЕРИКАНСКАЯ(52)

(Անտիպ հատված համանուն հոդվածի սևագրությունից)

87 թվին ընկա ծանոթների մի շրջան, որոնք իմ լեզուն գտան գռեհիկ և խորհուրդ տվին ձեռք վերցնել էդ վայրենի բարբառից ու գրական լեզու գործ ածել: Ճաշակ տալու [և համոզելու համար] ցույց էին տալիս, կարդում էին մեր հին գրաբար ոտանավորներից: Ես էլ գրականությունից միանգամայն անտեղյակ ու տգետ մի, գրեթե պատանի, էնքան հավատացի, որ լեզուս փոխեցի, սկսեցի գրել [գրական լեզվով] (Արև ու լուսին, և այլն), և մինչև անգամ գրաբար, թեև չգիտեի: Ապա թե ձեռս ընկան Յյուսիսափայլի համարները, որ շատ սիրեցի: Սա հո բոլորովին ծռեց իմ ճամբից - սկսեցի շինծու լեզվով խորհրդածություններ անել ազգի վիճակի վրա, գործ ածել գետնաքարշ, գիշերատեսիլ և այլն, և այլն բառեր, որ Նալբանդյանն ու Նազարյանը գործ էին ածում իրենց կռիվների մեջ ու հարձակվել զանազան կողմեր - մարդկանց վրա, [ազգի վրա,] հոգևորականության վրա, վերջապես աստծու վրա:

Այնուհետև ընկա մեր ինտելիգենտների շրջանը, ուր իմացա, որ բանաստեղծը պետք է հասարակության ցավերով ապրի, քաղաքացի լինի և այլն - և գրի ահա էս ու էն...

Էս տպավորության տակ էլ մի քանի ոտանավորներ շինեցի - միշտ անհաջող: Եթե էս բոլորին ավելացնենք և շատ ու շատ ուրիշ ծախորդ հանգամանքներ - մարդ կզարմանա, թե հապա ինչպես դուրս եկար էդ բոլորի միջից, այսուամենայնիվ քո պատկերով: Բայց հասկանալի կդառնա, եթե ավելացնեմ, որ միշտ մի ճշմարիտ, ուղիղ ու հզոր առաջնորդ եմ ունեցել - և դա եղել է իմ բնազդը. նա է ինձ հանել ու հովանավորել, մինչև նրան դաշնակից մի քանի բախտավոր դեպքեր ու դեմքեր են վրա հասել:

## *ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ*

1. Մանկական հիվանդություն:

2. Թումանյանի գերդաստանը գյուղում կոչվել է նաև Աղոնց տուն (Թումանյանի պապի՝ Օհանես աղի անունով):

3. Թումանյանի մեծ մորեղբայրը:

4. Թումանյանի մորեղբոր տղան:

5. Թումանյանի հորեղբայրը, գյուղի տիրացուն, որի դպրոցում ապագա բանաստեղծը գրել-կարդալ է սովորել: Հետագայում հիշատակվում է «բիձա Գրիշկա» անունով:

6. Սահակ վարժապետը Դսեղ գյուղում ուսուցիչ է եղել: Նրա դպրոցում Թումանյանը սովորել է երկու տարի և այդ մասին հետագայում մանրամասն պատմել 1905 թ. գրած «Ինքնակենսագրություն» հոդվածում:

7. Թումանյանի հորեղբոր (Մամի) կինը:

8. Բանաստեղծի պապը:

9. Մոմակալ:

9ա. Պատրույգ կտրելու մկրատ:

10. Թումանյանների տան այգեպան («բաղմանչի»):

11. Թումանյանի պապի՝ Օհանես աղի խորթ եղբայրը:

12. Տե'ս N 24 ծանոթագրությունը:

13. Թումանյանի մանկության ընկերներից, որը հավանաբար եղել է «Իմ ընկեր Նեսոն» պատմվածքի հերոսի նախատիպը:

14. Ռամազի Մաթոսի խելագարվելու պատմությունը եղել է այն կենսական հիմքը, որից ծնվել է «Լոռեցի Սաքոն» պոեմի մտահղացումը: Տե'ս նաև N 46 ծանոթագրությունը:

15. Թումանյանի պապոնց տան թուրք տավարած, որը, հավանաբար, եղել է «Ահմադը» պատմվածքի հերոսի նախատիպը:

16. Թումանյանն ակնարկում է իր հոր և մոր գերդաստանների սոցիալական վիճակի և կենցաղավարության տարբերությունը (տե'ս այդ մասին՝ Ն. Թումանյան, «Հովհ. Թումանյան. Մանկություն և պատանեկություն», Հայպետհրատ, 1955, էջ 23):

17. Թումանյանի հորաքրոջ՝ Սոնայի ամուսինը, որն ընտանիքով ապրում էր Էջմիածնում:

18. Ժամանակին տարածված ազգային-հայրենասիրական երգեր, որոնք սիրված են եղել Թումանյանների ընտանիքում:

19. Երեխաների խաղ, որը կոչվել է նաև «տապանուկի» (տապկնոցի):

20. Թումանյանի հորեղբոր տղան, հասակակից ընկեր:

21. Այդ մասին Թումանյանի քույրը՝ Իսկուհին հետագայում հիշել է. «Տերտեր պապեն օթախները շինում էր: Մշակները հաց էին ուտում: Օհանեսը փետը վերցրել էր և կտուրը քանդում էր, որ ծտի բունը հանի: Տերտեր պապեն կանչեց. «Եկե՛ք, եկե՛ք, գլո՜ւխս թաղեք, ես մարդ եմ բռնում տունս շինեմ, սա քանդում է» (ըստ բանաստեղծի դստեր՝ Աշխեն Թումանյանի կատարած գրառման):

22. Խոսքը Թումանյանի եղբոր՝ Ռոստոմի մասին է:

23. Այս վերնագրի տակ Թումանյանն, ըստ երևույթին, մտադիր էր պատմել հայրենի գյուղի բնորոշ և հետաքրքիր դեմքերի մասին, որոնք մանկության տարիներին ուժեղ տպավորություն են թողել նրա վրա: Ստորև հիշատակված մարդիկ մի քանիսն են այդ գյուղական «տիպերից»:

24. Այստեղ, դատելով բանաստեղծի քրոջ՝ Իսկուհու պատմածից (դարձյալ Աշխեն Թումանյանի գրառման համաձայն), Թումանյանը մտադիր է եղել ներկայացնել սպանության և վրիժառության մի արյունոտ պատմություն, որի զոհերն են եղել համագյուղացիներից Օսմանն ու Ալեքը:

25. Թումանյանի ազգականներից, որը մշտապես ապրել է Չաղի ձորում և գյուղում հայտնի է եղել իր պատմած առակներով: Ապագա բանաստեղծը հաճախ է եղել նրա տնակում:

26. Խոսքը Խ. Աբովյանի «Վերք Հայաստանի» վեպի գլխավոր հերոսի նույնանուն նախատիպի մասին է, որը մի որոշ ժամանակ ապրել է Դսեղ գյուղում: Նրա կյանքից մի դրվագ պատմված է Թումանյանի «Քաջերի կյանքից» ստեղծագործության մեջ:

27. Թումանյանի պապի հայրը (Օվազիմ Յուզբաշի), որը աչքի է ընկել իր ռազմի սխրագործություններով: Նրա մասին մանրամասն պատմում է Խ. Աբովյանն իր վեպում:

28. Թումանյանի տոհմը գյուղում կոչվել է նաև Տերսանք, Տերսանց տուն:

29. Թումանյանն այստեղ վերարտադրում է համագյուղացիների պատկերացումները իր գերդաստանի, նրա՝ ժամանակին Տարոնից գաղթած և Լոռիում հաստատված լինելու մասին:

30. Թումանյանի հորեղբայրը:

31. Դսեղի հյուսիս-արևելյան կողմում գտնվող բլուր:

32. Խոսքը 1877 թ. ռուս-թուրքական պատերազմի մասին է:

33. Դսեղի մոտակայքի քարայրներից մեկի անունը:

34. Դսեղի շրջապատի տեղանուններից:

35. Սարգիս Հասան-Ջալալյանի «Ճանապարհորդութիւն ի մեծն Հայաստան» գիրքը (1853) եղել է մանկության տարիներին Թումանյանի կարդացած առաջին գրքերից մեկը:

36. Հնդկահավ:

37. Վերմակ:

38. Դսեղ գյուղի ժամհարը:

39. Պատրույգ:

40. Ձուկ բռնելու հարմարանք:

41. Լոռու լեռներից մեկը:

42. Ն. Ռուսինյանի «Կիլիկիա» բանաստեղծությունը, որից մի քանի տող մեջ է բերում Թումանյանը:

43. Ազգային-ազատագրական շարժման մասնակից Վարդան (Ալեքսանդր) Գոլոշյանի մասին է խոսքը, որին Թումանյանը դեռ 1885 թ. նվիրել է հատուկ բանաստեղծություն («Թող փչե քամին» երգի եղանակով»):

44. Բանաստեղծի եղբայրը՝ Ռոստոմ Թումանյանը, որն սպանվեց 1915 թ. Լոռիում:

45. Բանաստեղծի որդին՝ Արտավազդը, որը զոհվեց 1918 թ. Վանի շրջանում մղված կռիվների ժամանակ:

46. «Իմ մի քանի գրվածքների բացատրությունը» գրառման մեջ Թումանյանը հիշատակում է այն կենսական փաստերը, մարդկանց կամ գրական աղբյուրները, որոնք հիմք են ծառայել իր համապատասխան ստեղծագործությունների նախնական մտահղացման համար:

47. Թումանյանի մորեղբայրը, որից ապագա բանաստեղծը շատ ավանդություններ ու առակներ է լսել:

48. Այգեհատցի ծերունի, որը եղել է «Հառաչանքի» ծեր այգեպանի նախատիպը:

49. 1880-ական թթ. իշխանությունների դեմ ըմբոստացած դսեղցի եղբայրներ, որոնց պատմությունը ոգևորել է Թումանյանին՝ գրելու «Հառաչանք» պոեմը:

50. «Փարվանա» բալլադի նյութը Թումանյանն առաջին անգամ լսել է Ներսիսյան դպրոցի իր նախկին դասընկեր, հայտնի մանկավարժ Գրիգոր Վանցյանից: Այդ մասին նրա ծոցատետրերից մեկում կարդում ենք. «Գրիգորն է լսել Ախալքալաք: Փարվանա (կրակի թիթեռ). Թագավորը մի աղջիկ է ունենում, ասում է, ով որ կրակ բերի նրան կտամ: Գալիս է կրակի շուրջը պտտվում, որ կրակ տանի և միշտ ընկնում մեջն այրվում» (Թումանյանի ընտանիքում պահվող անտիպ նյութերից):

51. «Թմկաբերդի առումը» պոեմի հիմքում դրված ավանդությունը գրի է առել և հրատարակել է հայտնի բանահավաք և ազգագրագետ Ե. Լալայանը՝ «Ջավախքի բուրմունք» բանահյուսական ժողովածուի մեջ (Թիֆլիս, 1892, էջ 57):

52. «Թե ինչպես իմ «Անբախտ վաճառականները» դարձավ американская» հոդվածը Թումանյանը գրել և հրապարակել է 1910 թ.: Հոդվածի սևագիր տարբերակում կան կտորներ, որոնք ինչ-ինչ պատճառներով դուրս են մնացել վերջնական խմբագրությունից: Դրանցից է ստորև հրապարակվող հատվածը: Այստեղ կարևոր տվյալներ կան ստեղծագործական կյանքի վաղ շրջանում Թումանյանի գեղարվեստական ճաշակի ձևավորման, որոնումների և գրական շրջապատի մասին: Այս առումով ներկա հատվածը սերտորեն առնչվում է Թումանյանի ինքնակենսագրական գրառումների հետ, ուստի և հարմար գտանք հրապարակել այստեղ:

***«Պատմա-բանասիրական հանդես», 1966, N 1, էջ 173-186***

***«Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ», գիրք 2, Երևան, ՀՍՍՀ Գիտությունների ակադեմիայի հրատարակչություն, 1969, էջ 407-459***

*Արամ ԻՆՃԻԿՅԱՆ*

# ՀՈՎՀԱՆՆԵՍ ԹՈՒՄԱՆՅԱՆ ԿՅԱՆՔԻ ԵՎ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ 1869-1899

## Հատվածներ

## ԳԼՈՒԽ Գ 1887-1892

## ԲԱԽՈՒՄՆԵՐ ՄԻՋԱՎԱՅՐԻ ՀԵՏ. ԱՌԱՋԻՆ ԳԻՐՔԸ. ԱՐՁԱԳԱՆՔՆԵՐ ԵՎ ԳՆԱՀԱՏՈՒԹՅՈՒՆ

Թումանյանի կյանքի այն հինգ տարին (1887-1892), որ ընդունված է «կոնսիստորիայի շրջան» անվանել, բանաստեղծի համար լի են շատ կարևոր իրադարձություններով. այդ շրջանում էր, որ Թումանյանը ձևավորվեց որպես բանաստեղծ, լույս ընծայեց իր առաջին ժողովածուն, ճանաչվեց և մտավ գրական ասպարեզ:

1887 թ. աշնանը, երբ Թումանյանը նոր էր սկսել պաշտոնավարությունը կոնսիստորիայում, մտերմանում է Ներսիսյան դպրոցի մի քանի աշակերտների հետ (Դավիթ Շահլամյան, Արամ Առաքելյան, Գրիգոր Վանցյան, Արսեն Ղլտճյան), որոնք հայոց լեզվի և գրականության անբավարար դասավանդման թերին ինքնազարգացմամբ լրացնելու նպատակով կազմել էին գրական մի շրջան և պարբերաբար հանդիպումներ և պարապմունքներ էին ունենում:

Այստեղ է, որ բանաստեղծը հանգիստ ու մխիթարություն է գտնում կոնսիստորիայի աղմուկից ու տաղտուկից, հոգեկան վրդովմունքներից հետո: Թումանյանը դեռ աշակերտական տարիներից «առանձնապես մոտիկ ու սրտակից է եղել» Դավիթ Շահլամյանի (1870-1894) հետ, որին ընկերական շրջանում մտերմաբար «Դաթիկո» են կոչել:

Հենց Շահլամյանն էլ Թումանյանին ծանոթացնում և կապում է հիշյալ շրջանին: Դաթիկոյի ծնողները Թիֆլիս վերաբնակված ախալցխացիներ էին: Նա իր մեղմ, բարեհամբույր բնավորության համար վայելում էր «հնգյակի» ընդհանուր համակրանքը. «Ես մինչև օրս չեմ կարող մոռա-

նալ նրա մրահոն և թախծալից աչքերը,- պատմում է Ղլտճյանը:- Նրա թախծալից աչքերն իրենց խորքում ասես ինչ-որ մշտապես հրահրող վիշտ էին թաքցնում, ծանր հոգեկան ապրումներ»: Թումանյանը Շահլամյանի հետ մտերմանում է 1888 թ. ապրիլից, երբ փոխադրվում է Յովհ. քահ. Մարտիրոսյանի բնակարանը՝ այն տունը, որի վերնահարկում ապրում էր Շահլամյանն իր քրոջ և փեսայի հետ: Մտերիմ ընկերները դառնալով հարևաններ, հաճախ էին առանձնանում, մտորում, զրուցում: Օլգա Թումանյանը Դաթիկոյին հիշում է որպես մի «խեղճ, ինքնամփոփ, մելամաղձոտ տղայի»: Ներսիսյան դպրոցն ավարտելուց հետո (1889), Շահլամյանը երեք տարի ուսուցչություն է անում Թումանյանի ծննդավայրում: 1894 թ. առեղծվածային հանգամանքներում, նա ինքնասպանություն է գործում, խոր վիշտ պատճառելով իր ընկերներին, հատկապես Թումանյանին: «Յնգյակի» անդամներից առավել երկարակյացը՝ Արսեն Ղլտճյանն իր հուշերում անդրադառնալով Շահլամյանի ինքնասպանությանը, գրում է. «Նրա մատաղ և ազնիվ հոգին կրծող կսկիծն ու վիշտը, որ այնպես ակնբախ կերպով արտացոլվում էին նրա խորը թախիծով համակված հայացքի մեջ, վերջ տվին նրա ջահել կյանքին... Օվանեսն հաղորդակից էր Դաթիկոյի հոգեկան ապրումներին. նա գիտեր, թե ի՛նչն է կրծում իր սիրելի ընկեռջ ներսն ու հոգին... Ես միշտ մտածում եմ, թե Դաթիկոյի էությունը մաշող գաղտնիքը մարդկային կյանքի գաղտնիքներից խիստ ծանրերից է եղել, ու այդ գաղտնիքին հաղորդակից եղողի համար՝ նվիրական, որ Օվանեսը Դաթիկոյի հետ տարավ գերեզման: Ես շատ անգամ եմ Օվանեսին հարցրել, բայց միշտ էլ նույն պատասխանը՝ մի վշտահար ժպիտ ու հայացք և երկու խոսք, թե՝ «Իմս չէ, որ քեզ տամ»: Դաթիկո Շահլամյանի թախիծն ու վիշտը զգալի ազդեցություն է գործել Օվանեսի վրա, նրան էլ համակելով հոգեկան վշտով: Ինձ միշտ թվացել է, թե Օվանեսն ու Դաթիկոն ինչ-որ հոգեկան ցեղակցություն ունեին՝ նման կամ համարյա թե նմանօրինակ ապրումների ենթակա լինելու հետևանքով: Երբ ես այդ մասին ակնարկներ էի անում, այսինքն այն մասին, թե Դաթիկոն իր վրա ազդեցություն ունի, Օվանեսն այդ չէր ուրանում: Յամենայն դեպս, Թումանյանն այն կարծիքին էր, թե մեր հնգյակի մեջ Դաթիկոն ամենապայծառ և զգայուն դեմքն էր»[39]:

---

[39] Ըստ Օլգա Թումանյանի բանավոր վկայության, վերջին տարիները Շահլամյանի հոգեկան հավասարակշռությունը խանգարված է եղել:

Անտարակույս, մտերիմ ընկերոջ ողբերգական մահվան այդքան խորն ապրած վիշտը ինչ-որ չափով դրսևորվել է միևնույն տարում (1894) գրված «Դեպի Անհունը» պոեմի թախծալի խորհրդածություններում:

Արամ Առաքելյանը (1867-1933) տարբերվում էր իր կենսուրախ բնավորությամբ, և ինչպես վկայում է Ա. Ղլտճյանը, «քիչ թե շատ գրական ճաշակ ուներ, ու երբեմն, Օվանեսի բանաստեղծությանց ազդեցության տակ ոտանավորներ էր գրում, որ նամանավանդ Օվանեսին, ինչպես և մեզ, խիստ զվարճացնում էր... Օվանեսը նույնիսկ մի երգիծական քառյակ էր գրել նրա բանաստեղծական ունակությանց մասին...»: Առաքելյանը Զանգեզուրի (Ղափան) Սևաքար գյուղից էր: Ավարտելով Ներսիսյան դպրոցը, 3-4 տարի զբաղվում է ուսուցչությամբ Թիֆլիսում և Ախալցխայում, ապա Աղստաֆա կայարանում ստանձնում է մի առևտրական տան ներկայացուցչի պաշտոն: 1898 թ. փոխադրվելով Բաքու, ծառայության է անցնում նավթարդյունաբերական մի ձեռնարկության մեջ: Ավելի ուշ (1915 թ.) խմբագրում է «Արև» օրաթերթը:

Դպրոցական տարիներին երևան եկած գրական համեստ շնորհքը նախափորձերի մեջ էլ սպառվեց: Սակայն որպես գրականության ջերմ սիրահար, նա եղավ իր բանաստեղծ ընկերոջ տաղանդը խրախուսողներից և նրա առաջին ժողովածուների տպագրությանն ու տարածմանը եռանդագին սատարողներից մեկը: Ղլտճյանը վկայում է, որ Թումանյանն իր հերթին բարձր էր գնահատում Առաքելյանի ընկերական նվիրվածությունը և իր առաջին գրական քայլերի «իրական պաշտպանությունն ու օժանդակությունը»: «Հնգյակի» մյուս անդամը` Գրիգոր Վանցյանը (1870-1908) Թումանյանից մեկ տարով կրտսեր էր, Ախալքալաքի գավառի Բեժանո գյուղից, նույնպես «ներսիսյանցի», 1890 թ. շրջանավարտ: Ինչպես իր ընկերները, նա ևս տոգորված ժողովրդասիրական գաղափարներով, դպրոցն ավարտելուց հետո նվիրվում է մանկավարժության, և մի քանի տարի գավառի դպրոցներում պաշտոնավարելուց հետո, 1895-ին մեկնում է Գերմանիա` բարձրագույն կրթություն ստանալու: Ընդունվում է Բեռլինի համալսարանի փիլիսոփայության ֆակուլտետը, հաճախում մանկավարժության և բնական գիտությունների դասախոսություններին[40]: Ուսման շրջանն ավարտելուն հազիվ մեկ տարի մնացած, ստիպված է լինում վերադառնալ` Ներսիսյան դպրոցի հոգաբարձության հատ-

[40] ԳԱԹ, Թա, N 996: «Մուրճ», 1898, N 5, էջ 744:

կացրած նպաստը դադարեցվելու պատճառով: Կյանքի վերջին յոթ տարում դասավանդել է հայոց լեզու Թիֆլիսի առաջին առևտրական դպրոցում: Աշխատակցել է «Լումա», «Անահիտ» և հատկապես «Մուրճ» պարբերականներին, մեծ մասամբ հայերենի մշակման խնդիրներին վերաբերող հոդվածներով: «Մուրճ»-ում տպագրել է նաև «Հայ բոշաներ» ազգագրական ուսումնասիրությունը (1892): Հեղինակել է դասագրքեր, այդ թվում՝ «Պատմական քերականություն արևելահայ լեզվի» (1906), «Հայոց պատմություն, ծխական դպրոցների համար» (1906):

Վանցյանի վախճանը ևս ողբերգական եղավ. 1908-ին նա ինքնասպանությամբ վերջ դրեց կյանքին:

Ընկերության հինգերորդ անդամը՝ Սիմեոն (Արսեն) Ղլտճյանը (1868-1944) ալեքսանդրապոլցի էր, Ավետիք Իսահակյանի մորաքրոջ որդին. սովորել է նախ Գևորգյան ճեմարանում (1882-1885), ապա Ներսիսյան դպրոցում (1886-1890): Ուսման ընթացքն ավարտելով, երկու տարի զբաղվում է ուսուցչությամբ, ապա ընդունում է կուսակրոնություն, դառնում վարդապետ, նպատակ ունենալով, ինչպես ինքն է խոստովանել՝ «վարդապետի վեղարի տակ թաքցնել հեղափոխական գործունեություն, որի սուր ծայրն ուղղված էր լինելու դեպի սահմանի այն կողմի Հայաստանը»: Թումանյանը 1893 թ. մայիսի 20-ի նամակում շնորհավորելով նրա «վարդապետանալը», բարեմաղթում է, որ այսուհետև ևս նրան «առաջնորդեն ու ոգևորեն այն փայլուն իդեալները, որ փայփայել է ազատ օրերում» (V, 75): Բանաստեղծն, անշուշտ, ակնարկում էր ժողովրդասիրական, ազգային-ազատագրական շարժման այն գաղափարները, որոնցով տոգորված է եղել «հնգյակի» ընկերական շրջանը: Այդ հայացքների և ըմբոստ բնավորության համար Ղլտճյանը հալածանքի է ենթարկվել Էջմիածնի պահպանողական հոգևորականության կողմից: Բավական առաջացած տարիքում (1906-ին) Ղլտճյանը Գերմանիայում ստացել է բարձրագույն իրավաբանական կրթություն: Նրա աշխատություններից հայտնի են՝ «Միջազգային իրավունք» (համառոտ տեսություններ), 1904, «Հայոց հին իրավունքը» (1913), «Պատմություն Ալեքսանդրապոլի հայոց հոգևոր վիճակային դպրոցի» (1912): Հրատարակել է նյութեր հայոց իրավունքի պատմության, ինչպես՝ «Կանոնք Ներսէսի Բ կաթողիկոսի և Ներշապուհ Մամիկոնէից եպիսկոպոսի» (1902), «Կանոնագիրք հայոց» (1913), «Սմբատ Գունդստաբլ, Դատաստանագիրք» (1918):

Արսեն Ղլտճյանը եղել է Թումանյանի տաղանդը բարձր գնահատող ընկեր-բարեկամներից, որոնք 90-ական թվականներին, իրենց սրտին մոտ ընդունելով բանաստեղծի ապրած ծանր դրաման, ուղիներ են որոնել թեթևացնելու նրա տնտեսական վիճակը և ստեղծելու պայմաններ՝ Ռուսաստանում կամ Եվրոպայում ուսումը շարունակելու, ճանապարհորդելու՝ «աշխարհ տեսնելու» համար: Մտերիմ, սրտակից ընկերների (այդ թվում նաև Ղլտճյանի) ջերմ վերաբերմունքը բարոյական նեցուկ է եղել բանաստեղծի կյանքի ծանր տարիներին:

Ահա' ընկերական այն շրջանը, որի հետ Թումանյանը սերտ շփման մեջ էր 1887-1890 թվականներին: «Հնգյակը» պարբերաբար, մեծ մասամբ շաբաթ օրերը, հավաքվում էր Դավիթ Շահլամյանի մոտ (որ քրոջ բնակարանում իր առանձնասենյակն ուներ), երբեմն նաև գարեջրատան սեղաններից մեկի շուրջը: Շահլամյանի սենյակը, որ «բոլորովին առանձնացած էր քրոջ բնակարանից ու առանձին մուտք ուներ, ինչպես սովորաբար լինում են տան գլխավոր մուտքին շինված սենյակները», Ղլտճյանը համարում է ընկերական այդ շրջանի «վերնատունը»: «Հնգյակի» հավաքույթների «օրակարգը» չէր կանխորոշվում. ընկերների զրույցների առարկան առօրյա կյանքից կամ ընթերցումներից ստացած տպավորություններն էին. պատմում էին դպրոցի անցուդարձից («հնգյակից» չորսը Ներսիսյան դպրոցի սաներ էին): Թումանյանն էլ, որ այնքան վաղաժամ թողել էր աշակերտական նստարանը և կյանք մտել, իր հերթին նկարագրում էր կոնսիստորիայի միջավայրը, ընկերներին հաղորդակից դարձնում իր վրդովմունքներին ու հուզումներին, և կամ գծագրում քահանաների և պաշտոնակիցների երգիծական դիմանկարները՝ հանպատրաստից հորինած էպիգրամներում ու մանրապատումներում: «Հնգյակի» անդամներից յուրաքանչյուրը, որ ներկայացնում էր մի գավառ, պատմում էր «գյուղի ցավերից»: Եվ Թումանյանը նրանց լսելով, «սկսում էր ինքն էլ ավելի գունագեղ ու վշտով համակված պատմել աշխատավոր գյուղացու՝ իր տեսած ու ապրած հառաչանքներից»:

Ռոմանտիկ պատանիների այդ խմբակն, անշուշտ, չէր կարող զերծ մնալ ժողովրդասիրական, ազգային-ազատագրական շարժման գաղափարների ազդեցությունից, որոնցով տոգորված էր ժամանակի երիտասարդությունը:

Իրենց հավաքույթներում քննության նյութ դարձնելով ժողովրդի սոցիալ-տնտեսական և քաղաքական վիճակը, «հնգյակի» անդամները՝

«ջահել ու կրակոտ պատանիներ», գարեջրի բաժակները վերցրած, ժողովրդի մեջ մտնելու և նրա հետ ու նրա համար ապրելու անխախտ խոստումներ են անում, որոշում գնալ գյուղերն ուսուցչության, ժողովրդի մեջ «պատվաստել հեղափոխական ոգի», «ըմբոստության և ընդդիմադրության ոգի»:

Այդ «անխախտ խոստումով» ու երդումով էլ 1890 թ. օգոստոսին «հնգյակի» անդամները միմյանց հրաժեշտ են տալիս:

Արսեն Ղլտճյանի վկայությամբ, «հնգյակի» գաղափարական «զինանոցը» գրքերն էին, հատկապես Պետերբուրգի և Մոսկվայի հայ ուսանողության հրատարակությունները՝ նվիրված բուլղար ժողովրդի ազատագրական պայքարին և նրա հերոսներին («Բուլղար ավազակապետ», «Խունխոր» և այլն), Թումանյանն էլ, որ ինչպես ինքն է գրում, մինչև 18 տարեկան հասակը, քիչ գրքեր էր կարդացել, նվիրվում է ընթերցանության. «...Նա շատ էր կարդում,- պատմում է Ղլտճյանը,- մշտապես գրքեր էր հավաքում, հաճախ օրվա հացի գինը ծախսելով այդ նպատակին»: Ընթերցանությամբ լրացնելով իր կրթության պակասը, բանաստեղծը կենդանի, ոգեշնչող օրինակ էր ծառայում իր ընկերների համար, խրախուսում նրանց, հորդորում կարդալ. «Նա խիստ հետաքրքրված էր, որ մենք կարդանք, գրական պատրաստություն ձեռք բերենք, ուստի և մեզ դրդում էր գիրք և գրականություն կուտակենք, մեր զարգացման համար գրադարան կազմենք: Նրա ներշնչումով ես արդեն գրադարան էի կազմում, որի համար ընտիր գրքերի մատակարարողն Օվանեսն էր...»:

Այդ ժամանակ է, որ «պատահմունքով» Թումանյանի ձեռքն են ընկնում «Հյուսիսափայլ»-ի ամսատետրակները: «Շատ սիրեցի էդ բաց կապույտ, շողարձակ տետրակները և պատանեկան ոգևորությամբ կարդում էի: Առանձնապես դուր էին եկել Կոմս Էմանուելի «Հիշատակարան»-ն ու մյուս գրվածքները, Ս. Նազարյանի խորհրդածություններն ու թարգմանությունները և Սադաթյանի թարգմանած՝ Լերմոնտովի «Դև»-ը:

Էսպես էլ իմ շատ քիչ կարդացած ու սիրած գրքերից մինը եղավ «Հյուսիսափայլ»-ը: Թումանյանն առանձին սիրով ու երախտագիտությամբ է հիշում այդ ամսագիրը, որպես իր պատանեկության հարազատներից մեկին (IV, 337):

1888 թ. ապրիլից, երբ Թումանյանը փոխադրվում է Հովհ. քահ. Մարտիրոսյանի բնակարանը, «հնգյակի» հավաքույթները տեղի են ունենում բանաստեղծի մոտ:

«Հնգյակը» կարևոր դեր է կատարել Թումանյանի գրական կյանքում: Ա. Առաքելյանը պատմում է, որ իրենք, Շահլամյանից տեղեկանալով Թումանյանի ստեղծագործական ձիրքի մասին, նրան հանձնարարում են հաջորդ հավաքույթին հրավիրել նաև պատանի բանաստեղծին: Ընկերները խնդրում են Թումանյանին հրապարակ բերել ոտանավորների «դավթարը», որ նա խնամքով թաքցնելիս է եղել: Բանաստեղծը հրաժարվում է, թե՝ «դատարկ բաներ» են: «Հարկադրում էինք Օվանեսին կարդալ մեզ իր ոտանավորներից,- պատմում է «հնգյակի» անդամներից մեկ ուրիշը՝ Ա. Ղլտճյանը,- նա հաճախ մերժում էր, աշխատում էր խուսափել, բայց մեր ձեռքից չէր պրծնում... Նա շատ էլ ոգևորված չէր իր բանաստեղծություններով... Իրեն համարում էր սովորական ոտանավորներ գրող և ոչ ավելին... Նա, մանավանդ այդ ժամանակներում, շատ քաշվող, միևնույն ժամանակ շատ հպարտ և դյուրազգաց էր: Հպարտ էր՝ իր արժանավորությունը չստորացնելու, չնվաստացնելու համար»: Սակայն, ի վերջո, զիջելով ընկերների համառ պնդումներին, նույն օրն իսկ բերում է «գրելու թղթի թերթերից կարած մի մեծ տետր, մատիտն էլ թելով վրան կապած»: Տետրը ձեռքից ձեռք է անցնում. սկսում են կարդալ: Ըստ Ա. Առաքելյանի, տետրի բովանդակությունը եղել է՝ «Շունն ու Կատուն», «Արև և Լուսին», «Ամառվա գիշերը գյուղում», «Գութանի երգը», «Աղոթք», «Հին օրհնություն», «Մարոն», «Ալեք», «Նահատակ», «Լոռեցի Սաքոն» և այլ, մեկը մյուսից գողտրիկ, ոտանավորներ: «Հնգյակի» մի քանի հավաքույթներում տեղի է ունենում տետրի ընթերցումը: Ունկնդիրները, ծանոթանալով իրենց բանաստեղծ ընկերոջ ստեղծագործություններին, 1889 թ. վերջերին հղանում են դրանք մի առանձին գրքով հրատարակելու միտքը, որ հանդիպում է Թումանյանի դիմադրությանը: Մինչ այդ նա կարևորություն չէր տվել իր գրածներին և բնավ չէր մտածել հրատարակության մասին: Ընկերները, սակայն, Թումանյանի համաձայնությունը մի կերպ ստանալով, սկսում են նյութերի ընտրությունը, հեղինակին վերապահելով, եթե նա այդ անհրաժեշտ գտներ, իրենց պատրաստած ցանկում փոփոխություններ կատարելու իրավունքը: Նրանք, գրքի տպագրության ծախսերը հոգալու համար, հանձն են առնում նաև բաժանորդագրության գործը: Եվ նույնիսկ այդ ժամանակ, երբ բաժանորդագրությունն սկսված էր, Թումանյանն, այնուամենայնիվ, վաղաժամ համարելով իր գրական ասպարեզ իջնելը, աշխատում է ձգձգել գրքի տպագրությունը, թաքցնելով արդեն պատրաստ բաժանորդաթերթիկները:

Բանաստեղծն ինքն է այդ մասին պատմում Ան. Աբովյանին ուղղած 1890 թ. հունիսի 3-ի նամակում. «Մի խումբ երիտասարդների (նկատի ունի «հնգյակի» անդամներին - Ա. Ի.) ամենօրյա դրդումներից և թախանձանքներից ստիպված ու տաքացած՝ «Բանաստեղծություններ»-իս համար բաժանորդաթերթեր տպագրել տվեցի... Բաժանորդաթերթերը տուն բերելով, փակեցի ամուր, անորոշ ժամանակով: Տղերքը գլխի ընկնելով, որ ես նպատակ չունեմ շտապելու, մի օր, մի վեց հոգի[41] հավաքված եկան տուն թափվեցին, թե բաժանորդաթերթերը բեր տեսնենք, ոնց ես տպագրել տվել և այլն. ես զիջա, ցույց տվեցի. ձեռքիցս առնելով, ամեն մեկը մի թերթ առան ու գնացին: Այսպիսով ես ստիպված եմ ակամայից հրատարակել իմ բանաստեղծություններս, եթե կարելի է այսպես ասել... Վերջապես սրանք ինձ ասում են, հավատացնում են, որ ես շատ բանջարեղ (հանճարեղ) բանաստեղծ եմ. մի քանի ուրիշ մարդկանց հավատացրել են, բայց ես չեմ հավատում» (V, 14-15):

Թումանյանի նկարագիրը բնորոշող այդ հատկանիշները՝ ծայրահեղ համեստությունը և խստագույն պատասխանատվության զգացումը դրսևորվել են նաև հետագայում՝ նրա գրական լիակատար հասունության շրջանում, 1902-1903 թթ., երբ ընկերների և գրական բարեկամների դրդումով և ուղղակի ճնշումով միայն տպագրության է պատրաստել իր նոր ժողովածուն:

Ար. Առաքելյանի հուշերի ընթերցողը կարող է այն տպավորությունն ստանալ, թե Թումանյանի բանաստեղծությունների ժողովածուն հրատարակելու առաջարկը «հնգյակի» անդամներն անում են տետրին ծանոթանալուն պես: Այնինչ ժողովածուի հարցը ծագել է միայն 1889 թ. վերջին, իսկ մինչ այդ Թումանյանի՝ «հնգյակի» շրջանը մտնելու ժամանակվանից (1887) նրա գրվածքները պարբերաբար կարդացվել են այդ շրջանի հավաքույթներին և անգամ քննության առարկա դարձել, ինչպես հավաստում է բանաստեղծը՝ «Թե ինչպես իմ «Անբախտ վաճառականները» դարձան американская» հոդվածի սևագրության մի թերթիկում[42]:

Թումանյանի ստեղծագործական կենսագրության համար մի ուշագրավ տեղեկություն է պարունակում այդ վավերագիրը: Անդրադառնալով

---

[41] «Հնգյակ»-ից չորսը՝ Դ. Շահլամյան, Ա. Առաքելյան, Գր. Վանցյան, Արս. Ղլտճյան և, հավանորեն, Ներսիսյան դպրոցում Թումանյանի դասընկերներից ևս երկուսը՝ Մելքոն Ասլիբեգյան և Հակոբ Ստեփանյան:

[42] ՊԲՀ, 1966, N 1, էջ 184:

«հնգյակի» գրական շրջանին («87 թվին ընկա ծանոթների մի շրջան...»), բանաստեղծը ցավով է հիշատակում ընկերների ազդեցությամբ իր խոտորումը նախընտրած ժողովրդական լեզվից ու ոճից. «...Իմ լեզուն գտան գռեհիկ և խորհուրդ տվին ձեռք վերցնել էդ վայրենի բարբառից ու գրական լեզու գործածել: Ճաշակ տալու [և համոզելու համար] ցույց էին տալիս, կարդում էին մեր հին գրաբառ ոտանավորներից: Ես էլ գրականությունից միանգամայն անտեղյակ ու տգետ, մի, գրեթե պատանի, էնքան հավատացի, որ լեզուս փոխեցի, սկսեցի գրել [գրական լեզվով] («Արև ու Լուսին» և այլն), և մինչև անգամ գրաբառ, թեև չգիտեի»[43]: Ընկերների խորհուրդներին ավելանում է նաև նույն այդ ժամանակ «պատահմունքով» ձեռքն ընկած և «պատանեկան ոգևորությամբ» ընթերցած «Յյուսիսափայլ»-ի ազդեցությունը. «Սա հո բոլորովին ծռեց իմ ճամբից,- շարունակում է Թումանյանը,- սկսեցի շինծու լեզվով խորհրդածություններ անել ազգի վիճակի վրա, գործածել՝ գետնաքարշ, գիշերատեսիլ և այլ բառեր, որ Նալբանդյանն ու Նազարյանը գործ էին ածում իրենց կռիվների մեջ...»: Թումանյանն, ինչպես ինքն է պատմում նույն տեղում, այնուհետև ընկնում է «մեր ինտելիգենտների շրջանը» (հավանորեն նկատի ունի «Մուրճ»-ի շրջանը), ուր հորդորում են, որ «բանաստեղծը պետք է հասարակության ցավերով ապրի, քաղաքացի լինի, և այլն, և գրի ահա էս ու էն...»: «Էս տպավորության տակ էլ,- խոստովանում է Թումանյանը,- մի քանի ոտանավորներ շինեցի,- միշտ անհաջող»[44]:

«Յնգյակի» «գեղագիտական» հայացքներին լիովին համապատասխանում էր նույն այդ ժամանակ (1889 թ.) «Շունն ու Կատուն» լեգենդին Ավ. Արասխանյանի տված գնահատականը: Երբ բանաստեղծը իր այդ երկը ներկայացնում է «Մուրճ»-ի խմբագրին, վերջինս շատ է զարմանում. «Ասացեք խնդրեմ՝ Շուն ու կատո՞ւ և բանաստեղծություն. սրանք ի՞նչ կապ ունեն իրար հետ, էն էլ էս տեսակ վայրենի լեզվով...» (V, 415):

---

[43] Գրաբարով գրված այդ երկերից մեկը՝ «Աւանդութիւն» խորագրով (անավարտ) պահպանվել է բանաստեղծի թղթերում (ԳԱԹ, Թա, N 16): Ինքնագրի վերջում նշված է հորինման ժամանակը՝ «1887 թվականից»: Ամենայն հավանականությամբ, գրաբարով սկսված այդ երկի բովանդակությունը լինելու էր XII դարում նահատակված իշխան Գրիգոր Մամիկոնյանի և նրա քույր Խորիշահի մասին հյուսված ավանդությունը, որին էլ նվիրված է նույն 1887 թ. «Նոր դար»-ում տպագրված Թումանյանի առաջին հոդվածը (ՅՍՍՅ ԳԱ Տեղեկագիր (հասարակական գիտ.), 1963, N 12, էջ 69-73):

[44] ՊԲՅ, 1966, N 1, էջ 184: Տե'ս նաև ինքնագիրը՝ ԹԸԱ:

Երբեմնի իր ուսուցչի՝ Ստրասբուրգի համալսարանում բարձրագույն կրթություն ստացած, բազմաթիվ հրապարակական դասախոսություններով հռչակված և նոր ծրագրերով ու խոստումներով հրատարակվող գրական լուրջ ամսագրի խմբագրի հեղինակավոր խոսքը ճնշող տպավորություն է թողնում իր գեղագիտական հայացքներում դեռևս չամրապնդված քսանամյա բանաստեղծի վրա: Արասխանյանի կարծիքը հաշվի առնելով է, որ Թումանյանը «Շունն ու Կատուն» չի զետեղում իր բանաստեղծությունների առաջին (1890) ժողովածուի մեջ. ավելին՝ նա փորձում է լեգենդը հիմնովին վերամշակել, ինչպես այդ երևում է բանաստեղծի թղթերում պահվող սևագրությունից[45]: Սակայն վերամշակումը վախճանին չի հասցնում, և 1892 թ. «Բանաստեղծություններ»-ի երկրորդ գրքում տպագրելուց հետո, բավականանում է միայն բարբառը մեղմելով:

Իր գրական ուղղությանը խորթ այդ խորհուրդներն ու կարծիքները հիշելով, այլև ակնարկելով «շատ ու շատ ուրիշ ծախորդ հանգամանքներ», Թումանյանը զարմանք է հայտնում, խոսքն ուղղելով իրեն, թե «հապա ինչպե՞ս դուրս եկար էդ բոլորի միջից, այնուամենայնիվ քո պատկերով»: Նա այդ վերագրում է իր բնազդին, որ համարում է իր «ճշմարիտ, ուղիղ և հզոր առաջնորդը»[46]:

Անշուշտ, «բնազդը»՝ ինտուիցիան որոշ դեր կատարել է, եթե դրա տակ նկատի ունենանք բանարվեստի «տարերային գեղագիտությունը»՝ ժողովրդի գեղարվեստական մտածողության այն եղանակը, որով ստեղծված են Թումանյանի մանկության և պատանեկության տարիների հոգևոր սնունդը կազմող լեգենդներն ու հեքիաթները: Հետզհետե, բանաստեղծի գրական հասունացման ընթացքում, այդ «բնազդը» դառնում է գեղագիտական սկզբունք ու հավատամք:

6

Բանաստեղծությունների առաջին ժողովածուի տպագրության պատրաստումը տևում է շուրջ երկու ամիս (մայիս և հունիս): 1890 թ. հուլիսի 6-ի նամակում բանաստեղծը Ան. Աբովյանին տեղեկացնում է, թե «իմ տետրակն արդեն ուղարկված է Մոսկվա» (V, 17): Գիրքը Մոսկվայում և ոչ թե Թիֆլիսում տպագրելու հանգամանքը պայմանավորված էր, ինչ-

---

[45] Թ I, 289-290: «Շունն ու Կատուն» լեգենդի վերամշակման այդ փորձը, ամենայն հավանականությամբ, կատարվել է կոնսիստորիայում 1889-1890 թթ.:
[46] ՊԲՀ, 1966, N 1, էջ 184:

պես երևում է Ա. Առաքելյանի հուշերից, Կովկասի գրաքննության հարուցած արգելքներով (հայտնի է, որ այդ շրջանում Կովկասի գրաքննությունն ավելի խիստ է եղել, քան Պետերբուրգինը): Դժբախտաբար, այդ մասին մենք այլ տվյալներ չունենք, և մնում է անհայտ, թե որո՛նք են եղել Թիֆլիսի գրաքննիչի առարկությունները, և հատկապես ո՛ր բանաստեղծությունների նկատմամբ: Աչքի առաջ ունենալով 90-ական թվականներին Կովկասի գրաքննության արգելած երկերի բնույթը, կարելի է հավանական համարել, որ, ըստ երևույթին, տպագրական խոսքի ցերբերների ուշադրությանն արժանացած բանաստեղծությունները կարող էին լինել՝ «Այդ ի՞նչ սրտամաշ տխրություն է քեզ...», «Երանություն էր խոստացել հույս ինձ...» և «Զարամիտներին», որոնցում բանաստեղծն առավել բացորոշ է արտահայտել իր դժգոհությունն իրականությունից և բողոքը ներքին ու արտաքին հարստահարիչների դեմ, և մինչև իսկ հնչեցրել է պայքարի կոչ՝ կործանելու «վատշվեր, դաժան ներկան»՝ հանուն «փառավոր ապագայի» («Երանություն էր խոստացել հույս ինձ...»).

Յառա՞ջ կռվելով, և կըգա մի օր,  
Որ կընկնի ներկան վատշվեր, դաժան,  
Նրա ավերի վերա փառավոր  
Ապագան լուսո կըկանգնի նշան (I, 21):

Անկասկած է, որ պաշտոնական գրաքննության, ինչպես և նրա ճնշման տակ հեղինակի իսկ ձեռքով «վտանգավոր» երկերի ոչնչացումը կամ մասնակի աղճատումները («ինքնագրաքննություն») գրականության պատմագրին զրկում են տվյալ գրողի ստեղծագործական դիմանկարը անաղարտ ու ամբողջական ներկայացնելու հնարավորությունից: «Ինքնագրաքննության» մի այլ տեսակն էլ հանգել է նրան, որ հեղինակը ուղղակի խուսափել է գրի առնելու այն, ինչը անխուսափելիորեն ենթարկվելու էր գրական ցերբերների հոշոտմանը. «ինքնագրաքննության» այդ տեսակն է ակնարկել Թումանյանն իր ծննդյան հիսնամյա հոբելյանին՝ մատաղ սերնդին ուղղած խոսքի մեջ. «Մեր էն լավ խոսքերը անգրիլ մնացին, չասվեցին: Ցենզուրան և արյունը թույլ չէին տալիս» (IV, 468):

Երջանիկ պատահականությամբ պահպանվել է մի մասը այն նշանավոր տետրի, որ ընթերցվել է «հնգյակի» հավաքույթներին, և որից Թումանյանը կազմել է 1890 և 1892 թթ. Մոսկվայում տպագրված ժողովածուները: Վերջիններս լույս տեսնելուց հետո, բանաստեղծը, հավանորեն,

տետրի գոյությունն այլևս ավելորդ համարելով, պատռել է այն: Տետրի պահպանված մասը (ԹԸԱ) գրեթե մեջտեղից` հորիզոնական գծով կիսված լինելով, ոչնչացումից ազատվել են միայն առանձին քառատողեր` մեզ հայտնի պոեմներից և բանաստեղծություններից: Դրանցից մի քանիսն ուշագրավ են որպես տարբերակներ:

Բոլոր նշաններից երևում է, որ տետրում տեղ գտած երկերը հետագայում (մոսկովյան ժողովածուները տպագրության պատրաստելիս) ենթարկվել են էական կամ մասնակի փոփոխությունների:

Երիտասարդ Թումանյանի աշխարհայացքի որոշ կողմերը, նրա գեղագիտական ըմբռնումները լուսաբանելու տեսակետից հատկապես նշանակալի են «Գութանի երգը» բանաստեղծության երկու, ցարդ անծանոթ քառատողերը.

...Մեր պապերն էլ ունեին թագ,
Սուր ունեին ձեռքներին,
Նրանց թոռները ոտնատակ,
Ա՛յ, հասել են այս օրին...

Է՛լ աշխատանք, հավատ, հույս, սեր,
Է՛լ մեր դառը քրտինքը,
Շատ են կոտրել այդպես սրեր,
Ողորմած է երկինքը:

Տարբեր է եղել նաև խորագիրը` «Հայ երկրագործի երգը»: Սա, անկասկած, «Գութանի երգը» բանաստեղծության առաջին տարբերակն է, որ վերամշակելով, 1891 թ. տպագրել է «Մուրճ» ամսագրում (N 4): Հետագայի փոփոխությունները մասնակի բնույթ ունեն:

«Գութանի երգ»-ի առաջին տարբերակի պահպանված երկու տունը հետաքրքրական են նրանով, որ բանաստեղծը անդրադարձել է հայրենիքի քաղաքական վիճակին: Առաջին քառատողում հավաստվում է այն իրողությունը, որ անցյալում ունեցել ենք ինքնուրույն պետականություն («թագ»), ռազմական ուժ («սուր»), իսկ այժմ դրանցից զրկվելով, եղել ենք ոտնատակ, մի մոտիվ, որ իշխող էր ժամանակի և նախորդ տասնամյակների հայ պոեզիայում: Երկրորդ քառատողը, որ առաջինի անտիթեզն է, բովանդակում է բանաստեղծության հիմնական գաղափարը, ոգին. ռազմական ուժը ենթակա է խորտակման, միակ հույսն ու ապավենը աշխատանքն է, «դառը քրտինքը»: Այստեղ արտահայտվել է հայ ժողովրդի կեն-

սափիլիսոփայությունը, որ խտացված է «Աշխարքի շեն վեր գուքնին է» առածի մեջ[47]: (Չմմտ. Իսահակյանի «Չորս գութանը» պատմվածքը, որ ժողովրդական այդ իմաստության գեղարվեստական մարմնավորումն է)[48]:

Թումանյանը հետագայում հրաժարվել է այս քառատողերից, հավանորեն նկատի ունենալով, որ քաղաքական մոտիվը աններդաշնակություն է մտցնում ժողովրդական գութաներգերի ավանդական ձևի մեջ, որին հարազատ մնալը բխում էր բանաստեղծի գեղագիտական սկզբունքներից:

1890 թ. ամառը «հնգյակը» ցրվում է. նրա անդամները, հավատարիմ իրենց ժողովրդասիրական իդեալներին, մեկնում են գավառները՝ ուսուցչության. Դավիթ Շահլամյանը՝ Դսեղ, Արամ Առաքելյանը՝ Ախալցխա, Գրիգոր Վանցյանը՝ Ախալքալաք, Արսեն Ղլտճյանը՝ Շիրակ: Յուրաքանչյուրն իր պաշտոնավայրում կազմակերպում է Թումանյանի ժողովածուի բաժանորդագրության գործը, նամակագրական կապ պահպանելով բանաստեղծի հետ: Սակայն, ինչպես երևում է, բաժանորդագրության արդյունքը մեծ չի լինում, և գրքի տպագրության ծախսը ծածկելու համար օգնության են հասնում դարձյալ ընկերները (հավանորեն՝ հենց «հնգյակի» անդամները), «չեղած տեղից ստեղծում մի գումար», որ Թումանյանը գրքի տպագրությունից հետո վերադարձնում է (V, 35):

Նույն 1890 թ. օգոստոսի 17-ին Պետերբուրգի գրաքննությունը տպագրության է թույլատրում Թումանյանի բանաստեղծությունների առաջին ժողովածուն, որը և լույս է տեսնում սեպտեմբերի վերջին, 1200 օր. տպաքանակով (հոկտեմբերի 4-ին բանաստեղծն ստանում է իր գրքի առաջին օրինակները):

Ժողովածուի հրատարակությունից մի փոքր առաջ «Աղբյուր» մանկական ամսագրի օգոստոս-սեպտեմբեր ամիսների միացյալ համարում (N 8-9) տպագրվում է «Արև և Լուսին» լեգենդը, որ Թումանյանի առաջին տպագիր գեղարվեստական երկն է:

Այս լեգենդի տպագրության պատմությունը կապված է Ղազարոս Աղայանի՝ հետագայում Թումանյանի ամենամտերիմ բարեկամի անվան հետ:

Բանաստեղծը 1890 թ. հուլիսի 29-ի նամակում Ան. Աբովյանին պատմում է, թե նույն օրը Ղ. Աղայանը (Սարգիս քհ. Բեգնազարյանի հետ)

---

[47] **Ա. Տ. Ղանալանյան,** Հայկական առածանի, 1951, էջ 21:
[48] **Ավ. Իսահակյան,** Երկեր, հատ. III, 1959, էջ 47-49:

այցելության գալով, և ծանոթանալով իր մի շարք գրվածքներին, հատկապես հավանում է «Արև և Լուսին»-ը և պատվիրում, որ տանի «Աղբյուրի» խմբագրություն. «Ես ասացի արդեն ուշ է,- շարունակում է Թումանյանը,- նա կրկին պահանջեց. գուցե տանեմ» (V, 20): («Արդեն ուշ է» ասելով, հավանորեն, նկատի ուներ, որ հիշյալ լեգենդը առաջին ժողովածուի մեջ մտնող մյուս երկերի հետ արդեն ուղարկել էր Մոսկվա՝ տպագրության): Սակայն, դա, ըստ երևույթին, սոսկ պատրվակ էր. «Արև և Լուսին»-ը իր հաջողված գործերից չհամարելով, նա Աղայանի պատվերը չի կատարում: Ըստ Արամ Առաքելյանի, լեգենդը տպագրելու նախաձեռնողները եղել են ինքը և Գր. Վանցյանը. իրենք են այդ երկի հեղինակային ընդօրինակությունը տարել Ղ. Աղայանին և խնդրել «Տարազ»-ի (իմա՝ «Աղբյուր»-ի) մոտակա համարում տպագրել: «...Աղայանցը կարդալով «Արև ու Լուսին» ոտանավորը, շատ հավանեց, հարց ու փորձ արեց նրա (հեղինակի - Ա. Ի.) որտեղացի և ով լինելու մասին ու խոստացավ մեր խնդիրն անպատճառ կատարել»[49]:

Օգոստոսի 27-ի նամակում Թումանյանն Ան. Աբովյանին տեղեկացնում է «Արև և Լուսին»-ի տպագրվելու մասին. «Աղբյուր»-ի այս համարումը տպված է Աղայանցի ուզած բանաստեղծությունը... Սրա-նրա մոտ այնքան է գովել, որ խալխը հենց գիտեն Բայրոնի ազգականն եմ: Մի քանի տողում, չգիտեմ ի՞նչ իրավունքով կամ ինչո՞ւ փոփոխություններ է արել. ետ առաջ դրել. երկու տող էլ հանել է...» (V, 22):

Թումանյանի դժգոհությունն իր այդ լեգենդից՝ հիմնավոր էր: «Արև և Լուսին»-ը նա գրել էր, ինչպես խոստովանել է ինքը, հակառակ իր գեղարվեստական «բնազդի», անսալով ընկերների խորհրդին՝ «ձեռք վերցնել էդ վայրենի բարբառից ու գրական լեզու գործածել»[50]: Այդ էլ բանաստեղծը համարել է իր լեգենդի անհաջողության պատճառը:

---

[49] Ըստ հուշագրողի վերջին տողերի, Աղայանն այդ ժամանակ դեռևս ծանոթ չի եղել Թումանյանին («հարց ու փորձ արեց նրա որտեղացի և ով լինելու մասին»), մինչդեռ նրանք ոչ միայն ծանոթներ էին, այլև բավական մտերմացել էին և այցելում էին միմյանց, ինչպես երևում է Թումանյանի 1890 թ. հուլիսի 29-ի նամակից: Ա. Առաքելյանն իր հուշերը նախապես տպագրել է Բաքվի «Կոմունիստ» թերթի 1923 թ. N 39-ում, ուր շփոթված են մի քանի փաստեր, այդ թվում նաև «Արև և Լուսին» լեգենդի տպագրության ժամանակն ու տեղը: Ըստ Առաքելյանի, այդ լեգենդը տպագրվել է Աղայանի «խրախուսական» հոդվածով: Այս ևս թյուրիմացության արդյունք է. Աղայանի հոդվածը՝ «Յովհ. Թումանյանի «Անուշ»-ից մի ճաշակ» լույս է տեսել Թումանյանի բանաստեղծությունների երկրորդ հատորի առթիվ, 1893 թ. «Մուրճ»-ում (N 3, էջ 457-460):
[50] ՊԲՅ, 1966, N 1, էջ 184:

Ավելի ուշ, 1916 թ. օգոստոսի 24-ին Ց. Խանզադյանին ուղղած նամակում Թումանյանը գրում է. «Լավ եմ հիշում, 1887 թվականի ամառը (կարծեմ օգոստոսին) արևի խավարում եղավ, էդ մասին գրեցին, խոսեցին: Չենց այդ օրերում ես էլ «Արևն ու Լուսին»-ը գրեցի[51], որ անպայման անհաջող է դուրս եկել: Դրա համար էլ «Արևն ու Լուսին»-ը մնացել է առաջին հրատարակության մեջ» (V, 417):

Թումանյանը դժգոհ էր նաև այն փոփոխություններից, որ Աղայանը կատարել էր լեգենդը տպագրելիս. այդ մասին որոշակի արտահայտվել է Ան. Աբովյանին հասցեագրած 1890 թ. սեպտեմբերի 28-ի նամակում. «Չգիտեմ, կարդացիր «Աղբյուր»-ում տպած բանաստեղծությունս (որի մասին գրել եմ) (նկատի ունի օգոստոսի 27-ի նամակը - Ա. Ի.). այդ բանաստեղծությունը գովեստներ կուտակեց գլխիս. սակայն Աղայանցը բավականին փչացրել էր. չգիտեմ դա ինչո՛ւ է միշտ իրան օրենքներով ուրիշի վանքը մտնում» (V, 25): Աղայանի կատարած փոփոխությունները հանգում են առաջին ժողովածուի (1890) տեքստի և «Աղբյուր»-ում տպագրվածի այն տարբերություններին, որ ցույց է տրված Թումանյանի երկերի գիտական հրատարակության առաջին հատորի ծանոթագրություններում (էջ 681-682): Ընդ որում, դրանք (Աղայանի փոփոխությունները) լեզվա-ոճական բնույթի լինելով, չեն փոխել, սակայն, երկի գեղարվեստական որակը[52]:

7

Թումանյանի առաջին ժողովածուին, դեռ նախքան նրա լույս տեսնելը, ծանոթ էին ո՛չ միայն Ներսիսյան դպրոցի մի խումբ սաները (բացի «հնգյակի» անդամներից), այլև Թիֆլիսի հայ մտավորականության մի քանի ականավոր ներկայացուցիչներ, այդ թվում գրական նահապետներ Պերճ Պռոշյանն ու Ղազարոս Աղայանը, ժամանակի ականավոր մանկավարժներից Սարգիս քահ. Բեգնազարյանը[53] և ուրիշներ: Վերջինս նույ-

---

[51] Արևի խավարումը տեղի է ունեցել նույն թվականի օգոստոսի 7-ին (տե՛ս «Մշակ», 1887, N 88), հետևաբար, ավանդությունը կարող է գրված լինել օգոստոսի 7-10-ը, կամ առավելը՝ մինչև 15-ը:

[52] «Արև և Լուսին» լեգենդի ինքնագիր-սևագրի մի պատառիկը (սկիզբը) պահվում է Թումանյանի ընտանիքի արխիվում:

[53] Սարգիս Բեգնազարյանցին (1849-1894) Ղ. Աղայանը համարում է «մեր հողում առաջին անգամ ոտք դնող մասնագետ մանկավարժը» (Երկերի ժողովածու, հ. IV, 1963, էջ 469): Բեգնազարյանցն ավարտել է Ներսիսյան դպրոցը, ապա Կյուսնախտի (Շվեյցարիա) համալսարանի մանկավարժական ֆակուլտետը: Եղել է ուսուցիչ և

նիսկ գովասանական ճառ է ասել Թումանյանի առաջին գրքի մասին, ինչպես հիշել է բանաստեղծը 1919 թ. հունվարի 27-ի իր զրույցի ժամանակ (ՅԶ): Թումանյանի երկերը ընդօրինակվելով անցնում էին ձեռքից ձեռք, տարածելով երիտասարդ բանաստեղծի համբավը. «Այն շրջանում, ուր մուտք են գործել բանաստեղծություններս,- գրում է Թումանյանը Ան. Աբովյանին 1890 թ. սեպտեմբերի 28-ի նամակում,- մի տեսակ համակրանք և հարգանք եմ նկատում դեպի ինձ...» (V, 25):

Առավել նշանակալի է, որ հայ դեմոկրատիայի երկու ավագները (Պռոշյանը և Աղայանը) հանդիսանում են Թումանյանի գրական առաջին քայլերի ջերմ խրախուսողները:

Չնայած «Լոռեցի Սաքոյի» մասին ունեցած իր հիմնավոր առարկություններին, Աղայանը բարձր է գնահատել Թումանյանի տաղանդը և, տպագրելով նրա առաջին գեղարվեստական երկը, դարձել է երիտասարդ բանաստեղծի գրական «կնքահայրը»:

Պռոշյանի ու Աղայանի հետ Թումանյանի ծանոթության սկիզբը և հանգամանքները ստույգ հայտնի չեն[54]: Բանաստեղծը նրանց անունները առաջին անգամ հիշում է Ան. Աբովյանին հղած 1890 թ. հուլիսի 29-ի նամակում, «Լոռեցի Սաքո»-ի կապակցությամբ, ուր, ի հակակշիռ Աղայանի քննադատության, վկայակոչում է Պռոշյանի դրվատիքը՝ արտահայտված «հրաշալի է» և այլ խոսքերով (V, 20):

Յետաքրքրական է, որ նույն օրը, երբ «Մշակ»-ում Ազ-Լերը (Խաչ. Մալումյանը) իր հերթական «Ակնարկներ»-ում Թումանյանին արհամարհանքով դասել էր «սունկի պես բսնող» բանաստեղծների կարգը, բանաստեղծն այցելում է Պռոշյանին: Ինչպես կարելի է եզրակացնել Արսեն Ղլտճյանին հղած նույն թվականի դեկտեմբերի 25-ի նամակից՝ ծերունազարդ վիպասանն ինքն էր երիտասարդ բանաստեղծին իր մոտ հրավիրել՝ մխիթարելու համար (V, 38): Այդ երեկո Պռոշյանը նրան ընծայում է իր նոր վեպը («Բղդեն»), դատապարտում է «Մշակ»-ի վերաբերմունքը, մեծ դրվատանքով արտահայտվում Թումանյանի մասին, բանաստեղծի

---

տեսուչ Ալեքսանդրապոլի, Երևանի և Թիֆլիսի հայկական դպրոցներում: Նորագույն մանկավարժության հիմունքների մասին հոդվածներ է տպագրել պարբերական մամուլում, մասնավորապես «Վարժարան» և «Աղբյուր» ամսագրերում:

[54] Ինչպես Աղայանի, այնպես էլ Պռոշյանի հետ Թումանյանը ծանոթացել է, հավանորեն, «Մուրճ»-ի խմբագրատանը, ուր նա (Պռոշյանը), ինչպես հավաստում է վիպասանն ինքը, եղել է ամսագրի խմբագրության անդամ և աշխատակից (**Պ. Պռոշյան,** Երկերի ժողովածու, հ. VII, 1964, էջ 503):

խոսքով՝ «դարձյալ բարձրացնում Վոլիմպոսի գագաթը» (V, 37): («Դարձյալ»-ը հիմք է տալիս կարծելու, որ մինչ այդ էլ նա դրվատանքի խոսք ասած է եղել):

Թումանյանի ժողովածուի մասին դրական կարծիք են հայտնում իր տասնամյա գրական գործունեությամբ արդեն ճանաչված Շիրվանզադեն և Գևորգյան ճեմարանի սան, ընթերցող հասարակությանը տակավին անծանոթ Ավետիք Իսահակյանը:

Շիրվանզադեն, 1891 թ. փետրվարի սկզբներին, մի համերգում հանդիպելով Թումանյանին, երկար զրույց է ունենում նրա բանաստեղծությունների մասին և խոստանում «Արձագանք»-ի մարտ ամսվա համարում մի ընդարձակ հոդված նվիրել նրան և Հովհաննիսյանին (V, 42-43): (Ինչինչ պատճառներով այդ ժամանակ Շիրվանզադեն իր խոստումը չի կատարում. ավելի ուշ, 1896-ին «Արձագանք»-ում նա գրախոսում է «Շիլինի կալանավորի» Թումանյանի թարգմանությունը և «Լոռեցի Սաքոն» պոեմի առանձին հրատարակությունը):

Դեռ մինչև Թումանյանի հետ անձամբ ծանոթանալը, Իսահակյանը գիտեր նրան որպես բանաստեղծի, կարդացել էր նրա տպագրված երկերը: Ավելին. Իսահակյանը իր մորաքրոջ որդի Արսեն Ղլտճյանի միջոցով եղել էր Թումանյանի բանաստեղծությունների առաջին և երկրորդ հատորների բաժանորդը և տարածողը Գևորգյան ճեմարանի սաների մեջ: Սիմեոն (Արսեն) Ղլտճյանը 1890 թ. հոկտեմբերի 1-ին Արգինայից գրած նամակում Թումանյանին հայտնում է, թե ուղարկում է բաժանորդաթերթը (առաջին հատորի) և պատվիրում է վեց օրինակ ուղարկել էջմիածին՝ տիկին Տիրուհի Կոստանյանին (բանասեր-հայագետ Կարապետ Կոստանյանի կնոջը), որը չորս օրինակն հանձնելու է Իսահակյանցին (ԹԸԱ): 1892 թ. մարտի սկզբներին Ղլտճյանը Իսահակյանին գրում է. «Թումանյանը կուղարկե քեզ վրա իր «Բանաստեղծություններ»-ի երկրորդ հատորի բաժանորդաթերթը. բաժանորդներ կգտնես. այս հատորը թե' բովանդակության որակի և թե' քանակի կողմից կրկնակի արժեք ունի առաջին հատորի վերաբերմամբ. հարկավոր է նրան օգնել. նա մյուս շատ բանաստեղծներից չէ. նա բոլորովին այլ ոգով և նոր, ինքնուրույն ուղղությամբ է գրում. խոսքս պոեմաների մասին է:

Նեղությունը հանձն առ և կատարիր. այդ ես խնդրում եմ քեզանից...» (ԹԸԱ):

Նույն թվականի աշնանը Իսահակյանը գալիս է Թիֆլիս, ուր և, Կովկասի հայոց հրատարակչական ընկերության գրասենյակում տեղի է ունենում նրա ծանոթությունը Թումանյանի հետ: Տեղեկացնելով բաժանորդագրության արդյունքների մասին, Իսահակյանն իր հիացմունքն է հայտնում նրա բանաստեղծությունների նկատմամբ և նույնիսկ հավանածներից մի քանիսն էլ արտասանում, որ երիտասարդ հեղինակին, բնականաբար, գոհունակություն է պատճառում: Թումանյանը փոխադարձաբար հետաքրքրվում է Իսահակյանի գրածներով և ցանկություն հայտնում ծանոթանալ դրանց հետ[55]: Այդպիսով սկսվում է երկու ականավոր բանաստեղծների բարեկամությունը, որը 90-ական թվականների վերջերից վերաճում է սրտագին մտերմության: «Այդ տարիներին (1892-1893 թթ. - Ա. Ի.) ահա աննկատելի, բայց շատ բնական կերպով սկսվեց և հետզհետե ամրացավ Ավ. Իսահակյանի մտերմությունը նրա հետ,- հավաստում է Ստեփան Լիսիցյանն իր հուշերում:- Ընդհանուր շատ բան կար նրանց մեջ. երկուսի ներշնչման աղբյուրն էլ ժողովրդական բանահյուսությունն էր, և մեկը մյուսին կարծես լրացնում էր.- Եթե մեկը գերազանցորեն վիպասան էր՝ էպիկ, մյուսը գերազանցորեն՝ քնարերգու-լիրիկ: Եթե մեկը գերազանցորեն ստեղծում էր ժողովրդական պատկերներ, մյուսը միաձուլվում էր ժողովրդական զգացմունքների հետ»:

Թումանյանի ժողովածուն արժանանում է համալսարանական ուսանողության և միջնակարգ դպրոցների բարձր դասարանների աշակերտության առանձնահատուկ ջերմ ընդունելությանը:

Ինչպես երևում է բանաստեղծի 1890 թ. հուլիսի 29-ի՝ Ան. Աբովյանին հասցեագրած նամակից, ժողովածուի մեջ զետեղված նրա երկերին, դեռևս անտիպ վիճակում, ծանոթ են եղել նաև մի քանի ուսանողներ, որոնց կարծիքն է վկայակոչում Թումանյանը Սաքոյի խելագարության հոգեբանական հիմքի շուրջը Աղայանի հետ վիճելիս (V, 20): Գիրքը լույս ընծայելու վերաբերյալ դեռևս գրաքննության թույլտվությունը չստացած, Թումանյանի ժողովածուն դառնում է Մոսկվայի հայ ուսանողության ուշադրության առարկան: Ներսիսյան դպրոցի շրջանավարտ Բագրատ Թումանյանը 1890 թ. հոկտեմբերի 3-ին Մոսկվայից բանաստեղծին հաղորդում է ուսանողության ոգևորության մասին. «Հովհաննես ջան, շնորհավորում եմ քեզ իբրև «առաջին բանաստեղծի»,- գրում է նա,- քո վեհ

[55] **Ավ. Իսահակյան,** Երկեր, հ. IV, 1959, էջ 63-64:

մտքերով, որ միանգամայն ապշեցրել ես այստեղի ուսանողությանը... Գրքույկդ դուրս է եկել և ցենզուրի մոտեն մեկ օրինակ Բարխուդարյանցը տվել էր այստեղի իրավաբանական մասն ավարտած մեկ երիտասարդի՝ Աստվածատուրյանց ազգանունով... Նա սկսեց կարդալ քո «Նախատա- կը» և գիտես՝ ինչպես ոգևորված, անկեղծ եմ ասում, ուզում էր գրքի թեր- թերը ուտել. կարդաց և մի քանի այլ ոտանավորներ նույն ոգևորութ- յամբ... Սկսեց ինձանից քո մասին հարցնել... Նա ինձ ասաց.- Եթե այս- տեղ լինի, ես նորան կերկրպագեմ: Այդ ժամանակ մտան և մի քանի ուսանողներ, ի միջի այլոց և «Մուրճ» ամսագրի աշխատակից Հովհան- նիսյան Տիգրանը. նա նոցա մոտ էլ կարդաց նույն ոգևորությամբ. նոքա ապշած մնացին, թե այդպիսի վեհ մտքեր որտեղից է մի երիտասարդի մեջ... Քեզ, քո վեհ մտքերով, բարձր են դասում բոլոր բանաստեղծներից: Բոլոր ուսանողները հափշտակված են քո բանաստեղծություններով»[56]:

Հոկտեմբերի վերջերին Մոսկվայի հայ ուսանողության գրական ըն- կերության հավաքույթում Միք. Աստվածատրյանը դասախոսություն է կարդում Թումանյանի ժողովածուի մասին[57]:

Նույն թվականի նոյեմբերի 10-ի նամակում Բ. Թումանյանը թվար- կում է ուսանողության կողմից առավել հավանություն գտած երկերը, ինչպես և հաղորդում եղած առարկությունները, հատկապես «Լոռեցի Սաքո»-ի վերաբերյալ. «Սաքոյի» համար ասում են, թե այդպես շուտով չէր կարող խելագարվել և այլն: Բայց «Ալեք»-ի և «Մեհրու» վրա հափշ- տակված են, մանավանդ բանաստեղծություններից՝ «Մարգարե», «Շա- տերի նման...», «Գիշերվա աստղի դիմաց» <«Գիշերային առաջին աստ- ղի դիմաց»>, «Չարամիտներին», «Երանություն էր խոստացել հույս ինձ...», «Ի՞նչ ես կատաղել...».- հափշտակված են թե վեհ մտքերի և թե գեղարվեստականության վրա»[58]: Ուշադրություն է գրավում, որ ուսանո-

[56] ԳԱԹ, Թա, N 643:
[57] Նույն տեղը: Միք. Աստվածատրյանը այդ ժամանակ իրավաբանության ուսանող էր Մոսկվայի համալսարանում: Հետագայում Թիֆլիսում եղել է փաստաբան:
[58] ԳԱԹ, Թա, N 645: Հաջորդ նամակում կրկին հիշելով ուսանողների դիտողություն- ները «Լոռեցի Սաքոյի» մասին, Բ. Թումանյանն ավելացնում է, որ ինքն այդ առթիվ նրանց հետ «երկար ժամեր» վիճել է. «...Նոցա բացատրել եմ գյուղացու հոգեկան դրությունը, նորա նախապաշարմանց մեծությունը... Երբ ես այդ բանը կարդացի, դա կարծես ինձ ծանոթ թվաց, կարծես այդ բանը մեր կողմը պատահել էր... Թե' իմ տա- տիս պատմածները և թե' զանազան հանգամանքներում ինձ հետ եղած պատահար- ները, բոլորը այստեղ պարզ նկարած է» (ԳԱԹ, Թա, N 646):

դության հավանությանն են արժանացել Թումանյանի քաղաքացիական պոեզիայի առավել ցայտուն նմուշներ, որոնց մեջ երիտասարդ բանաստեղծը բուռն ցասումով ու կրքով ծառանում է իրականության դեմ, սոցիալական չարիքի դեմ, «հրեղեն խոսքով» խարանում է «արդար զորեղներին»՝ հոգևոր և աշխարհիկ տերերին, «բանտի, խավարի սպասավորներին», «գաղտնի զենքերով» մարդկանց սպանող «մեծ բարերարին», «անարատության վերարկու հագած» հոգևորականին, որի զազիր գործերին խնկարկու է խավարասեր ամբոխը, մամուլի ներկայացուցիչներին՝ այդ «անսիրտ մարդ-հրեշներին», որոնք հանդես են գալիս «մարդոց մտքերի առաջնորդների» դերում, բայց իրականում անձնավորում են «բռնավորների (իմա բռնակալների) բանականությունը»: Եվ այս ամենը սնուցող իրականության դեմ բանաստեղծը պայքարի է կոչում, այն հաստատ հավատով, որ «վատշվեր, դաժան» ներկան անխուսափելիորեն պիտի կործանվի և նրա ավերակների վրա պիտի բարձրանա «փառավոր ապագան»:

Այս բանաստեղծությունները ցայտուն կերպով բնութագրում են ոչ միայն դրանք ստեղծող հեղինակի, այլև դրանցով ոգեշնչված ուսանողների աշխարհայացքի հիմնական ուղղությունը, հասարակական իդեալը: Դրանք, ի վերջո, անդրադարձնում են գաղափարական այն մթնոլորտը, որով, 80-ական թվականների վերջերին և 90-ական թվականների սկզբներին, շնչում էր հայ ուսանողության առաջավոր մասը:

Սակայն քաղաքացիական պաթոսը Թումանյանի ստեղծագործության առանձնահատկություններից միայն մեկն էր: Մյուս, նույնքան կարևոր հատկանիշը ժողովրդական կյանքի՝ «կարիքների և չարիքների» աշխարհի խոր ճանաչողությունն էր և դրա հարազատ արտացոլումը՝ ժողովրդի գեղարվեստական մտածողության ոգով ու ոճով, այսինքն՝ ռեալիզմը և ժողովրդականությունը:

Եթե մայրաքաղաքի ուսանողությունը Թումանյանի առաջին ժողովածուն գնահատելիս ելակետ ուներ նրա պոեզիայի հատկապես քաղաքացիական պաթոսը, ապա հայ երիտասարդ մտավորականության այն

---

Հետաքրքրական է, որ Թումանյանի առաջին գրախոսը՝ Վարսամը (Մանուկ Աբեղյան), ասես, որպես պատասխան Սաքոյի խելագարության վերաբերյալ տարակուսանք հայտնողներին, գրում է. «Սաքոյի երևակայության խանգարվելը և այդ խելագարության աստիճանաբար զորանալը հոգեբանական մանրամասն ճշտությամբ պարզած է վեպի <պոեմի> մեջ» («Նոր-Դար», 1890, N 197):

մասը, որ դուրս էր եկել ժողովրդի ընդերքից և գործում էր գավառում, Թումանյանի առանձնահատկությունը տեսավ նրա այն ստեղծագործություններում, որ դրսևորում էին բանաստեղծի ժողովրդայնությունը:

Դրանք գերազանցապես Թումանյանի հայրենակիցները կամ դասընկերներն էին, որոնք հայրենիքից հեռու, պանդխտության մեջ կարդալով իրենց բանաստեղծ-ընկերոջ հայրենաշունչ երկերը՝ նրանցից առնում էին հարազատ բնաշխարհի, մայրաբարբառ բառ ու բանի կարոտը. նրա պատկերած կերպարներում տեսնում էին իրենց սիրելիներին և հենց իրենց: Ան. Աբովյանը 1890 թ. դեկտեմբերի 6-ին Կամենեց-Պոդոլսկից Թումանյանին ուղղած նամակում, արտահայտելով իր և պանդուխտ ընկերների տպավորությունները, գրում է. «Մեհրի» պոեմայի մեջ իմ անձնավորությունն եմ տեսնում. կհավատաս, սիրելի ընկեր, որ այդ պոեման կարդալով, ես այն աստիճան զգացվեցի, որ լաց եղա... Այստեղ մի փեսա ունենք (Ստեփանի քրոջ մարդը), որը լսելով, ասաց. «Տո', էդ հլե մեզ վրա ա գրել. վեր կենանք, ետ կորչենք մեր աշխարհքը, քանդվի՜ սա...»[59]:

«Կարդում եմ բանաստեղծություններդ,- գրում է Ղլտճյանը, մասնավորապես իր հիացմունքն արտահայտելով «Գութանի երգի» նկատմամբ (տպագրված «Մուրճ»-ում), հորդորում է շարունակել այդ ոգով.- Երգի'ր, սիրելի'ս, գյուղացու կյանքը, նրա հոգսն ու վիշտը, նրա տանջանքն ու երջանկությունը... այդ մեր ամենիս սրտին մոտիկ է... Քո երգածի մեջ բնականություն կա և ոչ դատարկ ֆանտազիա. դու պիտի երգես, սիրելի'ս, որովհետև դու նույնիսկ այդ ընկճված, հարստահարված գյուղացու ծնունդ ես» (ԹԸԱ):

Սիմեոն Հովվյանը Թումանյանի պոեզիայի «գրավիչ, համակրելի և էական կողմը» համարում է ժողովրդականությունը (ԹԸԱ): «Հնգյակի» անդամներից Գր. Վանցյանը պատվիրում է՝ «...Չմոռանաս նախկին (իմա' սկզբնական - Ա. Ի.) ուղղությունդ, չմոռանաս այն ժողովուրդը, որ քեզ ծնել է. երգի'ր ժողովրդի ցավն ու վիշտը, հոգսն ու թշվառությունը: Սաքոների ձեռից բաց չթողնես»[60]: Մի այլ նամակում Թումանյանի ստեղծագործության էությունը նա խտացնում է մի հակիրճ բանաձևի մեջ՝ «ժողովրդական ոգու արտահայտություն՝ արվեստով արտաբերված»[61]:

---

[59] ԳԱԹ, Թա, N 426:
[60] Նույն տեղը, N 928:
[61] ԳԱԹ, Թա, N 991:

Հայրենակից երիտասարդների այս ջերմ գնահատությունը Թումանյանը թեև համարում է ընկերական անխուսափելի տուրք, հիշեցնելով «Պառավն յուր թանին թթու չի ասիլ» առածը (V, 41), այդուհանդերձ, դրանք, անկասկած, նրան խորապես հուզում են և ամրապնդում իր ուղղության մեջ:

Եվ, անշուշտ, իր պանդուխտ հայրենակիցների և ընկերների այդ նամակներն են Թումանյանին ներշնչել «Օտարության մեջ» բանաստեղծությունը:

Իմ եղբայրները օտարության մեջ
Ինձ ասում էին.- «Կարոտ ենք, երգի'չ,
Մեր հայրենիքի երգերիցն ասա'.
Քո երգից նորա
Մայրական զըվարթ
Հողի ու ջըրի
Եվ մեր հարազատ
Հայ ժողովրդի
Համն ու հոտն առնենք,
Որ մխիթարվենք...
(I, 93)

Թումանյանի առաջին ժողովածուն, որպես մի արտակարգ երևույթ, ցնցող տպավորություն է գործում Էջմիածնի Գևորգյան ճեմարանում. «Դա մի ռումբ էր, որ պայթել էր բանաստեղծությամբ ապրող երիտասարդների շրջանի մեջ, հրաբխային մի ժայթքում՝ գրքույկի ամեն մի էջը, ամեն մի տունը,- պատմում է այդ ժամանակ ճեմարանի ուսուցիչ, հետագայում հայտնի գրական-հասարակական գործիչ Ստ. Լիսիցյանը:- Աշխարհ էր գալիս մի խոշոր բանաստեղծ և մեկ անգամից կանգնում էր մեր աչքերի առջև իր հասակի ամբողջ բարձրությամբ... Լսարանից լսարան, դասարանից դասարան՝ ձեռքե-ձեռք անցնում էր հատորիկը, և արդեն այս ու այն կտորը անգիր էր սերտվում, այս ու այն տունը երգի էր վերածվում: Եվ երբ ազատ դասերից մեկին մտա, որ լսարանը զբաղեցնեմ բացակա դասախոսի փոխարեն, ուսանողները խնդրեցին կարդալ «Լոռեցի Սաքոն»... Չիմացա ինչպես զանգը տվին: Լսարանից դուրս գալով, նրբանցքում զգացի մի ինչ-որ ձեռք մեղմորեն ինձ գրկում է, և ականջիս

շշնջաց ուսանող Սողոմոն սարկավագի (ապագայում՝ Կոմիտաս վարդապետի) ձայնը.

- Լավ է, չէ՞, լավ է, չէ՞...»:

Լիսիցյանը հավաստում է «Հովհ. Թումանյանի լեզվի, ոտանավորների կառուցվածքի, մոտիվների անդրադարձումը՝ ազդեցությունը» «ճեմարանի ուսանողների բանաստեղծական փորձերի մեջ»:

Լիսիցյանն արտահայտում է նաև ժամանակի հայ մտավորականության և ընթերցող հասարակայնության ավելի լայն շրջանների տպավորությունները, փորձում բացատրել Թումանյանի ստեղծագործությունների, գրեթե աննախօրինակ հմայքի «գաղտնիքը».

«Դեռ երբեք և ո՛չ մի հայ բանաստեղծ,- գրում է նա,- գուցե բացի Աբովյանից,- այդպիսի թարմությամբ, այդպիսի թանձր գունեղությամբ, այդպիսի բուռն զեղումով չէր տվել հայրենի բնության գեղեցկությունները, և նրանց մեջ ապրող մարդու պարզ, բայց ողբերգական ապրումները: Զարմացնում էր լեզվի անպաճույճ հստակությունը, կենդանությունն ու թեթևությունը... Նա մեկ անգամից դարձավ ամենասիրելին բանաստեղծների մեջ»:

Թումանյանի ժողովածուն դիտելով հայ գրականության պատմական զարգացման ընթացքի մեջ և գտնելով, որ նրա առջև «Հովհ. Հովհաննիսյանի առաջին գրական ելույթի մեծ հմայքը» տեղի էր տալիս, Ստ. Լիսիցյանն ի դեմս Թումանյանի, տեսնում է այն կենտրոնական դեմքը, «որի հետևից գնալու է բանաստեղծների նոր սերունդը»[62]:

[62] Ստ. Լիսիցյանի անձնական արխիվը:

# ԳԼՈՒԽ Դ
# 1893-1899
## ԿՅԱՆՔԸ. ԻՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ. ԳՐԱԿԱՆ ՄԻՋԱՎԱՅՐԸ

### 2

«Բանաստեղծություններ»-ի առաջին գրքի տպագրությունը դեռ նոր էր ավարտվել, երբ, 1890 թ. սեպտեմբերի վերջերին, Թումանյանը մտադրվում է նույն ձմռանը հրատարակության հանձնել երկրորդ ժողովածուն. «...Այս ձմեռ մի ուրիշը տպագրել կտամ, որ անհամեմատ բարձր կլինի սրանից»,- գրում է նա Ան. Աբովյանին սեպտեմբերի 28-ի նամակում (V, 24-25): Հոկտեմբերի 14-ին հաղորդում է, որ արդեն պատրաստում է երկրորդ հատորը, որ «սրան (այսինքն՝ առաջին գրքին - Ա. Ի.) թե որակությամբ, թե քանակությամբ կգերազանցի» (V, 29):

Հաջորդ տարվա մարտից Արասխանյանի հրավերով սկսելով աշխատակցել «Մուրճ»-ին, Թումանյանը միառժամանակ երկմտում է՝ հրատարակե՞լ երկրորդ հատորը, թե՞ առայժմ բավականանալ գրվածքները ամսագրում տպագրելով» (V, 49):

Ըստ երևույթին, առաջին ժողովածուի գտած հաջողությունը, ընկերների և գրական բարեկամների հորդորները՝ նրա տարակուսանքները փարատում են հօգուտ երկրորդ հատորի հրատարակության: Բանաստեղծը թերևս հաշվի է առել նաև միակ գրական ամսագրի սահմանափակ հնարավորությունները, որ կարող էր օգտագործել իր նոր գրածների համար, մինչդեռ նա արդեն պատրաստ գործերի բավականին «կուտակում» ուներ:

1892 թ. հունվարին Թումանյանը Արս. Ղլտճյանին հայտնում է իր որոշումը երկրորդ հատորը տպագրության հանձնելու մասին, որ «առավել մեծ է և հարուստ» (V, 62-63): Գր. Վանցյանի՝ նույն թվականի փետրվարի 18-ի նամակից պետք է եզրակացնել, որ այդ ժամանակ երկրորդ հատորն ուղարկված է եղել տպագրության (դարձյալ Մոսկվայի՝ Մկ. Բարխուդարյանի տպարանը): «Գրքիդ II հատորի այդպիսի շուտափույթ տպագրության հանձնելը ինձ զարմացնում է,- գրում է նա,- հույս ունի՞ս, որ ծախքդ հանես, կամ առաջին գրքիդ ծախքը հանեցի՞ր»[63]:

---

[63] ԳԱԹ, Թա, N 988:

Ինչպես վավերագրական տվյալներից երևում է, Թումանյանի երկրորդ գրքի տպագրության գործին նյութապես աջակցել են Փ. Վարդազարյանը և վերջինիս առաջարկությամբ նրա մորաքրոջ որդի Արիստ. Զարգարյանը, որ այդ ժամանակ ուսանում էր Մոսկվայի համալսարանի բժշկական ֆակուլտետում: Զարգարյանը 1892 թ. ապրիլի 17-ի նամակում Փ. Վարդազարյանին հայտնում է հրատարակչի (Մկրտիչ Բարխուդարյան) հետ վարած բանակցությունների արդյունքների մասին[64]:

Թումանյանի «Բանաստեղծություններ»-ի երկրորդ հատորը գրաքննությունը տպագրության է թույլատրում նույն թվականի մայիսի 7-ին, բայց տպագրությունը շատ դանդաղում է: Մկ. Բարխուդարյանը օգոստոսի 12-ի նամակում այդ բացատրում է գրաշարների պակասությամբ, և գրքի տպագրությունն այլևս չուշացնելու համար մերժում է երրորդ սրբագրությունը կատարելու բանաստեղծի խնդրանքը[65]:

Նույն թվագրությունն ունեցող մի այլ նամակում Մկ. Բարխուդարյանը Փ. Վարդազարյանին հայտնում է, որ ինքն այդ մասին նախապես խոսել է Ա. Զարգարյանի հետ: Ինչպես պարզվում է Մկ. Բարխուդարյանի նամակից, Թումանյանը գրքում մի քանի փոփոխություններ է կատարել, որ «ի նկատի են առնված» եղել: Թե փոփոխությունները ո՞ր երկերին են վերաբերել և ի՞նչ բնույթ են կրել՝ մնում է անհայտ, քանի որ բանաստեղծի այդ նամակը չի պահպանվել[66]:

Ժողովածուի տպարանական փորձանմուշները բանաստեղծին չուղարկելու հետևանքը լինում է այն, որ գրքում սպրդում են բազմաթիվ վրիպակներ:

Այդ առթիվ Թումանյանն իր խոր վրդովմունքն է հայտնում Մկ. Բարխուդարյանին (պահպանվել է վերջինիս ուղղված նամակի սևագրությունը, որի ժամանակը չի նշված. հավանորեն գրված է սեպտեմբերին). «Վերջապես ստացա գրքիս առաջին երկու օրինակները **այսքան սպասելուց հետո,** բայց այնքան վատ և անախորժ եղավ տպավորությունը, որ երանի չէի ստացել... արտաքինը այլանդակ է ուղղակի... Վերցրել եք գրքի սկզբում դրել ծաղկատառ. գիրքը բաց անելիս մարդու վրա մանկական վեպիկի տպավորություն է թողնում... Ավելի խայտառակ է ներքին

---

[64] Նույն տեղը, N 1664:
[65] Նույն տեղը, N 571:
[66] Նույն տեղը, N 1658:

մասը. առաջին կարդալով 40 սխալ գտա: Դու անկարելի էիք համարում երրորդ սրբագրության իմ տեսնելը և երաշխավորում... Այժմ, ասացեք խնդրեմ, կարելի՞ է տալ հասարակությանը մի 160 երեսանոց գիրք - այն էլ բանաստեղծություններ - այսքան սխալներով... Այդ չի կարելի ներել. պետք է հասկանալ, թե ի'նչ նշանակություն ունի հեղինակի համար ընդհանրապես և բանաստեղծի համար մասնավորապես, ամեն մի խոսք, մի կետ...» (V, 70):

Ժողովածուն լույս է տեսնում միայն նոյեմբերի վերջերին, 1200 օրինակ տպաքանակով:

Թումանյանի երկրորդ ժողովածուն նախորդի համեմատությամբ ավելի հարուստ և բազմազան էր, և ավելի ցայտուն էր դրսևորում բանաստեղծի ստեղծագործության պաթոսը՝ ժողովրդայնությունն ու վիպականությունը (էպիզմը). այդտեղ ներկայացված էին «Անուշ», «Մարոն», «Մերժած օրենք» պոեմները, երկու հատված դեռևս անհայտ «Հին կռիվը» պոեմից («Տարոնի գարունը», «Տարոնի առավոտը»), «Շունն ու Կատուն» և «Ախթամար» լեգենդները, բանաստեղծություններից՝ «Կանչ», «Համերգ», «Ա՜խ ես երանի...», «Երգչին», «Գութանի երգը», «Մութն էր երկինքը», «Գիշերային մտածմունք», «Ղերասան Ադամյանի մահը», «Քրիստոսն անապատում», «Ինձ մի' խնդրիր», «Իմ սերը» և այլն, թարգմանություններ և փոխադրություններ Պուշկինից, Լերմոնտովից, Ժուկովսկուց:

Իր կրտսեր գրչակցի երկրորդ գրքի առթիվ փոքրիկ, բայց ջերմ հոդվածով «Մուրճ»-ում հանդես եկավ Ղազարոս Աղայանը, բանաստեղծական մի գեղեցիկ պատկերի մեջ խտացնելով հիմնականը՝ Թումանյանի օրգանական կապը հայրենի երկրի և ժողովրդի հետ. «Վերջին ժամանակներս,- գրում է նա,- մեր գրականության նորատունկ բուրաստանի մեջ մինը մյուսի ետևից դուրս եկան նոր-նոր ծաղիկներ. նորերումս փթթեց մի նոր ծաղիկ ևս, անուշահոտ և համեստ, ինչպես վճիտ աղբյուրների ափերում բուսած մանուշակը Գուգարաց աշխարհում»[67]:

Նոր ժողովածուով Թումանյանը լիուլի արդարացնում էր այն հույսերը, որ առաջին գրքի երևալով նրա հետ կապել էին գրական հասարակայնությունը, հատկապես երիտասարդությունը:

---

[67] «Յովի. Թումանյանի «Անուշ»-ից մի ճաշակ», «Մուրճ», 1893, N 3, էջ 457-460 (**Ղ. Աղայան,** Երկերի ժողովածու, հատ. III, 1963, էջ 221-224):

Թումանյանի այդ գրքի գրա-պատմական նշանակությանն անդրադառնալով, Դեմիրճյանն իր հուշերում գրել է. «Աղայանն էր «Մուրճ»-ում լայն ճանապարհ հարթել Թումանյանի երկրորդ հատորի համար, վեր հանելով նրա «Անուշ»-ը: Այդ հատորը... վճռական դեր կատարեց Թումանյանի գրական բախտի մեջ... Արդեն անցած կարելի էր համարել այն շրջանը, երբ հայ ընթերցող հասարակության մի մասը՝ անշուշտ Արծրունու կծու քննադատականից ազդված՝ խեթ էր նայում Թումանյանին: Արծրունին չկար այլևս, «Մուրճ»-ը նոր ուղի էր հարթել գրականության համար, Թումանյանը գրել էր իր «Անուշ»-ը (ճիշտ է՝ առաջին վարիանտը), «Լոռեցի Սաքոն» և մյուսները... Եվ որովհետև նորագույն բանաստեղծության հայրը՝ Հովհ. Հովհաննիսյանը չէր երևում ասպարեզում, Իսահակյանը դեռ չէր հրատարակել իր «Երգերն ու վերքեր»-ը, ամենքի հայացքն ուղղվեց դեպի Թումանյանը»:

Ինչպես հավաստում են «Հնգյակ»-ի անդամներից Գր. Վանցյանը և Ա. Առաքելյանը, Թումանյանի նոր գիրքը ջերմ ընդունելություն է գտնում գավառում: Առաջինը, որ ուսուցչի պաշտոն էր վարում Ախալքալաքում, 1893 թ. ապրիլի 8-ի նամակում հայտնում է իր և տեղի ընթերցողների տպավորությունները. «Ուզում էի մի քննադատություն գրել, կանգ առնելով մանավանդ «Կանչ»-ի վերա, սակայն Աղայանցը կանխեց[68] և վախեցա ցենզուրան թույլ չտա,- գրում է նա:- «Կանչ»-ը ամեն տեղ ֆուրոր է անում.- Это действительно высоко-художественное произведение. Եթե, Հովհաննես ջան, ուրիշ ոչ մի բան չգրեիր, այդ ստեղծագործությունդ բավական էր քեզ բանաստեղծի մեծ կոչմանը արժանացնելու: Ունիս, այո', և ուրիշ գեղեցիկ բաներ, ունիս և շատ թույլ բաներ, բայց «Կանչ»-ը՝ դա գլուխգործոցդ է. դա մի **գոհար** է. այդպես եմ անվանում «Կանչ»-դ՝ **գոհար**:

Զուտ բանաստեղծական - գրական-գեղարվեստական բաժնում, անցյալի հետ համեմատած, անտարակույս, մեծ առաջադիմություն ես արել... Ես և շատերը ինձ հետ քեզանից սպասում էինք ժողովրդական ոգու արտահայտություն՝ արվեստով արտաբերված. այդ ուղղությամբ գրածներիցդ այս գրքում ամենահաջողակը «Ախթամար»-ն է. մնացածներում, ինձ թվում է, թե՝ ոչ թե չես առաջադիմում, այլ մասամբ կանգնած ես մնացել նույն աստիճանի վրա:

[68] Նկատի ունի Աղայանի՝ «Հովհ. Թումանյանի «Անուշ»-ից մի ճաշակ» հոդվածը:

«Անուշ»-իդ առաջին մասը շատ է ձգձգված, և ըստ իս, շատ էլ հաջողակ չէ: «Մերժած օրենք»-ը գեղեցիկ է: Լիրիքականներդ, ինչպես ասացի, առհասարակ հաջողակ են. թարգմանություններդ, թեև բնագրի հետ չեմ համեմատել, բայց անհաջող են երևում. թարգմանություններից մի քիչ ձեռ քաշի: Ի վերջո, «Գիշերային մտածմունք»-ը, «Խորհրդածություն»-ը և այլք ընտիր բաներ են...»[69]:

Արամ Առաքելյանը 1893 թ. մայիսի 23-ին Ախալցխայից գրում է, թե «Ոտանավորներից «Կանչ»-ը արդեն բերանից բերան է ընկել: Երբ արդար զայրույթդ ուզում ես հայտնել կյանքի և աստծո կարգավորության դեմ, այն ժամանակ արտահայտվում է քո ոտանավորով. «Եթե կաս, Աստված, և...»[70]:

Բանաստեղծի գրական բարեկամների և ընկերների կարծիքները, ինչպես վկայում են նրանց նամակներից բերված քաղվածքները, վիճելի են, խիստ սուբյեկտիվ են և հակասական, սակայն ոչ զուրկ հետաքրքրականությունից, որպես ժամանակի մտավորականության որոշ շերտերի գրական ըմբռնումների արտահայտություն:

Գր. Վանցյանը Թումանյանի ժողովածուն տրոհում է երկու բաժնի՝ «զուտ բանաստեղծական - գրական-գեղարվեստական» (նկատի ունի քնարական բանաստեղծությունները) և «ժողովրդական», ընդ որում, Թումանյանի «մեծ առաջադիմությունը», «անցյալի հետ համեմատած», նա տեսնում է առաջին բաժնում, մինչդեռ երկրորդ բաժնից առանձնացնելով «Ախթամար»-ը, որպես «ամենահաջողակը», մնացածներում ոչ միայն առաջադիմություն չի տեսնում, այլև գտնում է, որ բանաստեղծը «մասամբ կանգնած է մնացել նույն աստիճանի վրա»: Թերևս դրանով նամակագիրը, ուրիշների հետ, երկյուղ է հայտնում, թե Թումանյանը կարող է հեռանալ ժողովրդական ուղղությունից:

Նույն տագնապն արտահայտված է Ա. Առաքելյանի 1893 թ. ապրիլի 13-ի նամակում. «Ուղղությունիցդ մի փոքր շեղվում ես. առաջին հատորին հավատարիմ մնա...» (ԹԸԱ): Հենց Գր. Վանցյանի պաշտոնակիցը Ախալքալաքում՝ Ջալալ Տեր-Գրիգորյանը հերքում է այդ «երկյուղը», ընդգծելով Թումանյանի անխզելի կապը ժողովրդի հետ և դրա հավաս-

---

[69] ԳԱԹ, Թա, N 991:

[70] ԳԱԹ, Թա, N 518: Հետաքրքրական է, որ այդ բանաստեղծությունը հետագայում էլ ժողովրդականություն է վայելել: Թումանյանը 1901 թ. հուլիսի 2-ի նամակում, ուղղված Մարիամ Թումանյանին, գրում է. «Այստեղ (Ուրավելում - Ա. Ի.) շատ սիրում են «Եթե կաս, Աստված...» ոտանավորը, որ այժմ ինձ շատ էլ դյուր չի գալիս» (V, 181):

Նշանակված օրը հավաքվեցինք Շահլամյանի մոտ: Այնտեղ էր և Հովհաննես Թումանյանը: Մեր խոսակցությունը Թումանյանի գրվածքների շուրջն էր պտտվում: Վերջում առաջարկեցինք հրապարակ բերել իր գրվածքները և հնարավորություն տալ մեզ ծանոթանալու: Թումանյանը համեստորեն հրաժարվում էր, պատճառաբանելով, թե մի առանձին արժեքավոր բան չեն ներկայացնում այդ գրվածքները: Մեր համառության ու պնդումներին նա ստիպված եղավ զիջել: Իսկույն նեթ գնաց և իր բնակարանից, որ նույն տան միջին հարկումն էր գտնվում, բերեց գրելու թղթի թերթերից կարած մի մեծ տետր, մատիտն էլ թելով վրան կապած: Տետրը ձեռքե-ձեռք անցավ և թերթել սկսեցինք ու կարդալ մեկը մյուսի ետևից «Շունն ու Կատուն», «Արև և Լուսին», «Ամառվա գիշերը գյուղում», «Գութանի երգը», «Աղոթք», «Հին օրհնություն», «Մարո», «Ալեք», «Նահատակ», «Լոռեցի Սաքոն» և մեկը մյուսից գեղեցիկ ու գողտրիկ ոտանավորները: Թումանյանի գրվածքները մեզ վրա խոր տպավորություն թողեցին ու զարմացրին իրենց արտահայտության ձևի գեղեցկությամբ, ոճի սահունությամբ ու կառուցվածքի անբռնազբոսությամբ: Մի շարք նիստեր նվիրեցինք այդ նորագյուտ բանաստեղծի ոտանավորների ծանոթության և ուսումնասիրության համար: Երբ վերջացրինք մեր աշխատանքը, առաջարկեցինք Թումանյանին մեր նշանակած ոտանավորներից մի ժողովածու կազմել, իսկ մենք որոշեցինք բաժանորդաթերթեր տարածել, որպեսզի բաժանորդագրությամբ հրատարակել կարողանանք:

Որպեսզի նախքան ժողովածուի լույս տեսնելը հայ ընթերցող հասարակությանը կարողանանք ծանոթացնել Թումանյանի բանաստեղծական կարողություններին, իր իսկ ձեռքով արտագրել տվինք «Արև և Լուսին» ավանդությունը և իմ մտերիմ ընկեր Գրիգոր Վանցյանի հետ տարանք «Տարազ» հանդեսի խմբագրատուն ու հանձնեցինք Ղազարոս Աղայանին, խնդրելով «Տարազի» մոտակա համարում տպագրել և եթե կարելի է, մի խրախուսական հոդված էլ գրել երիտասարդ բանաստեղծին ոգևորելու համար:

Աղայանը, կարդալով, շատ հավանեց, հարց ու փորձ արեց նրա որտեղացի և ով լինելու մասին ու խոստացավ մեր խնդիրն անպատճառ կատարել: «Արև և Լուսինը» 1890 թ. սկզբներում լույս տեսավ «Տարազ» շաբաթաթերթում, Ղազարոս Աղայանի մի փոքրիկ խրախուսականով(2): Առաջին անգամ ընթերցող հայ հասարակությունն առիթ ունեցավ ծանո-

թանալու մեծ ապագա խոստացող երիտասարդ բանաստեղծ Հովհ. Թումանյանի գրելու ընդունակություններին:

Թումանյանը մեր առաջարկությամբ իր կազմած ժողովածուն ներկայացրեց Թիֆլիսի գրաքննիչին՝ թույլտվություն ստանալու համար, որը բավական երկար պահելուց հետո մերժեց թույլտվությունը: Ամառն արդեն վրա էր հասել: Մեր խումբը ցրվել էր Թիֆլիսից: Թումանյանը բարեկամների խորհրդով իր ժողովածուն ուղարկում է Մոսկվա, տպարանատեր Մկրտիչ Բարխուդարյանին, առաջարկելով թույլտվություն ստանալ և որոշ պայմաններով տպագրել: Աշնանը լույս տեսավ Թումանյանի բանաստեղծությունների առաջին ժողովածուն: 1890 թ. նոյեմբերին Ախալցխայում, ուր ուսուցչական պաշտոն էի վարում, ստացա Հովհ. Թումանյանից մի նամակ, հետը նոր լույս տեսած նրա անդրանիկ ժողովածուն, որը անչափ ուրախություն պատճառեց ինձ, և ես մի ոգևորված ու սրտառուչ նամակով շնորհավորեցի նրա գրական ասպարեզ գալու առաջին քայլը(3):

Զարմանալին այն է, որ Թումանյանի բանաստեղծությունների առաջին ժողովածուում տեղ չի գտել նրա սքանչելի «Շունն ու Կատուն»: Երբ մենք կարդացինք նրա ոտանավորների տետրը ու իր իսկ մասնակցությամբ ընտրություններ կատարեցինք, «Շունն ու Կատուն» թեև մեծ զվարճություն պատճառեց, բայց առանձին գրական արժեք չտվինք: Այդ գրական տհասությունը մեզ՝ դպրոցականներիս, ներել կարելի է, բայց որ մեզնից հետո ավելի պատրաստված, հրապարակում անուն հանած ու դիրք գրաված հրապարակախոսներ ու գրականագետներ նրա երկերի գրական-բանաստեղծական արժեքը ժխտեցին, անգամ «Շունն ու Կատուն» ոտանավորը հեգնեցին, դա արդեն անթույլատրելի էր(4):

Հովհ. Թումանյանի գրական ասպարեզ գալու շրջանում մեր պարբերական հրատարակություններից Արասխանյանի «Մուրճը» առաջինն եղավ, որ երիտասարդ բանաստեղծին աշխատակցության հրավիրեց: Այդ ժամանակ «Մշակի», «Նոր-Դարի» ու «Արձագանքի» խմբագրություններից դժգոհ մի շարք հին ու նոր հայ գրողներ խմբվել էին «Մուրճի» շուրջը:

1921 թ. սեպտեմբերին, երբ մի օր ճաշին հրավիրված էինք Թումանյանի մոտ, ուր կային և մի քանի անվանի և բարձր պաշտոն ունեցող հայ կոմունիստներ, բանաստեղծը իրեն հատուկ հումորով ու զվարճախոսությամբ թամադայություն անելիս այսպես բնորոշեց իրեն.

- Ինչպես յուղոտ ծուն ներկ չի վերցնում, այնպես էլ ես չկարողացա այս կամ այն քաղաքական կուսակցության հարել, թեև թե' իմ և թե' իմ անձնական բարեկամների կողմից այդ ուղղությամբ փորձեր եղան:

Սակայն պետք է նկատի ունենալ, որ բոլոր կուսակցությունների մեջ էլ նա անձնական բարեկամներ ու բազմաթիվ համակրողներ ուներ: Որպես գրող նրա հմայքն այնքան մեծ էր, որ նրա հետ զրուցելիս առիթ չէր լինում քաղաքական խնդիրներ շոշափել:

*

Տպագրվում է մի հատված «Հովի. Թումանյանց (հուշեր ու գծեր)» զեկուցումից, որ գրված է 1923 թ. մայիսին, Բաքվի լուսավորության տան կից հայկական ուսուցչական բյուրոյի պատվերով:

Հուշերի մի այլ տարբերակ տպագրվել է` «Կոմունիստ», Բաքու, 1923, N 39:

1. Հեղինակը նկատի ունի «Պոետն ու Մուսան» պոեմի հետևյալ տողերը.

Էնքան արիր, սատանի պես,
Որ գըրեցի մեծիս պարսավ.
Նա էլ - կո'րի, կո'րի, ասավ,
Մենք ենք տալի քեզ փող ու վարձ,
Դու, Մուսայի խելքով ընկած,
Վեր ես կենում մեր դեմ խոսում.
Էդպես պիսեր մենք չենք ուզում:

Առաքելյանի հիշատակած` «մերկացումները ոտանավորով» և պոեմի «որ գըրեցի մեծիս պարսավ» խոսքերը վերաբերում են «Չարամիտներին» բանաստեղծությանը (տե'ս ԹԵԺ I, 40):

2. Առաքելյանը շփոթում է. ինչպես պարզվում է Թումանյանի` 1890 թ. հուլիսի 29-ին Ան. Աբովյանին գրած նամակից, «Արև և Լուսինը» տպագրվել է առանց որևէ միջնորդության. պարզապես Աղայանը Թումանյանի տանը կարդացել է (ԹԵԺ V, 20) և հավանելով, տպագրել «Աղբյուրի» 1890 թ. N 8-9-ում (և ոչ թե «Տարազում»), առանց որևէ խրախուսականի:

Երկու պարբերականները իրար հետ շփոթված են նաև Առաքելյանի «Կոմունիստում» տպագրված հուշերում. այստեղ սխալ է նաև թվականը` 1889 թ. («Տարազը» սկսել է հրատարակվել 1890-ից):

3. Թումանյանին գրած Ա. Առաքելյանի 1890 թ. նոյեմբերի 16-ի նամակը տե'ս ԳԱԹ, Թումանյանի ֆոնդ, N 516:

4. Ակնարկում է Խաչ. Մալումյանին և Գր. Արծրունուն: «Անգամ հեգնեցին «Շունն ու Կատուն» ոտանավորը» խոսքերը վերաբերում են Արասխան-

յանին, որը, 1889 թ. կարդալով տակավին անտիպ «Շունն ու Կատուն», ասել է. «...ասացեք, խնդրեմ՝ շունն ու կատո՜ւ և բանաստեղծությո՜ւն, սրանք ի՞նչ կապ ունեն իրար հետ, էն էլ էս տեսակ վայրենի լեզվով...» (ԹԵԺ V, 415):

***«Թումանյանը ժամանակակիցների հուշերում», Երևան, Հայկական ՍՍՀ ԳԱ հրատարակչություն, 1969, էջ 285-290, 934***

## ՀՈՎՀԱՆՆԵՍ ԽԻՋԱՆՅԱՆ

## ԲԱՆԱՍՏԵՂԾԻ ՀԵՏ

Թումանյանի հետ ծանոթացել եմ սրանից 46 տարի առաջ` 1889 թվին:

Այդ ժամանակ նա ծառայում էր Վրաստանի և Իմերեթի թեմի կոնսիստորիայում, որը գտնվում էր Թիֆլիսի վանքի եկեղեցու բակում: Գիտեի, որ նա գրում է:

1890 թվից սկսած մենք շատ հաճախ էինք պատահում իրար: Բնակվում էինք միևնույն` Նորաշենի (այժմ` Հազիրի) փողոցում, իրարից բավականին մոտիկ: Նա հաճախ գալիս էր մեզ մոտ` տեսնելու իմ նկարները:

Նրա բանաստեղծությունների առաջին գրքույկը լույս տեսավ 1890 թվականին: Բաժանորդագինը, կարծեմ` 25 կոպ. էր: Ես այդ տարին Թիֆլիսի առաջին գիմնազիայի աշակերտ էի: Այդ ժամանակ Թիֆլիսում հեկտոգրաֆով հրատարակվում էր «Օիածան» ամսաթերթը, որը միջնակարգ ուսումնարանների հայ աշակերտության միության օրգանն էր և տպագրվում էր մեր տանը: Նա հետաքրքրվում էր այդ թերթով և հաճախ կարդում էր:

Մի կիրակի օր Թումանյանը, մտնելով ինձ մոտ և տեսնելով ինձ թերթի տպագրությամբ զբաղված, ասաց.

- Բայց շա՜տ լավ տեղ ես գտել (ծիծաղելով, մատով ցույց տվեց դիմացի տունը). երբեք ոչ ոքի մտքովն էլ չի կարող անցնել, որ ոստիկանների քթի տակին, մի էսպիսի թերթ է տպագրվում. շատ լավ տեղ է ընտրված, կեցցե'ք:

Ապա ծիծաղելով, պինդ սեղմեց ձախ թևիս արմունկը ու շարժեց մի քանի անգամ: Իրավ, հենց մեր պատուհանների դիմաց, այդ նեղ փողոցում, գտնվում էր Թիֆլիսի ոստիկանության 5-րդ քաղաքամասի վարչությունը:

Թումանյանին հաճախ պատահում էի մեր ընդհանուր ծանոթների շրջանում ևս. շատ անգամ է պատահել, որ բավական մեծ խմբով (մոտ 40 երկսեռ երիտասարդներից բաղկացած) գնացել ենք Բուսաբանական այգի, Կոջորի սարերը և Կրծանիսի այգիները` խնջույքի: Այդ խմբում ունեինք լավ երգողներ` երգիչ Ամիրջանյանը, որ երգեցողության ուսուցիչ էր, երգիչ Մամաջանյանը, որ դեռ Ներսիսյան դպրոցի աշակերտ էր, և Ջանբաբյանը, որ լավ թառ էր նվագում և նույնպես երգում:

Այդ խմբում, բացի ուսուցիչներից և ուսուցչուհիներից, կային և միջնակարգ դպրոցների մի քանի աշակերտ-աշակերտուհիներ, որոնց թվում էի և ես:

Հիշում եմ, մի երեկո, երբ ես հրավիրված էի մի օրիորդի տոնախմբության առթիվ կազմակերպված ընտանեկան երեկույթի, հյուրերի թվումն էր և Թումանյանը: Մենք պարում էինք ու զվարճանում: Թումանյանը պարել չգիտեր. նա ամբողջ ժամանակ լուռ ու մունջ նստած՝ նայում էր մեզ: Երբ նստեցինք սեղանի շուրջը, ինձ թամադա ընտրեցին: Պաշտոնական կենացները (օրիորդի և նրա ծնողների) վերջացնելուց հետո ես վերցրի բաժակը և դիմեցի Թումանյանին Պուշկինի հայտնի բանաստեղծության առաջին տողերով.

Я памятник себе воздвиг нерукотворный,
К нему не зарастет народная тропа...

և շարունակելով խոսքս հայերեն՝ առաջարկեցի Թումանյանի կենացը, ցանկանալով նրան մեծ հաջողություն իր ընտրած ասպարեզում:

Թիֆլիսից ոչ հեռու (մոտ 2 ժամվա ճանապարհ), Թելեթի սարի ետևում գտնվում է Թելեթ գյուղը և «Թելեթի խեչը» (այսինքն՝ խաչը-սուրբը), որտեղ աշնանը մեծ տոնախմբություն և ուխտագնացություն էր տեղի ունենում: Մի աշնան, «Թելեթոբի» օրը, ես երկու ընկերներիս հետ գնացի Թելեթ, որը դեռ չէի տեսել: Թիֆլիսի կինտոների մի խումբ, ծառի տակ նստած, քեֆ էր անում. կինտոներից մեկը, որ ընկերոջս հարևանն էր, հրավիրեց մեզ իրենց սեղանին, և մենք երեքով, մոտ մի ժամ նրանց հետ նստած՝ ուտում, խմում ու նրանց սրամիտ կենացներն էինք լսում. նվագում էր «արղանը» (орга'н, երգեհոն - կինտոների սիրած երաժշտական գործիք): Սկսեցին և պարել. հավանեցինք նրանց մի պարը, որ կատարեցին երկու հոգով, առանց «արղանի» մասնակցության, միայն երգով՝ Թիֆլիսի բարբառով. այդ երգը ես գրի առա. պարում էին և միևնույն ժամանակ երգում երկուսն էլ.

Հացար Գիքո, մացար Գիքո,
Երկու շահու հաց առ, Գիքո.
Ցոմ-ցոմ պուրեբս նու իղիդի(1)
Սիպտակ թխած հաց առ, Գիքո.
Յիս քիզ ասի՝ գնա Կումիս
Ինչի՞ Կոդա կացար, Գիքո... և այլն:

Դրանից հետո մի օր Թումանյանին պատմեցի այդ մասին. նա շատ ծիծաղեց ու երգն անգիր արավ: Հետագայում, երբ մի անգամ մեծ խմբով գնացել էինք Ավճալա գյուղը զբոսանքի ու ճաշից հետո զվարճանում էինք, Թումանյանը ձեռքս բռնելով ասաց. «Արի', «Հացար Գիքո» պարենք». ու երկուսս երգելով պարում էինք, բոլորի ծիծաղը շարժելով:

Հյուրերի թվում կային մարդիկ, որոնք գուցե կամ ծանոթ չէին Թումանյանի նոր լույս տեսած գրվածքներին, կամ եթե ծանոթ էլ էին, չգիտեին, թե նա' է հեղինակը: Երբ մի օրիորդ իմ խնդրանքով երգեց Թումանյանի «Ներիր, ո'վ կույս, որ հուզեցի» երգը («Не брани меня, родная» ռոմանսի եղանակով) և ամբողջ սեղանը ծափահարեց, կրկին բաժակները ուղղելով Թումանյանին, նա շատ զգացվեց ու կարմրեց: Ոտքի կանգնած, բաժակը ձեռին, բանաստեղծը ժպտալով գլխով էր անում բոլոր սեղանակիցներին:

Ընթրիքից հետո նա մոտեցավ ինձ և, սեղմելով ձեռքս, ասաց.

- Ես լսել էի, որ Աբգար Հովհաննիսյանը լավ թամադա է, բայց (ծիծաղելով) դու էլ պակաս չես եղել նրանից:

1891 թ. ամառը հյուր էի գնացել Կոջոր՝ Հակոբ Ստեփանյանի մոտ, մի քանի օրով: Մի օր անտառում նստած կարդում էինք Թիֆլիսից ստացված թերթերը. «Մշակում» կարդացինք Ասիացու (Գր. Արծրունու) ֆելիետոնը, որտեղ ծաղրված էր Թումանյանի՝ «Մուրճ» ամսագրում լույս տեսած «Կուրծքս երբեմն եռ է գալիս և հուզվում...» բանաստեղծությունը: Մի օր Թիֆլիսում հարցրի Թումանյանին.

- Ուրի՞շ, ո՞նց ես, կուրծքդ ի՞նչպես է,- ու նկատելով նրա հարցական հայացքը վերջին խոսքերիս վերաբերմամբ, ավելացրի,- էլ սամովարի պես եռ չի՞ գալիս:

Թումանյանն սկսեց ծիծաղել ու ասաց.

- Սպասի՜, ես նրան ցույց կտամ «սամովարը»...(2)

1894 թ. ամառը ես և Անդրեաս Բարխուդարյանը վճռեցինք գնալ Անի. մեր մարշրուտն էր երկաթուղու Միխայլովո կայարանից (այժմ Խաշուրի) ոտքով գնալ Բորժոմ, Բակուրիան (այն ժամանակ այդ տեղերում դեռ երկաթգիծ չկար) և Ցխրա-Ծղարո սարով իջնել Ախալքալաքի (Ջավախեթի) բարձրավանդակը, այնտեղից Ալեքսանդրապոլ (Լենինական), Անի և վերադառնալ Ղարաքիլիսայով (Կիրովական) և Ջալալօղլով:

Թումանյանը նամակներ տվեց իր ծանոթ ախալքալաքցի ուսուցիչներին ուղղած, որ մեզ ամեն աջակցություն ցույց տան մեր ճանապարհորդության ժամանակ: Թիֆլիսի կայարանում մեզ ճանապարհ գցելիս հիշեց, որ մոռացել է նամակ տալ Ախալքալաքի գավառի Արագովա գյուղի ուսուցիչ Յովվյանի անունով և Ա. Բարխուդարյանի հիշատակարանում մատիտով գրեց հետևյալը. «Այս հիշատակարանը ում ձեռքում որ տեսնես, նրան իմ տեղը կընդունես, իսկ եթե նա սև և կարճահասակ չլինի, իմացիր, որ հիշատակարանը գողացել են իմ սիրելի Անդրեասից»:

Ախալքալաքում մենք սիրալիր ընդունելություն գտանք տեղական մտավորականության՝ ուսուցիչների կողմից, որոնց թվումն էին՝ Ջալալ Տեր-Գրիգորյանը, Գրիգոր Վանցյանը և Սեդրակ Աղաբալյանը. վերջիններս միացան մեզ, և մենք ուղևորվեցինք Ալեքսանդրապոլ:

Անիից վերադառնալով Ալեքսանդրապոլ, նամակ ստացանք Թումանյանից, իմացանք, որ նա գնալու է Ջալալօղլի և այնտեղ սպասելու է մեզ: Մենք բաժանվեցինք մեր ճանապարհորդակիցներից: Նրանք ուղևորվեցին Ախալքալաք, իսկ մենք շարունակեցինք մեր ճանապարհը դեպի Ղարաքիլիսա (որտեղ դեռ երկաթգիծ չկար): Մի օր մնալով Ղարաքիլիսա, Դվալ սարով անցանք Ջալալօղլի: Մյուս օրը եկավ և Թումանյանը:

Ջալալօղլում տեղի մտավորականները, որոնցից հիշում եմ ուսուցչուհի օրիորդ Ն. Գրիգորյանին և գյուղատնտես Սարգիս Սահակյանին, մի խնջույք կազմակերպեցին անտառում: Սահակյանը լավ նվագում էր կիթառ և երգում: Թումանյանի խնդրանոք նա մի քանի անգամ երգեց մի բան, որն սկսվում էր այս խոսքերով.

В стране свободы песни льются,
В стране неволи песен нет,
Там только стоны раздаются;
Свобода – жизнь, свобода – свет.

Խոսքերն ազդու էին և եղանակը՝ մելամաղձոտ: Թումանյանն ամեն անգամ լսելիս՝ հուզվում էր:

Մոտ մի շաբաթ մնացինք Ջալալօղլում, պտտելով շրջակայքը. Թումանյանն ու Անդ. Բարխուդարյանը գնացին Դսեղ, ես ուղևորվեցի Թիֆլիս(3):

Գիմնազիան ավարտելուց հետո 1895-1900 թթ. ես ուսումս շարունակում էի Պետերբուրգում:

Ամբողջ հինգ տարվա ընթացքում ամառները մի քանի անգամ եմ միայն պատահել Թումանյանին:

Թումանյանը շատ կենսուրախ ու սրամիտ մարդ էր: 1902 թ. ես ծառայում էի Բալախանում (Բաքու): Այդ ամառ ընտանիքս Մանգլիսի ամառանոցումն էր: Տասը օրով գնացի Մանգլիս: Մինաս Սամվելյանի հետ մի օր ձիով գնացինք Բելի-Կլյուչ (կամ Աղբուլաղ, այժմ՝ Թեթրի-Ծղարո): Այդ ամառ այդտեղ էին Ղազարոս Աղայանը և Թումանյանը:

Բելի-Կլյուչ մտնելիս պատահեցինք նրանց. շատ ուրախացան, համբուրվեցին մեզ հետ և խնդրեցին երեկոյան անպատճառ լինել իրենց մոտ՝ ընթրիքին: Դեռ ժամը 5-ն էր: Ես ասացի.

- Դեռ ժամանակ շատ կա, գնալու ենք Սամշվիլդո (Շամշուլդա) ամրոցը, այնտեղից կվերադառնանք և անպատճառ կանցնենք ձեզ մոտ՝ ընթրիքի:

Բայց մենք միայն ժամը 12-ին վերադարձանք: Թումանյանը գիտեր մեր իջնելու տեղը և այդ երեկո, նախքան մեր վերադարձը, երեք անգամ մտել էր այնտեղ և հարցրել մեզ: Երրորդ անգամ գալուց նա մի թուղթ էր թողել, որի վրա կարդացինք՝ «Անպիտան մանգլիսցիներ, վաղը ճաշին եկեք ներողություն խնդրելու»:

Մյուս օրը ճաշին գնացինք «ներողություն խնդրելու»: Ճաշի ժամանակ Ղ. Աղայանը երգեց իր «Քյոռօղլին»:

Այնուհետև միշտ բնակվելով Բաքվում, շատ քիչ անգամ եմ պատահել Թումանյանին:

*

Հուշերը գրի են առնված 1935 թ.:

1. Ցոմ-ցոմ պուրեբս նու իղիդի - վրաց.՝ Խմոր-խմոր հացեր մի' գնիր:

2. Խոսքը վերաբերում է Թումանյանի «Կուրծքս երբեմն եռ է գալիս և հուզվում…» բանաստեղծության (տպագրվել էր՝ «Մուրճ», 1891, N 6) մասին Գր. Արծրունու (Ասիացի) հրապարակած ֆելիետոնին (տե՛ս «Մշակ», 1891, N 90): Խնդիրն այն է, որ թեպետ «Կուրծքս երբեմն եռ է գալիս և հուզվում…» բանաստեղծությունը իսկապես թույլ է, անմշակ, այնուամենայնիվ, Ասիացու (Արծրունու) ծաղրը վերաբերում էր ոչ այնքան նոր գրական ասպարեզ մտնող երիտասարդ բանաստեղծին, որքան «Մուրճի» խմբագրին՝ Ավ. Արասխանյանին, ու նրա ամսագրում տպագրվող Լևոն Մանվելյանի, Ալ. Ծատուրյանի բանաստեղծություններին և ընդհանրապես «Արասխանյանցի բանաստեղծական նոր դպրոցի արտադրություններին…» («Մշակ», 1891, N 90):

Արծրունու այդ քննադատությունը պատասխան էր «Մշակի» մասին հայտնած Արասխանյանի աննպաստ կարծիքի («Մուրճ», 1899, N 1, էջ 11-13):

3. Նույն ճանապարհորդության մասին տե'ս Օլգա Թումանյանի և Արշակ Բարխուդարյանի հուշերը և ԹԵԺ V, 94:

* * *

**ԲԱԺՆՈՒՄ ԿԻՐԱՌՎԱԾ ՀԱՄԱՌՈՏԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ**

ԳԱԹ - Գրականության և արվեստի թանգարան

ԹԵԺ - Հովհ. Թումանյան, Երկերի ժողովածու 6 հատորով, ակադեմիական հրատարակություն, Երևան, 1940-1959. նշված են ըստ հատորների՝ ԹԵԺ I, ԹԵԺ II և այլն

***«Թումանյանը ժամանակակիցների հուշերում», Երևան, Հայկական ՍՍՀ ԳԱ հրատարակչություն, 1969, էջ 374-378, 907, 909, 943***

*ՍՈՒՍԱՆՆԱ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ*

## ԹՈՒՄԱՆՅԱՆԸ՝ ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐԻ ԿՈՎԿԱՍՅԱՆ ԸՆԿԵՐՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԴԻՐ

Հայ նոր գրականության մեջ Հովհ. Թումանյանի վիթխարի դերը պայմանավորվում է ոչ միայն նրա թողած գրական ժառանգությամբ, այլև նրանով, որ Թումանյանը դարձավ իր ապրած շրջանի գրական ընթացքի ղեկավարն ու շարժիչ ուժը: Հասարակական գործունեությամբ Թումանյանը հափշտակվում էր «մոլեռանդի ֆանատիկոսությամբ»[74]: Այդ են վկայում նրա ժամանակակիցները: Ավ. Իսահակյանը, օրինակ, գրում է. «Նրա սիրտը անկուշտ էր և անհագ, ուզում էր ամեն բան ունենալ, ամեն բանի հասնել, ամեն տեղ լինել: Ուզում էր և գրել, և հասարակական, և քաղաքական գործիչ լինել, այն էլ, իհարկե, առաջին կարգի: Ամփոփվելու ժամեր չուներ... Հասարակությունը քաշում էր նրան դեպի իրեն, ինքն էլ ձգտում էր դեպի նա, և բոլորվում էր նրա շուրջը»[75]:

Եվ, իրոք, Թումանյանը եղել է իր պետականություն չունեցող երկրի պետական գործիչը, այնպիսի մի հեղինակություն, որի խոսքն ավելի մեծ ազդեցություն է ունեցել ժողովրդի վրա, քան կարող էր ունենալ պետականորեն սահմանված որևէ օրենք կամ հրաման: Ինչպես նկատում է Տիցիան Տաբիձեն, «Հովհաննես Թումանյանը իսկական նահապետի ազդեցություն ուներ հայ ժողովրդի վրա: Նրա խոսքը լսում էին»[76]:

Թումանյանի գրական-հասարակական գործունեությունը բխում էր ժամանակի պատմահասարակական հանգամանքներից: Վստահ կարելի է ասել, որ իր ժամանակի գրողներից ամենից շատ Հ. Թումանյանն է հետաքրքրություն ստեղծել դեպի գրականությունը և նպաստել հայ գրականության և հայ գրողի ժողովրդականացման, քանի որ նա, իրոք, որ «կենտրոնաձիգ անձնավորություն էր...»[77]:

Թումանյանը այնքան է մտահոգված եղել գրականության խնդիրներով, որ անգամ սովորական հավաքույթներին, նույնիսկ խնջույքներին, որոնց մշտական անզուգական «ամենայն հայոց թամադան» է եղել, աշխատել է տալ գրական բնույթ: Ինչպես վկայում է Գևորգ Մեսյանը, «չկար

---

[74] «Թումանյանը ժամանակակիցների հուշերում», Երևան, 1969, էջ 118:
[75] Նույն տեղում, էջ 20:
[76] Նույն տեղում, էջ 729:
[77] Նույն տեղում, էջ 11:

գրողների միություն, չկար գրողների ակումբ, բայց Թումանյանի մասնակցությամբ եղած քեֆերը... մի տեսակ գրական հավաքույթներ էին կարծես»[78]:

Հովհ. Թումանյանի մեջ վաղ են արթնացել ոչ միայն գրողն ու արվեստագետը, այլև գրական-հասարակական գործիչը: Դեռ Ներսիսյան դպրոցում սովորելու տարիներին նա մասնակցել է դպրոցում կազմակերպվող գրական հավաքույթներին, օրինակ՝ Վրեն Տաշրացու, Հյուսյան Մեսրուզի և այլ ընթերցասեր պատանիներից կազմված գրական խմբակի պարապմունքներին: 1885-86 թթ. նա Ան. Աբովյանի, Ե. Խարազյանի և այլ գրասերների շրջանում էր: 1887-88 թթ. Թումանյանի մասնակցությամբ ստեղծվեց գրական մի փոքրիկ միավորում՝ «հնգյակ»[79], որի անդամներն էին Հովհաննես Թումանյանը, Դավիթ Շահլամյանը, Արամ Առաքելյանը, Գրիգոր Վանցյանը և Արսեն Ղլտճյանը: Շաբաթ օրերին տեղի ունեցող նրանց պարապմունքների զգալի մասը 1888 թ. ապրիլից տեղի են ունեցել Թումանյանի բնակարանում:

1880-ական թթ. վերջերին և 90-ական թթ. սկզբներին արվում են գրական ֆոնդ և հայ գրողների միություն ստեղծելու փորձեր, որոնց մասնակցում է նաև Հովհ. Թումանյանը: Այս գործում նշանակալից դեր են խաղացել Ավ. Արասխանյանը և Ե. Շահազիզը: Թումանյանը 1892 թ. գրական ֆոնդի հիմնադրման նպատակով Արասխանյանի հրավիրած ժողովի քարտուղարն էր: Նա մասնակցել է նաև՝ նույն նպատակը հետապնդող՝ 1893 թ. հոկտեմբերի 2-ի ժողովին[80]:

Չունենալով գրական որևէ հաստատություն, բայց զգալով գրականության հարցերի շուրջը համատեղ խորհելու ու գործելու կարիք, հայ գրողները ժողովներ էին հրավիրում հենց իրենց բնակարաններում: Իսկ Թումանյանի բնակարանը, որտեղ էլ որ այն գտնվելու լիներ՝ Բեհբության թե Վոզնեսենսկայա փողոցներում, միշտ եղել է հայ գրողների սիրելի հավաքատեղին: Հայտնի է 1897 թ. հունվարի 18-ի ժողովը Թումանյանի բնակարանում, որին մասնակցում էին 12 հոգի, այդ թվում Շիրվանզադեն, Մուրացանը, Փափազյանը, Պռոշյանը, Աղայանը... Այս մասին

[78] Նույն տեղում, էջ 629:
[79] Տե՛ս **Ա. Ինճիկյան,** Հովհաննես Թումանյան. Կյանքի և ստեղծագործության պատմությունը, Երևան, 1969, էջ 221:
[80] Ավելի մանրամասն տե՛ս Լ. Կարապետյանի «Նյութեր Հ. Թումանյանի հասարակական գործունեությունից»,- «Պատմա-բանասիրական հանդես», 1979, N 3, էջ 147-154:

ունենք իր՝ Հովհ. Թումանյանի վկայությունը: Ահա թե ինչ է գրում նա 1897 թ. մարտի 5-ին Սեդրակ Բալայանին և Արամ Նազարեթյանին հղած իր նամակում. «...Ինձ մոտ հրավիրեցի գրողների մի խումբ, մի գրական (բելետրիստների) շրջան կազմելու, հարկ եղած ժամանակ գրական մարդկանց և գրականության շահերը պաշտպանելու և գրական զանազան խնդիրներ հարուցանելու և վճռելու... 6-7 ժողով ենք ունեցել և գուցե փոփոխվի, բայց կհարատևի (V, 129): Նույն շրջանում այդպիսի ժողովներ տեղի են ունեցել Պ. Պռոշյանի տանը: Նման մի «տասը ժողով» էլ հրավիրվում է դարձյալ Հ. Թումանյանի տանը 1898 թվին: Հայ գրողների կազմակերպության բացակայությունը մտահոգել է Թումանյանին: Այդ մասին նա գրում է իր 1899 թ. մայիսի 6-ի նամակում. «Դժբախտաբար մեր գրողների մեջ կապ ու հարաբերություն չկա, այնինչ մենք ունենք ընդհանուր ցավեր ու շահեր, որ կարևոր են դարձնում այդ հարաբերությունը, մենք զգացմունքներ ու մտածմունքներ ունենք, որ միայն իրար կարող ենք հայտնել ու խոսել» (V, 146): Նույն նամակում Թումանյանը հույս է հայտնում, որ գրողների միավորում ստեղծելու գործը «մոտիկ ապագայում, հարկավ, գլուխ կգա» (նույն տեղում):

1896 թ. Թումանյանը հաճախակի մասնակցում է բժիշկ Ար. Զարգարյանի բնակարանում կազմակերպված դասախոսություններին, որոնցից մեկի ժամանակ ծանոթանում է Փ. Վարդազարյանին և իշխանուհի Մարիամ Թումանյանին: «Այդ օրվանից,- գրում է Ար. Զարգարյանը,- ինքնաբերաբար կազմվեց մի չորրորդություն»[81]: 1897 թ. վերջերից իշխանուհի Թումանյանն իր տանը կազմակերպում է «հինգշաբթիներ»[82], որոնց մասնակցում են Լ. Շանթը, Ար. Զարգարյանը, Փ. Վարդազարյանը, Տիգրան Հովհաննիսյանը, բժիշկ Արծրունին և ուրիշներ: Գրական այդ սալոնի մտահոգության կենտրոնում էր գրողների միություն և գրական ֆոնդ հիմնելու խնդիրը: Այդ մասին իշխանուհի Թումանյանը գրում է. «Մեր հինգշաբթի երեկոներին հաճախ էինք խոսում գրողների մի ընկերություն հիմնելու, գրական ֆոնդ ստեղծելու և գրողների երկերը այդ ֆոնդի գումարներով հրատարակելու շուրջ: Մի քանի ամիս մենք զբաղվեցինք դրանով, ծրագիր կազմեցինք և մտածում էինք, թե ինչպես գլուխ

---

[81] «Թումանյանը ժամանակակիցների հուշերում», էջ 274:

[82] **Ա. Ինճիկյան,** Հովհաննես Թումանյան. Կյանքի և ստեղծագործության պատմությունը, էջ 412:

բերենք գործը»[83]: Այս ընթացքում Թումանյանը նույնպես ջանք չի խնայում օժանդակելու գրական ընկերություն հիմնելու գործին: Նա ամեն կերպ աշխատում է բարձրացնել գրականության վարկն ու նշանակությունը, լուծել գրողներին նյութապես ապահովելու խնդիրը, մի հարց, որ 90-ական թթ. դրվում էր մեծ սրությամբ: Այդ տարիներին շարունակվում է պայքարը գրական ֆոնդ և գրողների ընկերություն հիմնելու համար և այդ գործի առաջամարտիկներից մեկը դառնում է Հովհ. Թումանյանը: Եթե անգամ նախաձեռնողը լինում էր ոչ թե նա, այլ մեկ ուրիշը, միևնույն է՝ առաջինը նրան էին տեղյակ պահում պայքարի ընթացքի մասին: Այդ են վկայում Ս. Շահազիզի, Ավ. Արասխանյանի և այլոց նամակները:

90-ական թթ. գրական ֆոնդ և ընկերություն հիմնելու փորձերը ձախողվում են: Գրականության հետ կապված բոլոր հարցերը դարձյալ թողնվում են ինքնահոսի, բայց և այնպես պայքարը չի դադարում: Օրինակ՝ տպագրվում են հայ գրողի նյութական աննախանձելի վիճակին նվիրված՝ Խաչատուր Մալումյանի հոդվածները, որտեղ կարդում ենք. «...Գրողը կամա-ակամա մոռանում է, մի կողմ է թողնում իր գլխավոր զենքը՝ գրիչը, իր գլխավոր պարապմունքը՝ գրելը, և... դառնում է անտարբեր, և միանգամայն անարդյունավետ: Դա է պատճառը, որ մեր գրողներից շատերը դեռ կենդանի ժամանակ մեռած են եղել հայոց գրականության համար»[84]: Բայց այս հարցը բարձրացվում է «Մշակում»: «Նոր դարը», «Արձագանքը», ինչպես նաև մամուլի այլ օրգաններ ևս, այս հարցում արտահայտում էին գրական-քաղաքական որոշակի հոսանքների տեսակետները:

Թումանյանը իր արդարացի դժգոհությունն է արտահայտում ժամանակի մամուլից, որն իր սուբյեկտիվ վերաբերմունքով «թշնամական» էր թե՛ գրողի և թե՛ ճշմարիտ գրականության նկատմամբ. «Մեր լրագիրները փեշակ են շինել հալածել ու հայհոյել գրականությունն ու գրողներին, իհարկե, միշտ քննադատության անունով, գրականության վրա սրտացավ հսկողի հավակնությամբ, միշտ անաչառություն աղաղակելով... Այդ կողմից միշտ աչքի է ընկել «Մշակ» լրագիրը, բայց «Նոր-Դարը» ճգնում է անպատճառ սրանից էլ խիստ ու խելոք երևալ: Գրականության մասին խորհրդածություն է անում, հարցեր է տալիս ու իրան-իրան պատասխա-

[83] «Թումանյանը ժամանակակիցների հուշերում», էջ 478:
[84] «Մշակ», Թիֆլիս, 1892, N 145:

նում: Իհարկե, շատ անմխիթար պատասխաններ, հուսահատական եզրակացություններ, նախատինքներ ու խրատներ մեկը մյուսից ավելի անհեթեթ ու անճոռնի»,- գրում է Թումանյանը 1899 թ. «Մեր գրական վարք ու բարքից» հոդվածում (IV, 51):

Հովհ. Թումանյանի դժգոհությունը, որ քանիցս արտահայտվել է դեռևս 1890-ական թթ. սկզբին, հետևանք էր մամուլում արտահայտված այն տեսակետների, որոնք մերժում էին հայ գրողներին նյութապես օգնելու և գրական ֆոնդ ստեղծելու կարևորությունը: Օրինակ, նույն «Մշակը», որի էջերում 90-ական թթ. բարձրացվում էին այդ հարցերը, 1897 թ. փետրվարի 13-ի «Գրողներին օգնելու գործը» առաջնորդողում գրում է. «Մեր գրականության մեջ հասարակության վրա մունետիկ է դնում և հասարակական նպաստ պահանջում է թե երիտասարդ գրողը, որը ուժ ունի սեփական աշխատանքով և պարապմունքով ապրելու, թե զառամյալ գրողը, որն արդեն անընդունակ է աշխատանքի և անպայման կարոտ աջակցության»[85]: Եվ այս հոդվածի առիթն այն է, որ 1897 թ. Բաքվի Մարդասիրական ընկերությունը որոշել էր օգնել Հ. Թումանյանի, Շիրվանզադեի և Ղ. Աղայանի ընտանիքներին: «Մշակն» այդ փաստը համարում է «բացարձակ անհամակրելի», «մեծապատիվ մուրացկանություն», «ծրիակերություն», և զարգացնում է այն միտքը, թե եթե գրողը ունի կողմնակի աշխատանքով իր ապրուստը հայթայթելու հնարավորություն, ապա իրավունք չունի «աչք տնկելու հասարակական փողերի վրա»[86]: Սրա պատասխանը տպագրվում է «Տարազում», ուղիղ մեկ տարի հետո, 1898 թ. փետրվարին (N 5), ուր «Մշակի» վերոնշյալ առաջնորդողը համարվում է «մի չտեսնված սոփեստություն, մի անզուգական խայտառակություն»: Հոդվածի հեղինակը՝ Սեդրակ Թառայանը, դիմելով «Մշակի» խմբագիրներին՝ Ա. Քալանթարյանին ու Խ. Մալումյանին, ասում է. «Տեղն է, այո, տեղն է Աղայանցին, տեղն է Շիրվանզադեին, եթե այդ խելագարները, այդ Դոն-Քիշոտները մի մսխալ «խելք» (կարդա «անազնվություն») ունենային իրանց գլխում փոխանակ հայ գրականության, հայ կյանքի մասին մտածելու հաստատվեին նավթային երկրում, և մակլերություն անեին, այսօր սրանք Կասպից ծովի ափին եռհարկանի տներ, և Բալախանում շատրվաններ կունենային: ...Դուք զարմանում եք, թե ինչու երիտասարդ

---

[85] «Մշակ», 1897, N 18:
[86] Նույն տեղում:

գրողը չէ կամենում կողմնակի պարապմունք ունենալ: Շատ պարզ է, թե ինչու, որովհետև չէ կարելի սիրել համ աստծուն, համ էլ մամոնային»[87]:

«Մշակի» նույն հոդվածի դեմ Թումանյանը ևս արտահայտել է իր զայրույթը նամակներից մեկում, որտեղ նա «Մշակի» խմբագիրներին անվանում է «հրապարակախոզներ», «դուքանչիներ», որոնք իրենց մտավորական համարելով, միաժամանակ, «հրապարակավ ասում են, թե գրականությունը դեռ գործ չի և գրողը քանի ֆիզիքական ույժ ունի, պետք է գործ, այսինքն՝ կողմնակի պարապմունք ունենա, ահա դրանք հաշտեցնում են գրականությունն ու տերտերությունը..., և ուրանում են գրողի տանջանքն ու տառապանքը, այն նյարդային ցնցումները, քայքայումն ու հոգնածությունը, որ իրան հետ բերում է սրբազան կոչված ոգևորությունը» (V, 128):

Դեռևս 1890 թ., ձգտելով ազատվել և գրական մարդկանց ազատել հայ կողմնակալ մամուլի ազդեցությունից, Թումանյանը գրում է. «Ինձ, իրավն ասեմ, խեղդում է այս մթնոլորտը, չկա ընկերական շրջան, չկա գրականության մասին խորհող մարդոց շրջան» (V, 18): Այդպիսի շրջան ստեղծելու երազանքի արդյունքն են թե՛ «հինգշաբթիները», թե՛ «Վերնատունը» և թե՛ Հայ գրողների կովկասյան ընկերությունը:

90-ական թթ. ասպարեզ եկող գրական սերունդը այլևս չէր գնում «Մշակի» ետևից, չէր հարում նրա էջերում արտահայտվող գաղափարախոսությանը: Ավելին՝ փորձում էր պայքարել նրա դեմ: Նաև սրանով է պայմանավորվում «Վերնատան» ծնունդը: Հենց սկզբից «Վերնատունը» աշխատում էր ազատագրվել կողմնակալ մամուլի ազդեցությունից: «Եվ ամենքի իդեալն էր իրանց սրբության սրբոցի ազատագրությունը հրապարակախոսության լծից: Գրականությունը պիտի ազատ ու անկախ լիներ, դրված նրան պատշաճող բարձրության վրա իբրև մի ազգի ամենաառաջնակարգ ստացվածքը»[88]: Այսպես՝ «Վերնատան» հիմնադրումը Լեոն բացատրում է նաև գրականության ինքնորոշման, հրապարակախոսության լծից ազատագրվելու՝ ժամանակի պահանջով:

«Վերնատունը» նշանակալից դեր կատարեց հայ գրականության մեջ և «հինգշաբթիների» հետ միասին հանդիսացավ մի յուրօրինակ փուլ Հայ գրողների կովկասյան ընկերության հիմնադրման ճանապարհին:

[87] «Տարազ», 1898, N 84-85:
[88] «Թումանյանը ժամանակակիցների հուշերում», էջ 62:

«Վերնատունն» ըստ գրականագետ Ա. Ինճիկյանի՝ հիմնադրվել է 1899 թ. դեկտեմբերին[89]: «Վերնատան» մշտական անդամներն են եղել Թումանյանը, Ղ. Աղայանը, Լ. Շանթը, Ավ. Իսահակյանը, Դ. Դեմիրճյանը՝ բոլորն էլ դարասկզբի հայ գրականության խոշորագույն դեմքեր, ինչպես նաև Նիկոլ Աղբալյանը՝ այդ շրջանի հայտնի բանասերներից և քննադատներից մեկը, որն ասես գալիս էր ամբողջացնելու գրական այդ ընտանիքը, ընդգծելու գրականության ու քննադատության անխզելի կապն ու միասնությունը: Նրանց բոլորի վկայությամբ «Վերնատան» ավագն ու առաջատարը եղել է Հովհ. Թումանյանը:

Վերնականները միմյանց հետ կապված են եղել մի շարք սկզբունքներով, որոնցից գրականագետ Ինճիկյանը առանձնացնում է հինգը.

ա) Գրական նախորդների վերագնահատություն.

բ) Հայ դասական գրականության արժեքների վերհանումը և լավագույն ավանդույթների զարգացումը.

գ) Համաշխարհային դասական գրականությունը որպես ուղենիշ.

դ) Ժողովրդական բանահյուսությունը որպես գրականության հիմք և ներշնչման աղբյուր.

ե) Գրականություն և ժողովրդայնություն[90]:

Բացի այս խնդիրներից, «Վերնատունը» պարբերաբար քննարկում է նաև այլ հարցեր, այդ թվում գրողի և քննադատության հարաբերության, գրականության տեսության, գրական-հասարակական կազմակերպություն հիմնելու և գրականության մշակների վիճակը թեթևացնելու հարցերը, հասարակական-քաղաքական երևույթներ, համաշխարհային մշակույթի պատմության դասերը, տարբեր ազգերի պատմությանը վերաբերող խնդիրներ և այլն: «...Խոսում էինք ազգերի պատմությունից, ժողովուրդների կյանքից, արվեստներից, փիլիսոփայությունից և մանավանդ գրականությունից»,- գրում է Ավ. Իսահակյանը[91]: Անդրադարձել են, օրինակ, դրամայի ժանրային առանձնահատկություններին, Ռ. Պատկանյանի, Հ. Հովհաննիսյանի, Ղ. Աղայանի, Րաֆֆու, Խ. Աբովյանի, Սայաթ-Նովայի ստեղծագործություններին, նրանց և առհասարակ գրականության գեղարվեստական առանձնահատկություններին, գրականության ազգա-

---

89 «Գարուն», 1979, N 5, էջ 68:

90 Նույն տեղում, էջ 69-70:

91 «Թումանյանը ժամանակակիցների հուշերում», էջ 11:

յին ծնին և ակունքներին: Ինչպես խոստովանում է Ավ. Իսահակյանը, նրա հիշողության մեջ անջնջելի հետք է թողել «Գրականությունը հայրենիք չունի, բայց յուրաքանչյուր հայրենիք իր գրականությունն ունի»[92] սկզբունքային դրույթը, որն ընկած է եղել «Վերնատան» գործունեության հիմքում:

Գրական սալոնը պարբերաբար քննարկել է նաև իրենց՝ «Վերնատան» անդամների գեղարվեստական գործերը, ստեղծագործական ծրագրերը: Այդպիսի պարապմունքներին մեծ կարևորություն է տվել հատկապես Հովհ. Թումանյանը: Նա, ավելի, քան մյուս վերնականները, սիրել է իր մտորումները կիսել գրչակից ընկերների հետ և համոզված եղել, որ յուրաքանչյուր գրողի և գրականության զարգացման համար անպայման կարևոր են գրողների փոխադարձ կապերն ու շփումը: Դ. Դեմիրճյանը դիպուկ է նկատել. «Կարելի է ասել՝ Թումանյանը ստեղծագործում էր հրապարակորեն, մի տեսակ կոլեկտիվ կերպով»[93]: Թումանյանի բնավորության այս գիծը կարևոր նշանակություն ունեցավ նաև հետագայում, երբ նա ղեկավարում էր Հայ գրողների կովկասյան ընկերությունը:

Իհարկե, միշտ և բոլոր հարցերում չէ, որ վերնականները համաձայնվում էին միմյանց հետ: Ավելին՝ հաճախ էին տեղի ունենում կրքոտ բանավեճեր, որոնցից էր, օրինակ, Դ. Աղայանի և Դ. Դեմիրճյանի միջև ծագած վեճը հին ու նոր սերունդների փոխհարաբերության հարցի շուրջ: Քննարկման առարկա դարձնելով գրական ավանդների խնդիրը, Ղ. Աղայանը այդ երկու սերունդների մեջ սկզբունքային որևէ հակամարտություն չէր տեսնում, իսկ Դեմիրճյանը պնդում էր միանգամայն հակառակը:

«Վերնատունը» իր գոյությունը պահպանեց 6-7 տարի և որոշ իմաստով հանդիսացավ նախապատրաստական փուլ Հայ գրողների կովկասյան ընկերության հիմնադրման համար:

900-ական թթ. հայ գրականության զարգացման որոշակի փուլ էր, իր բնորոշ առանձնահատկություններով. «Վերնատունը» այդ շրջանում ստեղծված գրական-ազգային խմբավորումներից մեկն էր միայն, թեև ամենից արժեքավորը և նշանակալիցը: Այս նույն շրջանում, երբ կառավարությունը թույլ չէր տալիս հիմնել գիտական-ազգագրական ընկերություններ, Երվանդ Լալայանը հիմնադրում է ազգակցական ընկերակցութ-

---

[92] Նույն տեղում, էջ 12:

[93] **Դերենիկ Դեմիրճյան,** Թումանյանի հետ, Երևան, 1969, էջ 51:

յուն՝ առևտրական հիմքերի վրա: Այդ ընկերակցությանն անդամագրվում են Հովի. Թումանյանը, Պ. Պռոշյանը, Գևորգ Ասատուրը, Գևորգ Ղարաջյանը և ուրիշներ: Վարչության նախագահն էր Մելիք-Ազատյանը: Հետագայում Լալայանին հաջողվում է ընկերակցությունը դարձնել ընկերություն: Վարչության նիստերը տեղի են ունենում Լալայանի բնակարանում: Այս խումբը նույնպես, ինչպես վկայում է Գևորգ Ասատուրը, որոշել էր կազմակերպել գրական ընկերություն. «Մենք նպատակ ունեինք,- ասում է նա,- մեր գրական խմբակը ընդարձակել և վերածել գրական ընկերության»[94]: Այսպես, ևս մի խմբակ, որին մասնակցում էր Թումանյանը և որի նպատակներից մեկը գրական ընկերության հիմնադրումն էր: Անշուշտ, այլ կերպ լինել չէր կարող, քանի որ վարչության անդամները հիմնականում գրողներ էին կամ գրականության շահերով մտահոգված անձինք: Սակայն գրողների ընկերություն հիմնելու նրանց ցանկությունը չիրականացավ:

Նույն ժամանակ «հնգյակի» անդամները նույնպես շարունակում են գրողների միության և գրական ֆոնդ հիմնելու իրենց աշխատանքները: Այդ նպատակով իշխանուհի Մ. Թումանյանը 1904 թ. մեկնում է Բաքու և այդ հարցով դիմում Ներսես Աբելյանին: Վերջինիս և Սամսոն Հարությունյանի ջանքերով Բաքվում Ս. Հարությունյանի բնակարանում հրավիրվել է ժողով, ուր աշխույժ մտքերի փոխանակությունից պարզվել է, որ գրական ընկերություն հիմնելու առաջարկությանը համակրանքով են վերաբերվում նաև Բաքվի հայ մտավորականները[95]:

Այդ թ. Թիֆլիսի առաջնորդարանում Գարեգին Հովսեփյանի հրավերով տեղի է ունենում նույն նպատակը հետապնդող ժողով Հ. Թումանյանի մասնակցությամբ: Սակայն քաղաքական արտակարգ պայմանների հետևանքով ընկերությունն այդպես էլ չի հիմնվում: Մոտենում էր ռուսական առաջին հեղափոխությունը: Մարիամ Թումանյանը գրում է. «...մենք առժամանակ վճռեցինք հետաձգել գրողների ընկերության կազմակերպումը, որովհետև ընդհանուր քաղաքական դրությունը այնպես էր խառնվել, որ կառավարությունը դժվար թե հաստատեր այդ տեսակ մի ընկերություն»[96]:

---

[94] «Թումանյանը ժամանակակիցների հուշերում», էջ 353:
[95] Հմմտ. նույն տեղում, էջ 478:
[96] Նույն տեղում, էջ 479:

1907 թ. ռեակցիայի տարիներին «իրար ետևից զանազան ընկերություններ են երևում միշտ կուլտուրական կամ հրատարակչական» (V, 206): Դրանցից մեկն էր 1907 թվին կազմված Ուսուցչական միությունը, որը դիմում էր Հովհ. Թումանյանի օգնությանը: Այդ տարիներին Թիֆլիսում ստեղծվող գրեթե յուրաքանչյուր հասարակական կազմակերպություն դիմում էր բանաստեղծի օգնությանը, որովհետև բոլորն էլ գիտեին, որ Թումանյանը միջամտում և մասնակցում էր ոչ միայն գրականության, այլև հայ ազգային կուլտուրայի, լեզվի, գիտության զարգացմանը նպաստող յուրաքանչյուր գործի: 1909 թ. աշնանից, երբ արտասահմանից վերադառնում է Շիրվանզադեն, Հովհ. Թումանյանի տունը կրկին դառնում է հայ գրողների սիրելի հավաքատեղին: 1910 թ. Հովհ. Թումանյանը պարբերաբար ներկա է լինում Սերգեյ Գորոդեցկու ղեկավարությամբ Թիֆլիսում գործող «Цех поэтов» ընկերության չորեքշաբթիներին, Ուսուցչական միության ամենամյա համագումարներին: Թումանյանի մասնակցությամբ գրական երեկոներ են տեղի ունենում նաև Վարվարա Մելիք-Հայկազյանի տանը:

1911 թ. դարձյալ ամբողջ սրությամբ է դրվում հայ գրողի նյութականի հարցը: «Ընկեր» թերթում լույս է տեսնում հոդվածների մի ամբողջ շարք: Հակոբ Գենջյանը, շեշտելով գրական բարձր ճաշակ դաստիարակելու, ճշմարիտ ստեղծագործությունը գնահատելու անհրաժեշտությունը, հասնում է ծայրահեղության՝ հայ գրականության զարգացումը կապելով միայն գրողի նյութականի հետ: Նույն մտահոգությամբ Հ. Խոջիկը գրում է իր «Անխիղճ շահագործություն» հոդվածը[97]: Լույս են տեսնում Ալ. Ազատյանի «Գրական վարձատրություն»[98], Կ. Բուրչաքյանի «Գրողի նյութական դրությունը»[99] հոդվածները:

Կրկին արծարծվում է գրողների միավորում ստեղծելու հարցը: Այս հարցերին են վերաբերում 1911 թ. մարտին Մեսրոպ եպիսկոպոս Տեր-Մովսիսյանին գրած Թումանյանի նամակի հետևյալ տողերը. «Մոտիկ առաջիկայում ուզում եմ մի խորհուրդ հրավիրել մեր գրողներից ու գործիչներից» (V, 342): «Ֆիլիպը մի նոր ծրագիր է առաջարկում մեր հրատարակչությունների համար» (նույն տեղում): Դարձյալ ծրագրեր, փորձեր,

[97] «Ընկեր», 1911, N 4:
[98] Նույն տեղում, N 11:
[99] Նույն տեղում, N 13:

որոնք այս անգամ անկատար են մնում բանաստեղծի բանտարկության ու դատավարության երկար ընթացքի պատճառով:

Դատարանով արդարացվելուց անմիջապես հետո, որը թերթերում հրապարակվեց 1912 թ. մարտին, Թումանյանը հեռագիր է ստանում Մոսկվայի հայ գրական խմբակից: Ալ. Ծատուրյանի ղեկավարած այդ սալոնը Թումանյանին հրավիրում է Մոսկվա: Պետերբուրգից Թիֆլիս վերադարձի ճանապարհին, ապրիլին Թումանյանը երեք օր հյուրընկալվում է Մոսկվայի գրական հասարակայնության կողմից: Այնտեղ Թումանյանի պատվին կազմակերպվում են գրական երեկոներ: Նույն ամսին Թումանյանը վերադառնում է Թիֆլիս: Մառին ուղղված ապրիլի 26-ի նամակից տեղեկանում ենք, որ նա մեծ ցանկություն է ունեցել տեղում մասնակցելու հայոց պատմագրության և հայագիտության ֆոնդի կազմակերպմանը և ափսոսանք է հայտնում, որ չի հասցրել: Այդպիսի ֆոնդ ստեղծելու առաջարկությամբ հանդես էր եկել Պետերբուրգի հայ գաղութը: Այդ նպատակով ստեղծվել էր հատուկ մասնաժողով, որի մեջ մտնում էին Ն. Մառը, նկարիչ Վ. Սուրենյանը, Ռ. Պատկանյանը և ուրիշներ: Նրանք հանդես եկան Էջմիածնի ճեմարանը հայագիտության հայկական ակադեմիա դարձնելու և գրական ֆոնդի հարցը պատմագրական և հայագիտական ֆոնդերի հետ միաժամանակ դնելու առաջարկով, որն իր պաշտպանությունը գտավ Մոսկվայի հայկական գաղութում: Մոսկվայում լսելով այդ մասին և վերադառնալով Թիֆլիս, Թումանյանը մտահոգվում է խնդիրը «հաստատ հողի վրա դնելու և ծրագրից գործին անցնելու» հարցով: Նա մեծ հույսեր է կապում պրոֆ. Մառի հետ. «Ինչ խոսք, որ այս ամենի մեջ Դուք լինելու եք գլխավոր դերակատարը և ես սրտանց ուրախ եմ, որ Հայկական Ակադեմիայի և հայագիտության գործը մեր մեջ հաջողվելու է Ձեր ձեռքով, կապվելու է Ձեզ հետ, որ այնքան վայելուչ ու գեղեցիկ է գալիս Ձեր սիրելի անձնավորությանը, Ձեր դիրքին ու հայագիտությանն արած անգնահատելի թանկագին ծառայություններին և Ձեր մեծ պատրաստությանը» (V, 271):

Հովհ. Թումանյանը և հայ մշակույթի այլ գործիչներ ոգևորված էին ազգային ֆոնդի ծրագրերով: Պատմագրության և հայագիտության ազգային այդ ֆոնդի նպատակն էր հավաքել, թարգմանել, ուսումնասիրել և հրատարակել հայ և այլազգի պատմագիրների տված տեղեկությունները հայերի մասին, տարբեր արխիվներում գտնվող՝ հայոց պատմությանը

վերաբերող նյութեր և փաստաթղթեր, հայոց վանքերի ու հին հուշարձանների արձանագրություններ և այլն:

Հայ պարբերական մամուլը ընդհանուր առմամբ ողջունում է հայ տպագրության 400-ամյակը, հայագիտության ու պատմագրության ազգային ֆոնդ ստեղծելով, հոբելյանը հավերժացնելու Պետերբուրգի հայ գաղութի առաջարկը: Հ. Առաքելյանն, օրինակ, դիմելով գործի նախաձեռնողներին ասում է. քանի որ «գործի գլուխն են կանգնած պրոֆ. Մառի, Ադոնցի և Վարդանյանի պես գիտության մեջ հեղինակավոր անձինք, պետք է ողջունել այդ նախաձեռնությունը»[100]:

Հովհ. Թումանյանը, որ մեծ շահագրգռվածություն էր հանդես բերում այս գործում, ազգագրական և հայրենագիտության վերաբերյալ նյութեր հավաքելու և տարեկան մեկ-երկու ժողովածու հրատարակելու առաջարկությամբ դիմում է Կովկասի հայ ուսուցիչների միությանը: Այդ առաջարկությունն ընդունվում է միության 1912 թ. հունիսի 11-ին Գայանյան դպրոցում տեղի ունեցած ընդհանուր ժողովում: Ինչպես վկայում է «Հորիզոն» թերթի տպագրած հաղորդագրությունը՝ բանաստեղծն ինքն է հանձն առել հոգալ ժողովածուների հրատարակման ծախքերը[101]: Թումանյանը այդ պահին այնքան էր ոգևորված ազգային ֆոնդի և Հայկական ակադեմիա հիմնելու գաղափարով, որ գրական հարցը, ելնելով ազգի կուլտուրական զարգացման ընդհանուր շահերից, նվազ կարևոր էր համարում. «Միայն գրական ֆոնդը. էդ շատ է քիչ, և որքան գիտեմ, լավ էլ չի ծրագրված: Վերջապես մեկը դա. բայց դրանից ավելի լայն է Պետերբուրգի Հայոց պատմագրության ու հայագիտության կամ մի խոսքով հայագիտության Հայկական Ակադեմիայի խնդիրը ինչ ձևով որ կհաջողի: Եվ շատ ավելի լուրջ է նրանց կազմը: Եվ ավելի մեծ տրամադրություն կա Պետերբուրգի և Մոսկվայի հարուստների մեջ մի մեծ գործ անելու էս մեծ տոնին (V, 373): Կամ. «...բայց չմոռանաս Պետերբուրգում էդ հայագիտության թե Հայկական Ակադեմիայի խնդիրը... Գիտություն, գիտություն, տգիտության մեջ տառապում ենք: Էսքան էլ տգիտություն, ոչ մեզանից բան գիտենք, ոչ մեր հարևաններից, ոչ աշխարհից: Ինչի՞ նման է» (նույն տեղում): Նույնը կարդում ենք նաև 1912 թ. մայիսի 25-ին Գալուստ Տեր-Մկրտչյանին հղած նրա նամակում. «Ախր շատ ենք անգետ ու կույր - գյու-

---

[100] «Մշակ», 1912, N 80:

[101] Տե'ս «Հորիզոն»« N 124:

ղից մինչև քաղաք հոգևորական ու աշխարհական, գրող ու ընթերցող, տգետ, տգետ ամեն բանից, սկսած մեզանից, մեր պատմությունից, մեր կյանքից: Ահա, տեսնում ես էլի, լուսավորության (ամենալուրջ կերպով) ջահն ու տաճարը գազեթն են համարում, և, իհրավի, ուրիշ բան էլ չկա մեջտեղը» (V, 375): «Ուրիշ բան» ասելով Թումանյանը, անշուշտ, նկատի ուներ ակադեմիա, ընկերություն կամ ազգային-կուլտուրական որևէ այլ խոշոր հաստատություն, որի ստեղծմանը և հետամուտ էր գրողը:

Գրական ընկերություն և ազգային ֆոնդ ստեղծելու համար ծավալված պայքարը, որը սկսվել էր շատ վաղուց, 1912 թ. նոր թափ է ստանում: Այն համակում է աշխարհի բոլոր ծայրերում ապրող հայությանը, դառնում բառիս լայն իմաստով համահայկական հետաքրքրություն ներկայացնող խնդիր: Այս անգամ հարցի բարձրացման առիթը հայ տպագրության 400-ամյա[102] և գրերի գյուտի 1500-ամյա[103] հոբելյանների նախապատրաստությունն էր: Գրեթե ամբողջ հայկական մամուլը, զանազան ընկերություններ և հաստատություններ այս կամ այն չափով մասնակցելով տոնի նախապատրաստական աշխատանքներին, որոշում են հավերժացնել այն համազգային-մշակութային մեծ արժեք ներկայացնող որևէ ֆոնդի հիմնադրումով: Եվ ահա դարձյալ հրապարակի վրա է դրվում գրական ֆոնդի գաղափարը: ««Ոստան» պիտի փափաքեր, որ հայ գրքի ներկա տոնը ըլլա գեղեցիկ առիթ մը բարվոքելու համար հայ հեղինակին նյութական վիճակը»[104],- այսպես գրում էր «Ոստան» եռամսյա պարբերականը: Նույնն էին գրում նաև հայ մամուլի ուրիշ շատ օրգաններ:

Յոբելյանի հետ կապված զանազան հարցերը լուծելու համար Էջմիածնում և Թիֆլիսում ստեղծվում են երկու միմյանցից անկախ հոբելյանական հանձնաժողովներ, որոնք սուր պայքարի մեջ են մտնում գրեթե յուրաքանչյուր հարցի շուրջ: Վեճի առարկա են դառնում, հատկապես, տոնը երբ և ինչպես տոնելու և ինչպիսի ֆոնդով հավերժացնելու հարցերը: Էջմիածնի հանձնաժողովը որոշում է տոնել 1912 թ. հոկտեմբերի 13-ին, իսկ Թիֆլիսի հոբելյանական հանձնաժողովը, որ ստեղծվել էր 1912 թ. փետրվարին, հարմար է գտնում նոյեմբերի 25-26-ը: Թիֆլիսի հանձնաժողովի բոլոր որոշումներին տոն տվողն ու ղեկավարողը նրա նախագահ Լևոն

---

[102] Այդ հոբելյանը առաջարկել էր տոնել Լևոն դեռ 1904 թ. (տե՛ս «Մշակ», 1912 թ., N 219):

[103] Տպագրության 400-ամյակին գրերի գյուտի 1500-ամյակը միացնել որոշեց Թիֆլիսի հանձնաժողովն իր մարտի 17-ի նիստում:

[104] «Ոստան», 1912, Բ. եռամսյակ, էջ 466-467:

էր, որը բանավեճի մեջ մտնելով, իր «Երկու խոսք էջմիածնի հոբելյանական հանձնաժողովին» հոդվածում հերքում է հոկտեմբերի 13-ի ավանդական կապը գրերի գյուտի հետ[105]: Սակայն էջմիածնի հանձնաժողովը չէր զիջում: Իսկ հայության մյուս խոշոր կենտրոնում՝ Պոլսում շատ ավելի հաշվի էին առնում Թիֆլիսի հանձնաժողովի որոշումները: Ապրիլի 29-ին Կ. Պոլսի Ազգային կենտրոնական վարժարանի դահլիճում տեղի է ունենում հայ տպագրության 400-ամյակին նվիրված հոբելյանական 3-րդ նիստը, որին մասնակցող 20 տարբեր միությունների ներկայացուցիչները որոշում են դիմել Կովկաս, Ամերիկա և այլուր՝ նոյեմբերի 25-ին տոնելու առաջարկով: Հովհ. Թումանյանն այս հարցում հանդես է գալիս հաշտարարի դերով: 1912 թ. սեպտեմբերին նա գրում է «Հետաձգել և միասին տոնել» հոդվածը, ուր կարդում ենք. «Հիրավի, երբ դեռ ժամանակ կար, կարելի էր, որ քաղաքներն ու հանձնաժողովները հարաբերության մեջ մտնեին, կարծիքներ ու առաջարկություններ փոխանակեին, մի եզրակացության գային, ծրագիր մշակեին, բայց էդ չի արված...» (V, 207): «Միակ ելքն է հետաձգել մի վեց ամսով կամ մի տարով լուրջ պատրաստություն տեսնել և տոնը կատարել վայելուչ շքեղությամբ ու իմաստուն կերպով ամեն տեղ միաժամանակ ու միասին» (նույն տեղում): Թումանյանի այս հոդվածը, որ լույս է տեսնում 1912 թ. սեպտեմբերի 11-ին, «Հորիզոնի» N 198-ում, անմիջապես արձագանք է գտնում: Թերթի հաջորդ համարում տպագրվում է «Պետք է համաձայնության գալ» առաջնորդողը, իսկ Մեսրոպ Մելյանը սեպտեմբերի 14-ին տպագրված «Անհրաժեշտ է հետաձգել» հոդվածում գրում է. «Այսպիսով միացնում եմ իմ ձայնը պ. Հ. Թումանյանի և նրանց ամենի ձայնին, որոնք, ինչպես հոկտեմբերի 13-ը, այնպես և նոյեմբերի 26-ը գտնում են վաղ մեծ տոներն արժանապես կարենալ կատարելու նկատմամբ, ուստի պետք է և անհրաժեշտ է հետաձգել»[106]: Արձագանքներ եղան նաև Փարիզից: Ա. Չոպանյանը գրեց իր «Ռոպեին պահանջը», ուր ծագած վեճը համարում է «ամենեն տխուր ու ցավալի բաներեն մեկն է, որ երբեք պատահած ըլլան մեր ազգային կյանքին մեջ: Այդպիսի վեհ տոն մը որ կշահագրգռե բովանդակ հայությունը՝ առանց ոևէ բացառության, պետք է վեր մնար ամեն տեսակ վեճե ու բանակռիվե... Հովհաննես Թումանյան իր հոյակապ հոդվածով մատնա-

[105] «Հորիզոն», 1912, N 149:
[106] «Հորիզոն», 1912, N 201:

նիշ ըրած էր արդեն հույսի միակ նշույլը, որ կա մեր խավարչտին երկնքին մեջ»[107]:

Չոպանյանն առաջարկում է տոնակատարությունը հետաձգել մինչև Ամանոր:

Թումանյանի առաջարկին միահամուռ իր հավանությունն է տալիս նաև 1912 թ. սեպտեմբերի 16-ին Թավրիզում կայացած ժողովը, որը քննարկում է տոնի առթիվ էջմիածնից ուղարկված կաթողիկոսական կոնդակը: Վերջինից դժգոհում է նաև Վիեննայի «Հանդես ամսօրյան»: Թիֆլիսի հանձնաժողովը հետևելով Թումանյանի առաջարկին, տոնը պաշտոնապես հետաձգելու որոշում է կայացնում: Այն հրապարակվում է սեպտեմբերի 25-ին «Հորիզոնի» N 210-ում:

Մյուս հարցը, որի շուրջ ծագած բանավեճը հատկապես սուր բնույթ էր կրում, տպագրության 400-ամյակն ինչ ֆոնդով հավերժացնելու խնդիրն էր: Այս հարցն արդեն անմիջականորեն կապվում էր գրողների ընկերության հիմնադրման հետ: էջմիածինը առաջարկում էր հիմնել դպրոցական ֆոնդ: Իսկ Թիֆլիսի հոբելյանական հանձնաժողովը որոշում է հիմնել հայ գրողների փոխադարձ օգնության ընկերություն, գրական ֆոնդ[108]: Ավելի վաղ, 1912 թ. հունվարի 28-ին ձայների մեծամասնությամբ այդ որոշումը կայացրել էր նաև Կովկասի հայոց հրատարակչական ընկերությունը՝ հայ տպագրության 400-ամյակին նվիրված հատուկ խորհրդակցությունում[109]: Այսպիսով՝ հենց 1912 թ. հունվարին, այսինքն դեռ Թիֆլիսի հոբելյանական հանձնաժողովի ստեղծումից առաջ է դրված եղել գրական ֆոնդի հիմնադրումով տպագրության 400-ամյակը հավերժացնելու հարցը: Թիֆլիսի հոբելյանական հանձնաժողովը, որը հիմնվեց փետրվարի 8-ին, իր ստեղծման օրից դարձավ այդ ֆոնդի և գրական ընկերության համար ծավալված պայքարի հիմնական կենտրոնը: 1912 թ. փետրվարի 8-ի Հայոց հրատարակչական ընկերության տպագրության 400-ամյակին նվիրված երկրորդ խորհրդակցական ժողովում ընտրվում է տպագրության 400-ամյակի հոբելյանական հանձնաժողով, որի կազմում ընտրվում են 15-ը, այդ թվում Ար. Զարգարյանը, Հ. Ակունյանը, Իս. Հարությունյանը, Ա. Աթանասյանը, Ե. Լալայանը, Լեոն,

[107] Նույն տեղում, 1912, N 211:
[108] Տե'ս «Հորիզոն», 1912, N 21:
[109] Տե'ս «Մշակ», 1912, N 21:

Շիրվանզադեն, Նար-Դոսը և ուրիշներ: Հանձնաժողովի պատվավոր անդամներ են ընտրվում Եփրեմ եպիսկոպոսը և Գաբրիել Սունդուկյանը[110]: Այս ցանկում չկար Հովհ. Թումանյանի անունը, քանի որ նա այդ ժամանակ կալանավորված էր և գտնվում էր Պետերբուրգում: Թիֆլիսի հանձնաժողովը «իր առաջին գործերից մեկը դարձրեց հայ գրական գործիչներին օգնող մի ընկերություն հաստատելը»[111]: Հայ գրողների ընկերության առաջին տարվա տեղեկագրի վկայությամբ՝ Թիֆլիսի հոբելյանական հանձնաժողովը ցանկանալով օրինականացնել գրողների ընկերության և գրական ֆոնդի գեղեցիկ գաղափարը և միաժամանակ իրագործել հայ գրական շրջանների վաղեմի իղձը, որոշեց կազմել Հայ գրողների ընկերություն, որի կանոնադրությունը, ձևելով Թիֆլիսի լրագրողների և գրողների ընկերության կանոնադրության վրա, ներկայացրեց ընդհանուր ժողովին և ապա, հավանություն ստանալուց հետո, 1912 թ. հունիսի 18-ին՝ համապատասխան կառավարական մարմիններին: Կանոնադրությունը նույն թվի օգոստոսի 2-ին հաստատվեց կառավարության կողմից[112]:

Կանոնադրությունը կազմված էր 7 մասից և 39 պարագրաֆից, որոնցից առաջինում ընկերության նպատակը ձևակերպվում էր երեք կետերում.

«ա) Իր անդամների նյութական դրության բարվոքումը.

բ) Նրանց մտավոր, բարոյական և գեղարվեստական զարգացման նպաստելը.

գ) Նյութական փոխադարձ օգնություն»[113]:

Այս նպատակներն իրագործելու համար ընկերությունը պիտի վարձեր բնակարաններ, ձեռք բերեր շարժական և անշարժ գույք, գրական և գեղարվեստական երկերի հեղինակային իրավունք, կազմակերպեր հայ գրողների շահերի պաշտպանությանը նվիրված ժողովներ, հաշտարար միջնորդ դատարաններ՝ փոխադարձ համաձայնությամբ քննելու հրատարակիչների և գրողների միջև ծագած թյուրիմացությունները, հատուկ

[110] Տե՛ս «Հորիզոն», 1912, N 28:
[111] «Հորիզոն», 1912, N 146:
[112] Տե՛ս «Տեղեկագիր» Հայ գրողների կովկասյան ընկերության 1913 թ. գործունեության, Թիֆլիս, 1914, էջ 7: Ինչպես վկայում է մամուլը («Հորիզոն», N 146), նահանգական ատյանն արդեն նույն թվականի հուլիսի 10-ին հաստատած է եղել հիշյալ կանոնադրությունը:
[113] Տե՛ս «Հորիզոն», 1912, N 252:

բյուրո՝ գրողներին իրավական և բժշկական օգնություն ցույց տալու և տեղեկատու բյուրո՝ ընկերության գործազուրկ անդամներին աշխատանքով ապահովելու համար: Կանոնադրության երկրորդ պարագրաֆի 7-րդ կետը գրական ֆոնդի մասին էր. «Հիմնել հատուկ ֆոնդ ընկերության անդամներին և նրանց ընտանիքներին միանվագ և մշտական նպաստ բաժանելու»: Ընկերությունը իր անդամների մտավոր ու գեղարվեստական զարգացմանը նպաստելու համար պարտավորվում էր կազմակերպել մատենադարաններ, ընթերցարաններ, գիտական արշավախմբեր, համերգներ, ներկայացումներ, ընթերցումներ, դասախոսություններ հանրակրթական և կյանքի այնպիսի խնդիրների մասին, որոնք շոշափում են գրողների շահերը: Հուլիսի 11-ի «Հորիզոնի» առաջնորդողն ամբողջությամբ նվիրված է գրողների ընկերությանը: Նրանում ասվում է. «Տասնյակ տարիներով մեզանում արծարծվող այս հարցը այս ձեռնարկությամբ մտնում է գործնականության մեջ: Դրվում է առաջին քարը»[114]:

Միավորվելով՝ գրողները պիտի բարձրացնեին գրականության նշանակությունը: Իհարկե, ընկերությունը չէր կարող միանգամից վերափոխել հայ գրական մթնոլորտը, բայց դա մի քայլ էր «գոնե ամենախիստ կերպով շեշտելու մեծ անհրաժեշտությունը, այն է՝ հայ գրականությունը իրան վայել դրության մեջ դնելու անհրաժեշտությունը»[115]: Ընկերության գործունեությանը իբրև անդամ կարող էին մասնակցել ոչ միայն Թիֆլիսի, այլև աշխարհի տարբեր մասերում ապրող հայ գրողները. 1913 թ. ընկերության անդամներից 81-ը Թիֆլիսից էր, 26-ը՝ Բաքվից, 5-ը՝ Նախիջևանից, 4-ական՝ Երևանից և Մոսկվայից, 3-ական՝ Բաթումից և Ալեքսանդրապոլից, 2-ական՝ Ախալքալաքից, Շուշիից, Ռոստովից և Պետերբուրգից, 1-ական՝ Վաղարշապատից, Յալթայից, Դուշեթից, Արդահանից, Քութայիսից, Վլադիկավկազից, Աստրախանից, Կոլայից, Շուլավերից, Գյուլագարակից, Բուխարեստից, Զաքաթալայից, Սալմաստից[116]: Նաև այդ պատճառով էր, որ իշխանության կողմից ընկերության հիմնադրման թույլտվությունն ու կանոնադրության հաստատման լուրը բոլոր հայաշատ կենտրոններում բուռն հրճվանքով ընդունվեց: Ալ. Ծատուրյանը Ժելեզնավոդսկից գրեց. «Վերջապե՜ս... սրտիս խորքից բացականչեցի ես:

---

[114] «Հորիզոն», 1912, N 147:
[115] Նույն տեղում:
[116] «Տեղեկագիր» Հայ գրողների կովկասյան ընկերության..., էջ 18-20:

Այժմ, հայ գրողներն էլ հանդես կգան իբրև հավաքական մի մարմին, իբրև նյութապես և բարոյապես կազմակերպված մի զորեղ ուժ... հայ գրողների միության գաղափարը - հրաշալի՜ է և սրտանց ողջունելի՜»[117]:

Գրողների ընկերության հիմնադրումը ուղեկցվում էր գրական և դպրոցական ֆոնդերի համար մղվող պայքարի թեժացումով: Լեոն վճռականապես դեմ էր դպրոցական ֆոնդին. նույն կարծիքին էր «Հորիզոնը», որի 1912 թ. հուլիսի 14-ի առաջնորդողում ասվում էր, որ եթե «այդ երկու ծրագիրները միաժամանակ հրապարակ նետվեն, կամ եթե լիակատար ազատություն տանք բոլոր մարմիններին և խմբակցություններին իրենց ցանկացած ֆոնդի ծրագիրը մեջտեղ քաշելու, ...պետք է, ուզենք, թե չուզենք, իրար հետ մրցեն և իրար ջլատեն»[118]: Առաջնորդողը պնդում էր, որ համազգային տոնը պետք է հավերժացվի մեկ համազգային գործով:

Այս հարցում Հ. Թումանյանը չէր կիսում Լեոյի կարծիքը և նրա «Համազգային հոբելյանը» հոդվածի առթիվ հանդես եկավ «Գրական ֆոնդ» հոդվածով, որտեղ գրականության առաջընթաց շարժումը կաշկանդող երևույթներից մեկը տեսնում էր այն բանում, որ հայ գրողը ժամանակ չի գտնում ստեղծագործելու, նվիրվելու միայն գրականությանը: Այդ գործով նա զբաղվում էր ի միջի այլոց, որովհետև իր և ընտանիքի ֆիզիկական գոյությունը պահպանելու համար ստիպված է պարապել այլ աշխատանքներով: Բայց, բանաստեղծի կարծիքով, «հույս էլ չկա, որ կփոխվի այդ դրությունը, որովհետև պատճառը շատ է հիմնական, ազգը փոքր է, ընթերցող հասարակությունը քիչ է, գրականության շուկան - սահմանափակ: Այս տեսակ փոքր ազգերի մեջ գրականությունը միշտ պահվում է անհատի, հասարակության թե պետության՝ արտաքին միջամտությամբ ու օժանդակությամբ» (IV, 193-194):

Եվ, իրոք, պետականություն ունեցող ազգերից և ոչ մեկի գրականության զարգացումը այնպիսի անմիջական կախման մեջ չի եղել գրողի նյութականից, մեկենասների, կամ հասարակական միավորումների, ընկերությունների, գրական սալոնների գոյության անհրաժեշտությունից, ինչպես մեզանում: Հայ գրական-հասարակական կյանքն ապրում էր հոբելյանի տոնակատարության խնդիրներով: Հայ գրքի, գրի ու տպագրության մասին անց էին կացվում բազմաթիվ դասախոսություններ, ոչ

---

[117] «Հորիզոն», 1912, N 199:

[118] «Հորիզոն», 1912, N 150:

միայն Թիֆլիսում, այլև Երևանում, Դիլիջանում և այլուր: Դասախոսություններն կարդում էին Լեոն, Շիրվանզադեն և ուրիշներ: Նրանք իրենց ելույթներում ընդգծում էին գրողի տնտեսական տխուր վիճակը, գրական ֆոնդի և ընկերություն ստեղծելու անհրաժեշտությունը: Իբրև օրվա հրատապ խնդիր դրվում էր գրողի համար գրականությունը մասնագիտություն դարձնելու հարցը: Արշալույս Տեր-Հովնանյանը «Գրականությունը որպես պրոֆեսիա» հոդվածում գրում է. «Գրականությունը մեզանում չէ հայտնվում որպես որոշ ինքնուրույն պրոֆեսիա... Ուրեմն հայ վիպագրից, բանաստեղծից պահանջել այն, ինչ արտադրում են ռուսական, լեհական, նորվեգիական և այլն գրողների բեղմնավոր գրիչները, անկարելի է և անհույս... Ի՞նչ անել: ...Գրականությունը դարձնել պրոֆեսիա, որի համար պիտի ապահովել մի որոշ ընկերությամբ»[119]:

Վեճերը շարունակվում էին: Նույն «Մշակը», որ 1911 թ. Կովկասի հայոց բարեգործական ընկերության 30-ամյա հոբելյանը հավերժացնելու համար ինքն էր առաջարկել հիմնել գրական ֆոնդ, որ 1912 թ. փետրվարի 22-ի իր համարում տպագրել էր Արշալույս Տեր-Հովնանյանի վերոնշյալ հոդվածը, այժմ պաշտպանում էր դպրոցական ֆոնդ ստեղծելու և էջմիածնի հանձնաժողովի բոլոր մյուս որոշումները[120]: Հ. Առաքելյանը գրում էր. «Առանց ուրանալու գրական ֆոնդի կարևորությունը, մենք կարծում ենք, որ այնուամենայնիվ այժմ նախապատվությունը պետք է տալ դպրոցական ֆոնդին»[121]: Իսկ մի քանի օր անց՝ «Եվ եթե շատ լավ մտածելու լինենք, **գրական ֆոնդը** ավելի սահմանափակ, ավելի մասնավոր գաղափար է, քան **համազգային դպրոցական ֆոնդը:** Գրական ֆոնդից, եթե նա իրագործվի, վերջ ի վերջո կօգտվեն սահմանափակ թվով մարդիկ, մինչ դպրոցական ֆոնդից կօգտվի ամբողջ հայ ժողովուրդը»[122]: Մինչ վեճերը շարունակվում էին, «Հորիզոնի» 1912 թ. սեպտեմբերի 19-ի N 204-ում տպագրվում է Հայ գրողների կովկասյան ընկերության հայտարարությունը, որով հավաստվում է, որ համապատասխան մարմինները հաստատել են ընկերության կանոնադրությունը, և որից պարզ է դառնում, որ ընկերության անդամ կարող են լինել ոչ միայն գրողները, այլև գրականագետ-քննադատները, լրագրողները, գիտության և գրա-

[119] «Մշակ», 1912, N 38:
[120] Նույն տեղում, N 147:
[121] Նույն տեղում, N 147:
[122] Նույն տեղում, N 151:

կանության բոլոր մշակները: «Հորիզոնի» հաջորդ օրվա՝ սեպտեմբերի 20-ի առաջնորդողը, որի հեղինակը հնարավոր է, որ ինքը՝ Թումանյանն է, սրտանց ողջունելով Գրողների ընկերության սկզբնավորումը, մեծ հույսեր է կապում նրա գործունեության հետ և տեսնում «գրագետների ընկերության» համեստ սկզբնավորության մեջ՝ մի զորեղ ազդակ հայ գրականության շքեղ զարգացման»[123]: Առաջնորդողը հայ մտավորականներին կոչ է անում կանգուն պահել «մի համեստ, բայց մտերիմ ու հարազատ օջախ, որի շուրջը բոլորել են Եղիշեներ ու Եզնիկներ, Նարեկացիներ ու Շնորհալիներ, Աբովյաններ ու Աղայաններ»[124]:

Հայ գրողների կովկասյան ընկերությունը նախատեսված էր հիմնադրել 1912 թ. սեպտեմբերի 29-ին Թիֆլիսի հոբելյանական հանձնաժողովի և այն ընտրող բոլոր հայկական հաստատությունների ներկայացուցիչների ընդհանուր ժողովում, բայց այդ հարցը թողնվեց հետագային և նախաձեռնող խմբին հանձնարարվեց այդ նպատակով հնարավորին չափ շուտ ժողով գումարել: Հիմնադիր ժողովը տեղի է ունենում 1912 թ. հոկտեմբերի 3-ին: Թե' ժողովի արձանագրության, թե' մամուլում եղած հաղորդման մեջ նշվում է, որ հիմնադիր անդամներից մասնակցեցին Լեոն, Ար. Զարգարյանը, Տիգրան Հովհաննիսյանը, Սեդրակ Թառայանը, Երվանդ Լալայանը, Գյուտ քահ. Աղանյանը և ուրիշներ: Բացակայել է Շիրվանզադեն: Հավանական է նաև Հովհ. Թումանյանի մասնակցությունը, քանի որ հենց այս առաջին ժողովում է նա ընտրվում ընկերության անդամ: Իսկ մասնակիցների մեջ նրա անունը չի հիշվում, քանի որ հիմնադիր անդամներ պաշտոնապես համարվում էին նրանք, որոնք ընտրվել էին 1912 թ. փետրվարի 8-ին, իսկ այդ պահին Թումանյանը կալանավորված էր և գտնվում էր Պետերբուրգում: Այդ ժողովում ընտրվում են ընկերության 8 անդամներ՝ Հովհ. Թումանյան, Արշակ Հարությունյան, Նար-Դոս, Ատրպետ, Փիլ. Վարդազարյան, Գրիգոր Վարդանյան, Ստ. Լիսիցյան, Հակոբ Գենջյան (Կարա-Դարվիշ), և որոշվում է ընկերության կազմը մեծացնելու նպատակով հաջորդ ժողովը գումարել հոկտեմբերի 10-ին: Վերջինում, որին մասնակցեցին 35 մարդ (այդ թվում Լեոն, Նար-Դոսը, Ստ. Լիսիցյանը, Ատրպետը, Ե. Լալայանը և ուրիշներ), գաղտնի քվեարկությամբ նախագահ է ընտրվում Հովհ. Թումանյանը: Իր բացման խոս-

[123] «Հորիզոն», 1912, N 205:
[124] Նույն տեղում:

քում Ար. Զարգարյանը տալիս է ընկերությունը կազմելու հանգամանքների համառոտ պատմությունը, ընդգծելով Թիֆլիսի հոբելյանական հանձնաժողովի դերը վաղուց ցանկալի այդ ընկերության ստեղծման գործում: Տ. Հովհաննիսյանը իր ելույթում հիշելով, որ Ս. Շահազիզը և Պ. Պռոշյանը առաջինն են արծարծել գրողների ընկերություն ստեղծելու միտքը, առաջարկում է հարգանքի տուրք մատուցել նրանց: Ընկերությունը իր գործունեությունը սկսում է նրանով, որ հոտնկայս հարգում է «գրականության անդաստանում գործած բոլոր անձանց հիշատակը»: Որոշվում է նաև շնորհավորական հեռագիր ուղարկել էջմիածին՝ տառերի գյուտի և տպագրության հոբելյանների առթիվ և թարգմանչաց օրը դարձնել ընկերության տոնը: Այդ ժողովում ընկերության անդամներ են դառնում 17 մարդ, այդ թվում Հովհ. Մալխասյանը, Հակ. Ալիխանյանը, Լ. Մանվելյանը, Վրթ. Փափազյանը, իշխ. Մ. Թումանյանը, Վրույրը, Սեյրին, Դ. Դեմիրճյանը, Աթ. Խնկոյանը, Հ. Հակոբյանը, Միք. Մանվելյանը և ուրիշներ: Թեև Գրողների ընկերության գործունեության 1913 թ. «Տեղեկագրում» գրված է, որ վարչության կազմը ընտրվել է հոկտեմբերի 3-ի ժողովում, բայց, ինչպես վկայում են առաջին երկու ժողովների արձանագրությունները, այն ընտրվել է հոկտեմբերի 10-ի ժողովում: Վարչության կազմը բաղկացած է եղել 8 հոգուց՝ Հովհ. Թումանյան, Լեո, Ա. Զարգարյան, Տ. Հովհաննիսյան, Ա. Աթանասյան, Գ. Աղանյան, Ար. Հարությունյան, Եր. Լալայան: Նույն այդ ժողովում ընտրվեցին նաև վարչության 9 փոխանդամ, վերստուգիչ մասնաժողով: Ի դեպ, վարչության կազմում առաջարկված թեկնածուներից միայն Թումանյանն է, որ ընտրվում է միաձայն: Թումանյանին և նորընտիր վարչության մյուս անդամներին հանձնարարվում է հաջորդ ժողովը գումարել մի ամսից ոչ ուշ: Հրատարակչական ընկերության գրասենյակը հանձնվում է նորակազմ ընկերության վարչության տնօրինությանը: 1912 թ. հոկտեմբերի 16-ին տեղի է ունենում ընկերության նորընտիր վարչության անդրանիկ նիստը, որտեղ նախագահ է հաստատվում Հովհ. Թումանյանը, որն այդ պաշտոնում անփոփոխ մնում է մինչև ընկերության գործունեության ավարտը: Նույն ժողովում Թումանյանի օգնական, վարչության փոխնախագահ է ընտրվում Տ. Հովհաննիսյանը, Ար. Զարգարյանը ընտրվում է գանձապահ, իսկ Գյուտ Աղանյանը՝ քարտուղար:

Ընկերությունը մտադիր էր Թիֆլիսում բացել Հայ գրականության ակումբ և ունենալ տպագիր իր օրգանը:

Ընկերության ստեղծումը ընդհանուր մեծ ոգևորություն առաջացրեց: Դա արտահայտվեց նաև «Հորիզոնի» հոկտեմբերի 12-ի N 124-ի առաջնորդողում, ուր արծարծված մտքերն ամբողջությամբ, նույնիսկ որոշ արտահայտություններ բառացիորեն զուգադիպում են նույն հարցերի մասին Հ. Թումանյանի գրած «Գրական ֆոնդ», «Գործի ասպարեզը» և այլ հոդվածներին: Եթե նույնիսկ այս առաջնորդողը չի պատկանում Թումանյանի գրչին, ապա ակնհայտ է, որ դրա հեղինակը եղել է Թումանյանի հոդվածների և այդ օրերի ելույթների ազդեցության տակ: Համոզվելու համար բերենք մի քանի զուգահեռներ: «Մեզանից մեծ ու հառաջադեմ ազգերի մեջ էլ,- կարդում ենք Թումանյանի «Գործի ասպարեզ» հոդվածում,- դպրոցն ու գրականությունը կարոտում են արտաքին օգնության և վայելում են ազգերի ու պետությունների խնամքը, որքան ավելի ևս անհրաժեշտ պետք է լինի էդ խնամքն ու հոգացողությունը մեզանում» (IV, 216): «Եթե նման ընկերությունների կարիքը վաղուց զգացված է խոշոր կուլտուրական ազգերի կյանքում, ապա որքան մեծ պետք է լինի այդ կարիքը մեր պես փոքրիկ ու հետամնաց ժողովրդի համար»,- երկրորդում է առաջնորդողը:

Առաջնորդողում առաջ է քաշվում գրող-ընթերցող կապի խնդիրը, որը միշտ եղել է Թումանյանի ուշադրության կենտրոնում: Նա բազմիցս շեշտել է, որ հայ գրողի և գրականության «խանգարվածությունը» բացատրվում է նաև հայ ընթերցողի հետամնացությամբ ու ցածր մակարդակով և ընթերցողների սակավությամբ: Ինչպես պատմում է Վահան Թոթովենցը, Թումանյանը սիրել է կրկնել. «Բանը եվրոպացի գրող լինելը չէ, այլ հայ գրող լինելն է»[125]: Առաջնորդողը կարծես նպատակ ունի շարունակել ու բացատրել այդ միտքը. «...բավական է, որ մի եվրոպացի հեղինակ մի հաջող երկ արտադրե և նրա մի քանի տարվա ապրուստը, երբեմն և ամբողջ կյանքի ապրուստը ապահովված է: Պարզ չէ՞ թե որպիսի խեղդող և սպանիչ պայմանների մեջ է դրված հայ գրականությունը»: Գրականությունը հայ գրողին ապրուստ չի տալիս նաև այն պատճառով, որ բավարար չափով չեն սպառվում գրքերը, «...և այստեղից պարզ է, որ ընթերցողի քանակը կենսական նշանակություն ունի թե գրողի և թե նրա ստեղծագործության համար»:

---

[125] «Թումանյանը ժամանակակիցների հուշերում», էջ 141:

Պատահական չէ, որ ընկերության նպատակներից մեկն էլ դարձավ երեկույթների և դասախոսությունների կազմակերպման միջոցով անմիջական կապ ստեղծել գրողի և ընթերցողի միջև, նաև նպաստել ընթերցողների, այսինքն՝ ժողովրդի գրական-կուլտուրական մակարդակի բարձրացմանը:

Բայց հենց սկզբից Հովհ. Թումանյանը ստիպված եղավ հաղթահարել ընկերության կազմավորման հետ կապված մի շարք դժվարություններ: «Մշակ», «Баку», «Каспий» թերթերը ընկերության հիմնադիրներին մեղադրում էին այն բանում, որ «Նրանք փոխանակ հրավիրելու իսկական գրողներին, անդամ ընտրելու ինքնաբերաբար, դիմեցին քվեարկության եղանակի, որպեսզի կարողանան իրանք, իբրև հիմնադիր քվեարկողներ, ընտրել կամ չընտրել սրան-նրան, ում իրանք հարկավոր կհամարեն: Եվ այդպիսի կուսակցական վերաբերմունքի հետևանքն այն եղավ, որ վարչական ընտրությունների ժամանակ, օրինակ՝ իսկական հայ գրող Շիրվանզադեն ընտրական քվե չստացավ»[126]: «Каспий» թերթը գտնում էր, որ ընկերության առաջացրած ոգևորությունը և հաջողությունը սոսկ մակերևութական է և միայն թղթի վրա գոյություն ունեցող, որ այն անխուսափելիորեն կկործանվի և կդադարի իր նպատակին ծառայելուց. «...չար ու դաժան մի եզրակացություն» և այն էլ «Հայոց առաջին գրական ընկերության հենց առաջին քայլերի հանդեպ...»,- գրում է Թումանյանը և համոզված հայտարարում. «Ո՛չ, չպետք է կործանվի Հայոց գրական ընկերությունը: Քանի որ մի երկրում, մի հասարակության մեջ էդ տեսակ մարդիկ կան՝ էդ տեսակ մամուլ ու էդ տեսակ վերաբերմունք կա դեպի գրողն ու գրականությունը - նա ընդհակառակը, պետք է հաստատուն կանգնի, մեծանա, ուժեղանա, հարազատ ու տաք օջախ դառնա հայոց հալածական գրականության համար, ամուր նեցուկ ու պաշտպան դառնա հայոց խանգարված գրողի համար և բարձր պատվար ամեն չարության ու հալածանքի հանդեպ» (IV, 220): «Կովկասի հայոց գրական ընկերությունն ու իր քննադատները» հոդվածում նա բողոքում է Հակ. Գենջյանի, Սեդրակ Թառայանի, «Մշակի» հարձակումների, անհիմն մեղադրանքների դեմ՝ դրանք համարելով հրեշավոր երևույթ, զարմանալի ու զարհուրելի վարմունք: Ի պատասխան այդ հոդվածի «Մշակը» գրում է, թե սխալվում է Հ. Թումանյանը, «որ «Հորիզոնի» հետ միասին մի վայ-

---

[126] «Մշակ», 1912, N 248:

նասուն է բարձրացրել, թե «Մշակը» հակառակ է հայ գրողների ընկերության»[127]: «Ոչ ոք դեմ չէ Հայ գրողների ընկերության: Ձեզ միայն այն եմ ասում՝ թե «Մշակը», թե Շիրվանզադեն և թե «Каспий» ռուս թերթը.- մենք հեռու կմնանք ձեր ընկերությունից մինչև այն րոպեն, երբ ձեր Ընկերությունը տրամադրություն ցույց կտա ընդունել և ընտրել գրական մարդկանց և ոչ պատահական դիլետանտներին»[128]:

Վեճի առիթը Շիրվանզադեի ոչ այնքան բարյացակամ վերաբերմունքն էր ընկերության վարչության կազմի նկատմամբ: «Баку» լրագրի Թիֆլիսի թղթակից Կարա-Դարվիշը, նկարագրելով նորակազմ ընկերության առաջին ընդհանուր ժողովը, խեղաթյուրում էր փաստերը, գրելով, թե ժողովականները չեն կամեցել քվեարկել և վարչության կազմում տեղ տալ «իսկական գրող» Շիրվանզադեին: Փաստի խեղաթյուրման պատճառները զուտ անձնական էին՝ պայմանավորված Կարա-Դարվիշի առաջարկությունների մեծ մասի և վարչության կազմում նրա թեկնածության մերժումով: Ինքը՝ Շիրվանզադեն մի կարճ նամակով հերքում է այդ սուտը, որով ոգևորվել էր «Մշակը»: Նա գրում է. «Ես ինքս չեմ կամեցել քվեարկել և նույնիսկ ներկա չեմ եղել այդ ժողովին: Ես գրել էի նաև, որ երբեք և ոչ մի տեղ ցանկություն չեմ հայտնել նորակազմ ընկերության մեջ որևէ պաշտոն ստանձնելու»[129]: Շիրվանզադեն, իհարկե, մասնակցել էր ընկերության կազմակերպման աշխատանքներին, իհարկե, միշտ էլ արտահայտել էր իր «խորին համակրանքը դեպի գրողների ընկերությունը»[130], որի շահերը մոտ համարելով իր սրտին, խոստանում էր երբեք չմերժել և հնարավորին չափ օգտակար լինել նրան: Սակայն նա գտնում էր, որ նորաստեղծ միավորումը պետք է լինի զուտ գրողների, միայն գրականությամբ զբաղվողների ընկերություն, անտեսելով այն փաստը, որ հայ գրականության մեջ դժվար էր գտնել որևէ գրող, որն ստիպված չլիներ իր ընտանիքի ապրուստը հայթայթել գրականության հետ կապ չունեցող որևէ աշխատանքով: «Ինչ վերաբերում է այն բանին,- շարունակում է նա,- որ ես չեմ ուզում անմիջական մասնակցություն ունենալ ընկերության գործերում, այս այսպես կլինի մինչև այն օրը, երբ նա, վերջապես, կդառնա զուտ գրողների ընկերություն... Առայժմ նա, դժբախտա-

---

[127] Նույն տեղում, N 255:

[128] Նույն տեղում:

[129] «Հորիզոն», 1912, N 251:

[130] Նույն տեղում:

բար, այդպես չէ: Գոնե նրա նորընտիր վարչության կազմը ինձ համար անհասկանալի մի խառնուրդ է: Եթե բնական է, որ բժիշկների ընկերության ղեկը բժիշկների ձեռքումը լինի, կամ ինժեներների ընկերության ղեկը ինժեներների ձեռքում, հապա ինչո՞ւ չպիտի և գրողների ընկերության ղեկը գրողների ձեռքում լինի: Չգիտեմ, գուցե ես մոլորված եմ, բայց ինձ թվում է, որ յուրաքանչյուր արվեստագետ իր արվեստի համար պետք է լինի խստապահանջ, նույնիսկ բծախնդիր ոչ միայն ներքին բովանդակության, այլև արտաքինի, այլև ձևի վերաբերմամբ...»[131]: Բոլոր ընդդիմախոսներին պատասխանում է դարձյալ Հովհ. Թումանյանը. «Հայ գրողը եթե ուզում է գրականության մեջ զգույշ լինի ու խստապահանջ - թող էդպես լինի իր գրչի ու գրականության վերաբերությամբ» (IV, 219),- իրավացիորեն նկատում է նա:

Որքան էլ արդարացի հիմքեր ունենար Շիրվանզադեի առաջարկը, այնուամենայնիվ գործնական տեսակետից հայ իրականության համար անիրագործելի էր և սխալ: Հովհ. Թումանյանի հետ միասին Շիրվանզադեի հետ բանավեճի մեջ մտավ նաև Ա. Ղազարյանը և փորձեց նրան համոզել, որ մինչև «զուտ» գրողների ընկերություն ստեղծելը, անհրաժեշտ էր ունենալ նաև «զուտ գրողներ», իսկ դրա համար պետք էր հիմնել մի այնպիսի միավորում, որը հնարավորություն տար հայ գրողին գրականությունը մասնագիտություն դարձնելու և միայն դրանով զբաղվելու: Բանավիճելով Շիրվանզադեի հետ, Ա. Ղազարյանը հարցնում է. «կարո՞ղ է պ. Շիրվանզադեն գեթ մի հատիկ հայ գրող ցույց տալ, որ գրականությամբ պարապելով հանդերձ եղած չլինի կամ ուսուցիչ, կամ գործակատար, ժամանակավոր վաճառական, բժիշկ, իրավաբան, ինժեներ... մի բան, որ ուրիշ ազգերի մեջ բացառություններ կարող են համարվել, այնինչ մեր մեջ դրանք սովորական երևույթներ են»[132]:

Նույնքան անիրավացի էր նաև Տիգրան Նազարյանը, երբ իր «Կովկասյան հայ գրողների ընկերության առիթով» հոդվածում հրապարակայնորեն նկատողություն էր անում Սեդրակ Մանդինյանին Գրական ընկերությանը անդամագրվելու համար, երբ այդ անդամակցությունը «առնվազը, չէ թախանձվել»[133]: Վերջինս գրավոր իր զարմանքն է հայտ-

---

[131] Նույն տեղում:
[132] «Հորիզոն», 1912, N 251:
[133] «Մշակ», 1912, N 265:

նում, թե մի՞թե այդքան հարազատ, երազած ու ցանկալի ընկերությանը անդամագրվելու համար պետք է սպասել ինչ-որ հատուկ հրավերի: Իր պատասխանում նա հարցնում է. «...ինչո՞ւ **առաքինություն** պիտի համարվի վաղուց ցանկալի Ընկերության չանդամագրվելը»[134]: Մինչդեռ Տիգրան Նազարյանը «մահացու մեղք», «էտիկայի հակառակ» բան էր համարում բանաստեղծ և մանկավարժ Գևորգ Բարխուդարյանին չհրավիրելը, նրան համարելով մեր գրականության հսկաներից մեկը և այն, որ իբր ընկերությունը «ամենաընդարձակ բոյկոտ» է հայտարարել «Աղբյուրին» ու «Տարազին»: Տ. Նազարյանի հոդվածին նս անդրադառնում է Հովհ. Թումանյանն իր «Հրավիրելու իրավունք չկա» հոդվածով, ուր նա մեկ անգամ ևս հիշեցնում է ընկերության կանոնադրությունը: Թումանյանը գրում է. «պ. Մանդինյանը կարող է հարցնել.- բայց ո՞վ պետք է հրավիրեր, կամ ո՞վ իրավունք ուներ հրավիրելու, երբ մեջտեղը ոչ հարսանիք կա, ոչ հոբելյանական հանդես, ոչ ազգային խնջույք, այլ պետական օրենքով հաստատված որոշ կանոնադրությունով մի ընկերություն, որին անդամ գրվելու համար պետք է ենթարկվել գաղտնի քվեարկության. իսկ որտեղ կա գաղտնի քվեարկություն, էնտեղ կա ընտրության հետ միասին և չընտրվելու վտանգը կամ սև քվեներ ստանալու անախորժ դեպքը: Էս տեսակ հանգամանքներում մի՞թե հրավիրում են մարդկանց որևէ աշխարհքում, և վերջապես ո՞ւմ են հրավիրել մեզանում: Ոչ ոքի» (IV, 221):

Ընկերության անդամության իրավունքի հետ կապված վեճերը վերջին անգամ հանգամանորեն քննարկվում են նոյեմբերի 25-ի ժողովում: Ինչպես վկայում է այդ օրվա արձանագրությունը՝ Հ. Թումանյանը բացատրում է կանոնադրության առաջին կետը՝ ովքեր կարող են լինել Հայ գրողների կովկասյան ընկերության անդամ. «մանավանդ այդ հարցը այժմ մամուլի մեջ վեճի առարկա է դարձել: Մեր կանոնադրության առաջին կետի հիման վրա ընկերության անդամ կարող են լինել նրանք, որոնք հայոց մեջ աշխատում են գրականության, գիտության և մամուլի ասպարեզներում: Այսպիսով, պարզվում է, որ ընկերությունը ընտրյալների մի կաճառ չէ, հայկական ակադեմիա չէ, այլ մի հաստատություն, որի հարկի տակ կարող են ժողովվել խոշոր ու տաղանդավոր մարդկանցից սկսած մինչև ամենահամեստ աշխատավորն այդ ասպարեզում՝ փոխադարձ օգնության և բարոյական-գեղարվեստական զարգացման նպա-

[134] Նույն տեղում:

տակով ճիշտ այնպես, ինչպես ռուսաց գրական ընկերության մեջ, ուր Տոլստոյի, Տուրգենևի, Չեխովի և մյուս մեծերի հետ միասին գրված են շատ համեստ անուններ: Եթե մենք խիստ ենք լինելու և խտրական, ես կցանկանայի, որ այդ լիներ ընկերության բարոյականի վերաբերմամբ և աշխատենք նրա բարոյական պատկերը տանել մաքուր, անաղարտ, բարձր ամեն նեղ կուսակցական միտումներից: Եվ արդեն առանց այդ պայմանների չի կարող լինել գրական-գիտական մթնոլորտ, չի կարելի երևակայել գրական-գիտական մի հաստատություն»[135]:

Հարցի շուրջ ծագած տարաձայնությունները շարունակվում են նաև ժողովում: Հ. Գենջյանը բողոքում է այդ սկզբունքի դեմ, պահանջելով, որ ընկերության մեջ մտնեն միայն պրոֆեսիոնալ գրողները: Արշակ Հարությունյանը առարկում է, ասելով, թե հայերը ռուսների և այլ ազգերի օրինակով չեն կարող զուտ պրոֆեսիոնալ ընկերություն կազմել, քանի որ հայության մեջ գրականությունը որպես պրոֆեսիա չի ապահովում իր մշակներին: Արշակ Ղազարյանը առաջարկում է մի տարի ժամանակամիջոց ընդունել իբրև չափանիշ անդամագրության հարցում: Հովհ. Թումանյանը առարկում է, պնդելով, որ ժամանակը չի կարող չափանիշ ծառայել. «...էսօր դուրս եկած մի գեղարվեստական գրող կարող է այնպիսի մի երկ տալ, որ միանգամից կորոշի իր տեղը գրականության մեջ, կամ մի ուրիշը կտա գիտական ուսումնասիրություն, երրորդը դուրս կգա մամուլի մեջ այնպիսի թափով ու հոդվածներով, որ միանգամից կհամոզի, որ ինքը հրապարակախոսական մի խոշոր ընդունակություն է: Մի՞թե սրանց պետք է ասենք՝ սպասեցեք մի տարի, որ քեզ ընդունենք մեր ընկերության մեջ»[136]: Թումանյանի այս կարծիքին հավանություն է տալիս ժողովականների մեծամասնությունը:

Ընկերության հանդեպ թշնամաբար էր տրամադրված «Ընկեր» թերթը, որի ելույթները հատկապես գռեհիկ բնույթ էին կրում: Այնտեղ տպագրված «Արևելյան գերեզմանատներ» հոդվածում ասվում էր, թե հայ հասարակական բոլոր ընկերությունների գործունեությունը մի «ծիծաղելի ու ցավալի տրագիկոմեդիա է»[137]: Այս խոսքերը վերաբերում էին հատկապես գրողների ընկերությանը, մանավանդ որ նույն թերթի վերջին

---

[135] ԳԱԹ, Հայ գրողների կովկասյան ընկերության ֆոնդ, N 40:
[136] Նույն տեղում:
[137] «Ընկեր», 1912, N 32:

էջում տեղադրված էր անստորագիր «Դարձյալ մի անպետք հիմնարկություն» հաղորդումը, որտեղ խիստ հոռետեսորեն էր գնահատվում ընկերության հիմնադրման փաստը[138]: Սակայն այսպիսի հարձակումները ի վերջո չէին կարող որևէ նշանակություն ունենալ, քանի որ դրանք կորչում էին այն մեծ ոգևորության մթնոլորտում, որն ստեղծվել էր ընկերության հիմնադրման կապակցությամբ: Հովհ. Թումանյանի կոչը, որ լույս տեսավ «Հորիզոնում» և «Մշակում», լայն արձագանք գտավ և մեծ ոգևորություն առաջացրեց: Կոչում ասվում էր. «Արդեն բացված է Հայ գրողների ընկերությունը: Վերջապես իրականություն է դառնում մեր լավագույն գրական հասարակական գործիչների վաղեմի իղձը՝ համախմբված տեսնել հայ մտքի ու գրչի մշակներին: Այսպիսով, հայ գրողն այսօր ունի մի հիմնարկություն, որին նա կարող է ապավինել կարիքի ժամանակ և մի ժամադրավայր, ուր հայ գրականության հարցերն ու խնդիրները կարող են պարզաբանվել ու հանգել բանավոր լուծման:

Վարչությունս հայտարարելով Ընկերության բացումը՝ սրտագին կոչ է անում հայ գրականության բոլոր ճյուղերի - գեղարվեստական գրականության, գիտության և հրապարակախոսության ասպարեզում գործողներին, ուր էլ նրանք լինեն, համախմբվելու նորակազմ Ընկերության շուրջը և միահամուռ ուժերով նվիրվելու ազգային գրականության բարգավաճման» (IV, 411):

Թումանյանի կոչը հասավ բոլոր հայաշատ կենտրոնները և հայության ամենատարբեր հատվածներին, ուրախացրեց ու ոգևորեց հայ մտավորականությանը, բայց նաև մտահոգեց: Պետերբուրգից Խաչենցին գրում է. «...մենք շատ ենք ուրախ այսպիսի գեղեցիկ անհրաժեշտության ու նրա վերաբերմամբ արտահայտված լավատեսության համար, եթե սակայն հայրենի սառն իրականությունը չգա վաղը նրա գլխին ջուր մաղելու»[139]: Հովհաննես Թումանյանը նամակ ստացավ Ալ. Ծատուրյանից. «Անհուն ուրախությունս եմ հայտնում, որ հայ գրչի մշակների միության բարձր գաղափարն այսօր արդեն մարմնացած, իրական հողի վրա է դրված: Սրտագին ողջույններ և բարեմաղթություններ անդրանիկ «Հայ

[138] Նույն տեղում:
[139] «Հորիզոն», 1912, N 235:

գրողների ընկերության», որի ծնունդն այնքան ջերմ փափագել ու երազել է ամեն մեկը մեզանից՝ իր չարքաշ կյանքի սև ու մութ օրերում...»[140]:

Բաքվից, Յին Նախիջևանից, Վլադիկավկազից, Արդահանից, Զաքաթալայից ընկերությանը անդամագրվելու ցանկություն են հայտնում բազմաթիվ գրական գործիչներ և գրողներ: Ողջույնի հեռագրերի և նամակների մեծ մասը ուղղվում էր անձամբ Յովհ. Թումանյանին: Ն. Յերթևեզյանի նամակում կարդում ենք. «Յամարձակություն ունեմ ի դեմս Զեզ շնորհավորելու Յայ գրողների միության գեղեցիկ գործը, որով միայն հնարավոր է առաջ տանել գրական կյանքի արգասավոր գործը»[141]: Ղազվինից Ան. Ղազարյանը գրում է. «Սիրելի բանաստեղծ, ողջունելով Զեր նախագահությամբ նորակազմ Յայ գրական ընկերության հաջող քայլերը և սրտիս շատ մոտ ընդունելով «աչքից ընկած» մեր գրականության փթթիլը՝ ուրիշ խոսքով ազգային կուլտուրայի վերակենդանանալը և դարավոր խավար համոզմունքների դեմ համախմբված մաքառումը տեսնելով ես ևս գալիս եմ անդամագրվելու այդ սրբազան գործին»[142]:

Նոյեմբերի 12-ին Բաքվի հայ գրողների ժողովը ողջունում է Թիֆլիսի Յայ գրողների կովկասյան ընկերությանը, համոզված լինելով, որ այն կդառնա «մի դպրոց, որը կբարձրացնե հայ գրողի գրական արժեքը, նրա մտքի մակերևույթը, վերջապես նրան կոգևորե և ասպարեզ կքաշե գրելու»[143]: Ժողովականները որոշում են ընդունում կազմակերպել գրողների ընկերության մասնաճյուղ:

Շնորհավորանքներից բացի, գրողների նորաստեղծ միությունը ստանում է նաև նյութական օժանդակություն, որը նույնպես համընդհանուր ոգևորության արդյունք էր: Այդպիսով, հնարավորություն էր ստեղծվում ամրացնել ընկերության նյութական հիմքերը, ստեղծել գրական ֆոնդ: 1912 թ. նոյեմբերի 25-ի՝ ընկերության երկրորդ ժողովի օրակարգի չորս խնդիրներից մեկը «Գրական ֆոնդի կանոնադրության քննությունն էր»[144]: Բայց բանավիճային բնույթ ունեցող ընթացիկ հարցերի առատության պատճառով գրական ֆոնդի խնդիրը հետաձգվում է հաջորդ՝ դեկտեմբերի 2-ի ժողովին, որի օրակարգի առաջին երկու հարցերն էին.

[140] «Յորիզոն», 1912, N 251:
[141] ԳԱԹ, ԹՖ, N 99/21:
[142] Նույն տեղում, N 99/22:
[143] «Յորիզոն», 1912, N 256:
[144] «Յորիզոն», 1912, N 261:

1. Վարչության զեկուցումը գրական ֆոնդի մասին.

2. Ընկերության 1913 թ. նախահաշվի քննությունն ու հաստատումը[145]:

Ժողովին ներկայացված նախահաշվից պարզվում է, որ ընկերության նյութականը պիտի գումարվեր անդամավճարներից, շաբաթական դասախոսություններից, երեկույթների, ներկայացումների ու համերգների եկամուտներից և այլն: Հասույթի 25 %-ը պետք է լիներ հիմնական դրամագլուխ, 10 %-ը պետք է առանձնացվեր իբրև գրական ֆոնդի անձեռնմխելի գումար, մնացածն օգտագործվեր ընկերության անդամներին փոխարինաբար տալու, նպաստների, գրասենյակային ծախսերի և այլ նպատակների համար: Սակայն ինչպես միշտ, այս անգամ էլ Հ. Թումանյանը նյութականի՝ գրական ֆոնդի հարցը քննելիս շեշտը դնում էր բարոյական կողմի վրա: Այս առումով հետաքրքիր են այն տարաձայնությունները, որոնք ծագեցին հարուստներին դիմում անելու հարցի շուրջ: Լեոն գտնում էր, որ ընկերությունը հաճախ ստիպված կլինի դիմումներ անելու. «...հենց դիցուք այնպիսի մի դեպքում, երբ մեր ընկերներից մեկը կտառապի հիվանդությամբ և հարկավոր կլինի նրան անմիջական օգնություն ցույց տալ»[146]: Մինչդեռ Հովհ. Թումանյանը, պնդելով, որ «ընկերությունը ոչ միայն նյութապես պետք է բարձրացնել, այլև բարոյապես»[147], առաջարկում է դրամական օգնություն չխնդրել առհասարակ որևէ անհատ մարդուց: Ժողովը ընդունում է Թումանյանի առաջարկը: Գրական ֆոնդի հարցը քանիցս արծարծվում է Ավ. Արասխանյանի մահվան կապակցությամբ, որը տեղի ունեցավ 1912 թ. դեկտեմբերի 3-ին: Դեկտեմբերի 6-ին, Ս. Գևորգ եկեղեցում Գրական ընկերության նախաձեռնությամբ կատարված հոգեհանգստից հետո, Գայանյան օրիորդաց դպրոցի դահլիճում Հ. Թումանյանի նախագահությամբ տեղի ունեցած խորհրդակցությունն ընտրում է թաղման կարգադիր հանձնաժողով, որի մեջ մտնում է ընկերության վարչությունն ամբողջությամբ (Ա. Քալանթար, Տ. Նազարյան, Արշ. Հարությունյան, Ն. Աղբալյան ու Դ. Դեմիրճյան): Այս հանձնաժողովն առաջին նիստում նպատակահարմար է գտնում «հավերժացնելու համար հանգուցյալի հիշատակը, հիմնել գրական ֆոնդ, որ կարող է կազմվել թե հատուկ նվիրատվություններից և թե պսակների

[145] ԳԱԹ, Հայ գրողների կովկասյան ընկ. ֆոնդ, N 40:

[146] Նույն տեղում:

[147] Նույն տեղում:

համար հատկացված գումարներից... ֆոնդը կհիմնվի հայոց գրական ընկերության մեջ»[148]: Դեկտեմբերի 9-ին, Ավ. Արասխանյանի թաղման օրը, դումայի դահլիճում նշանակված էր Հայ գրողների կովկասյան ընկերության երկրորդ ժողովի շարունակությունը, որտեղ քննվելու էին գրական ֆոնդի կանոնադրությունն ու նախահաշիվը: Մեծ ուշադրությամբ է լսվում Հովհ. Թումանյանի ելույթը: Ժողովը որոշում է ընտրել մասնաժողով՝ քննելու գրական ֆոնդի կանոնադրությունը, այն տպագրելու և տարածելու անդամների մեջ: Դեկտեմբերի 23-ի նիստի գլխավոր հարցը դարձյալ գրական ֆոնդի խնդիրն է, որը սակայն հետաձգվում է վարչության անդամների մեծ մասի, այդ թվում նաև Հովհ. Թումանյանի բացակայության պատճառով: Ի վերջո, Հայ գրողների կովկասյան ընկերության 1913 թ. մարտի 2-ի ժողովում հաստատվում է գրական ֆոնդի՝ հիշյալ մասնաժողովի կողմից մշակված կանոնադրությունը և ընդունվում է որոշ փոփոխություններով ու նոր ծանոթագրություններով:

Հովհ. Թումանյանի կազմակերպչական մեծ տաղանդի շնորհիվ Հայ գրողների կովկասյան ընկերությունն իր ստեղծումով իսկ մեծ աշխուժություն առաջացրեց, քանի որ նոր խոսք ու զրույց բացվեց գրականության մասին: Շատերը սկսեցին գրականությունը դիտել որպես ազգի ձևավորման, նրա գոյության համար առաջնակարգ նշանակություն ունեցող գործոն: Ընկերության դերի ու նշանակության մասին պարբերական մամուլում լույս տեսան բազմաթիվ հոդվածներ, որոնց մեջ դրվում էր ընկերությանը համազգային օգնություն ցույց տալու խնդիրը: Հովհ. Թումանյանը ևս այս շրջանում գրում է հոդվածներ, որտեղ գրականությունը դիտում է որպես ազգի գոյության հիմնական պայմաններից մեկը, դնում է ազգային մեծ գրականության ու արվեստի ստեղծման պահանջ:

Այսպիսով, Հայ գրողների կովկասյան ընկերությունն իր գոյության հենց առաջին օրերից դառնում է հայ գրականության ընթացքը կանխորոշող կարևոր գործոն և դա՝ առաջին հերթին Հովհաննես Թումանյանի անդուլ ջանքերի շնորհիվ:

*

* Հովհ. Թումանյանի ստեղծագործություններից կատարված մեջբերումները, բացի հատուկ նշվածներից, քաղված են բանաստեղծի երկերի ակադե-

[148] «Հորիզոն», 1912, N 270:

միական հրատարակությունից (Երկերի ժողովածու, (գիտական հրատարակություն) վեց հատորով, Երևան, 1940-1959): Մեջբերումների աղբյուրները նշվում են բնագրում, փակագծերի մեջ՝ ցույց տալով համապատասխան հատորն ու էջը («Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ»-ի 4-րդ հատորի (Երևան, 1985) խմբագրություն):

***«Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ», 4, Երևան, Հայկական ՍՍՀ ԳԱ հրատարակչություն, 1985, էջ 128-156***

*ՋՈՒԼԻԵՏԱ ԱՎԵՏՅԱՆ*

## ԹՈՒՄԱՆՅԱՆԻ ԵՐԿԵՐԻ 1908 Թ. ԺՈՂՈՎԱԾՈՒԻ ՏՊԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

Թումանյանի հարուստ գրական ժառանգության մի առանձին բաժինն են կազմում նրա ստացած նամակները, որոնց ընդհանուր թիվը անցնում է երկու հազարից: Նրանք նոր փաստերով ու մանրամասներով լրացնում են բանաստեղծի կյանքի ու ստեղծագործության տարեգրությունը, լուսաբանում նրա գրական-հասարակական գործունեության անհայտ կողմերը:

Ովքե՞ր են Թումանյանի թղթակիցները: Ծանոթ և անծանոթ մարդիկ, նաև նրա մտերիմները, որոնց բանաստեղծը օգնել է կյանքի շատ հարցերում և որոնք, ինչպես ինքն է վկայում, «դժար ժամանակները» ոչ միայն հոգեկան ու բարոյական նեցուկ են եղել նրան, այլև հաճախ օգնել նյութապես՝ շատ ծրագրեր իրականացնելու:

Վաստակաշատ թումանյանագետ Ա. Ինճիկյանը իր «Հովհաննես Թումանյան. Կյանքի և ստեղծագործության պատմությունը, 1869-1899» գրքում հանգամանորեն անդրադառնալով բանաստեղծի և նրա սրտակից ընկեր-բարեկամների՝ Ան. Աբովյանի, Ա. Առաքելյանի, Գ. Վանցյանի, Ա. Ղլտճյանի, Փիլ. Վարդազարյանի, Ա. Զարգարյանի, Մ. Տեր-Անդրեասյանի, իշխանուհի Մ. Թումանյանի և շատ ուրիշների փոխհարաբերություններին, գրում է. «...Մի խումբ ընկերների մշտական հորդորներին անսալով միայն՝ համաձայնվեց ժողովածուն (խոսքը բանաստեղծությունների առաջին գրքի մասին է - Ջ. Ա.) հանձնել տպագրության, հանձնելուց հետո էլ հաճախ տարակուսելով՝ արժե՞ արդյոք»[149]:

Հովհ. Թումանյանի բանաստեղծությունների առաջին գիրքը արժանացավ ջերմ ընդունելության: Ոգևորված անդրանիկ գրքի հաջողությունից, Թումանյանը շուտով ձեռնարկեց երկրորդ գրքի հրատարակությանը, որի տպագրության գործին օգնեցին Փիլ. Վարդազարյանը և, վերջինիս առաջարկությամբ, նրա մորաքրոջ որդի Ա. Զարգարյանը: Գիրքը լույս տեսավ 1892 թ. նոյեմբերին, Մոսկվայում: Հետագայում բանաստեղծի տաղանդի ջերմ երկրպագուների՝ Փիլ. Վարդազարյանի, Մ. Թումանյանի և Ա. Զարգարյանի նյութական աջակցությամբ հրատարակվեցին

[149] Տե՛ս **Ա. Ինճիկյան,** Հովհ. Թումանյան, Երևան, 1969, էջ 264:

նաև այլ ժողովածուներ՝ Փիլ. Վարդազարյանի միջոցներով «Դաշնակնե-րը 1893 և 1896 թթ., Մ. Թումանյանի հրատարակությամբ՝ բանաստեղ-ծությունների 1903 թ. հանրահայտ ժողովածուն և «Մանկական գրադա-րան» պատկերազարդ մատենաշարի 14 գրքերը:

Այժմ մի քանի խոսք 1908 թ. ժողովածուի հրատարակության հետ կապված հարցերի մասին:

* * *

«Բաքվեցիք գիրքս տպում են, և մի շատ դժար ժամանակը վրա հա-սան մարդիկը...»,- գրում է բանաստեղծը Փիլ. Վարդազարյանին, 1908 թ. ապրիլին (V, էջ 312): Արդ, ովքե՞ր էին «բաքվեցիք», որոնց ջանքերով տպագրվեց 1908 թ. ժողովածուն:

Հովհ. Քաջազնունու, Մ. Տեր-Անդրեասյանի և Ե. Թաղիանոսյանի 1907-1908 թթ. Թումանյանին հասցեագրած նամակներից պարզվում է, որ Բաքվի հայոց հրատարակչական մասնաժողովի 1907 թ. սեպտեմբերի 21-ի նիստում առաջարկվել է բանաստեղծից գնել տպված և անտիպ աշ-խատությունների մի ժողովածու հրատարակելու իրավունքը: Սեպտեմ-բերի 29-ին Հովհ. Քաջազնունին Թումանյանին տեղեկացնում է այդ մա-սին: Նրա նամակում կարդում ենք. «Արդեն տպագրված բանաստեղծութ-յուններից (թե' գրքում և թե' պարբերական հրատարակություններում) և այն բանաստեղծություններից, որ մինչև հիմա լույս չեն տեսած, կազմել մի հատոր ժողովածու մեր ընտրությամբ... իբրև հոնորար վճարել քեզ հիսունական ռուբլի ամեն մի տպագրական թերթից՝ թե մինչև հիմա տպագրված և թե դեռ անտիպ ոտանավորների համար՝ անխտիր: Ի հա-շիվ այդ գումարի այժմ նեթ տեղափոխել քեզ 300 ռ., իսկ մնացածը լրաց-նել ամսական հիսուն ռուբլի վճարելով, սկսած այս տարվա դեկտեմբերի մեկից»[150]:

Մ. Տեր-Անդրեասյանի ավելի ուշ գրած նամակից հայտնի է դառնում նաև, որ մասնաժողովն ի վերջո որոշել է տպագրական թերթին վճարել ոչ թե 50, այլ 75 ռ. և մնացած 900 ռ. բանաստեղծին ուղարկել միանվագ, որով ժողովածուից ստացված եկամուտը կազմել է 1200 ռուբլի:

Ժողովածուն կազմելը հանձնարարվել է Հովհ. Քաջազնունուն: Խմբագրական ժողովի կողմից պատրաստվել է ժողովածուի մեջ զետեղ-

---

[150] Տե'ս ԳԱԹ, ԹՖ, N 1194:

վելիք ստեղծագործությունների ցուցակը, որն ուղարկել են բանաստեղծին և խնդրել ցուցակի մեջ մտած նյութերը ուղարկել:

Տեղին է հիշեցնել, որ Թումանյանը չափազանց խստապահանջ է եղել ժողովածուների մեջ մտնող իր ստեղծագործությունների ընտրության հարցում և, չնայած նյութական նեղ վիճակին, երբեք զիջումներ չի արել հրատարակիչներին: Այսպես, երբ 1903 թ. «Բանաստեղծություններ» ժողովածուի համար ընտրված ցանկը ներկայացրել են բանաստեղծին, նա, Մ. Թումանյանի վկայությամբ, խիստ քննադատել է հրատարակիչների ընտրությունը և «շատ բան դուրս է գցել, փոխարենը քիչ բան ավելացրել»[151]: Այս առումով բացառություն չի կազմել նաև Բաքվի ժողովածուն: Վերը հիշատակված ցուցակի և արդեն տպագրված գրքի ցանկի համեմատությունից պարզվում է, որ Թումանյանը այս դեպքում նույնպես կատարել է բավականաչափ փոփոխություններ: Գրքի «Երգեր» բաժինը ցուցակում սկսվում է «Երկու սև ամպ» բանաստեղծությամբ, մինչդեռ բանաստեղծը դրանից առաջ դրել է երկու տասնյակից ավելի ոտանավորներ, մի մասը նախորդ հրատարակություններից («Նախերգանք», «Գութանի երգը», «Հին օրհնություն», «Է՜յ, աստղեր, աստղեր», «Համերգ», «Մի որոնիր», «Ո՞հ, խնայեցեք», «Ա՜խ, ես երանի», «Սարերում», «Ուրու», «Երգչի վրեժը», «Կանչ», «Երբ խոսում էիր», «Ես սիրել եմ»), մյուս մասը պարբերականներից՝ «Տրտունջ» («Մուրճ», 1904, N 9), «Հայ ուխտավորին» («Տարազ», 1893, N 4), «Ժամանակն անվերջ, տիեզերքն անհուն» («Հուշարար», 1907, N 1):

Նամակներից հայտնի է դառնում նաև, որ բանաստեղծի պահանջով ժողովածուից հանվել է «Հատվածը» և փոխարենը դրվել «Քրիստոսն անապատում» բանաստեղծությունը: Այս փոփոխությունն, ի դեպ, «սրտի կսկիծով» են կատարել հրատարակիչները՝ «Հատվածը» համարելով շատ ավելի բարձրարվեստ գործ[152]: Թումանյանը հատուկ պահանջել է նաև, որ «Հայոց վիշտը» բանաստեղծությունն անպայման դրվի ժողովածուի մեջ: «Պոեմներ» բաժնում պետք է լինեին «Դեպի Անհունը» և «Պոետն ու Մուսան», որոնք, սակայն, ինչպես վկայում են հրատարակիչները, դուրս են մնացել ժողովածուից բանաստեղծի «մեղքով»: Կարելի է ենթադրել, թե բանաստեղծը նպատակ է ունեցել հիշյալ պոեմները հրա-

---

151 Հմմտ. «Թումանյանը ժամանակակիցների հուշերում», էջ 476:

152 Հմմտ. ԳԱԹ, ԹՖ, N 1194:

տարակության հանձնել միայն վերամշակումից հետո: Իրոք, մեկ տարի անց՝ 1909 թ., երկու պոեմն էլ հեղինակի կողմից վերանայված ու մասնակի փոփոխություններով տպագրվել են «Հայ գրողներ» քրեստոմատիայում:

«Թարգմանություններ» բաժինը Թումանյանը լրացրել է Գյոթեի «Վարդը» և «Ծաղիկները» բանաստեղծություններով, որոնք նա հավանաբար խմբագրական մասնաժողովին է ուղարկել Մ. Տեր-Անդրեասյանի հիշեցումից հետո: Վերջինս իր 1908 թ. հունիսի 26-ի նամակում խորհուրդ է տվել ընկերոջը «քունջ ու պուճախից» հանել մնացած գործերը, ավարտել «Սասունցի Դավիթը» և հիշեցրել Գյոթեից կատարած մի թարգմանության մասին[153]:

Այժմ մի քանի խոսք «Հսկան» («Ուժը») բալլադը ժողովածուի մեջ զետեղելու մասին: Էդ. Ջրբաշյանը «Տեքստաբանական դիտողություններ Հ. Թումանյանի ստեղծագործության մասին» հոդվածում[154], ըստ երևույթին նույնիսկ ծանոթ չլինելով Մ. Տեր-Անդրեասյանի 1908 թ. մայիսի 8-ի նամակին, միանգամայն ճիշտ է ուրվագծում «Հսկան» բալլադի ստեղծագործական պատմությունը: Հիշյալ նամակն այժմ գալիս է հաստատելու գրականագետի եզրահանգումները: Մ. Տեր-Անդրեասյանը Թումանյանին հայտնում է, որ խմբագրական ժողովում կարդացել է «Հասկերում» տպագրված բալլադը[155], անչափ հավանել և նպատակահարմար գտել զետեղել գրքում, եթե բանաստեղծը կատարի որոշ ոճական շտկումներ և կրճատի վերջին չորս տողը: Այնուհետև նամակագիրը նշում է իր դիտողությունները, որոնք բերում ենք ստորև.

1. Ո՞վ էր գլխից ձեռ վեր ***կալած*** (գավառաբանություն)

2. ***մարդի բանակ*** (խորթ ձև է)

3. Ամպեր***են,*** թաքուստներ***են*** (արևմտյան)

4. Ժայռ***եղեն*** սար. «եղեն» վերջավորությունը ցույց է տալիս համանման առարկաների համախումբը, այստեղ անտեղի է:

5. Բարոյախոսությունը թույլ է, ավելի լավ է դուրս գցել:

Բանաստեղծը ընդունում է վերջին երեք դիտողությունները և կատարում ոճական նաև ուրիշ շտկումներ: Այսպես՝ «Հասկերում» տպագր-

---

[153] Հմմտ. ԳԱԹ, ԹՖ, N 1126:
[154] Տե՛ս «Բանբեր Երևանի համալսարանի», 1968, N 3, էջ 116-117:
[155] Տե՛ս «Հասկեր», 1908, N 4:

ված բալլադի 39-րդ տողը՝ «Կորեք, իսկույն, **ավազակներ**» դարձնում է՝ «Կորեք, իսկույն, **դուք մարդուկներ**», 106-րդ տողը՝ «Չի են **խաղցնում**, նիզակ ճոճում»՝ «Չի են **քշում**, նիզակ ճոճում», 189-րդ տողը՝ «Մի **ժայռեղեն** սար առավ մեծ»՝ «Մի **ահագին** սար առավ մեծ», այնուհետև կրճատում է բալլադի վերջին վեց տողը.

Հանկարծ... փլվեց սարն ահագին,
Ինքն էլ մընաց նրա տակին,
Ու կատարվեց էն խոսքն ահա,
Թե ուժեղից ուժեղը կա,
Ու չկարծե երբեք ոչ ոք,
Թե ինքն անհաղթ մի բան է ջոկ:

Այս տեսքով երկը ավարտված չհամարելով, Բաքվի ժողովածուում տպագրելիս, բանաստեղծը «Կովկասի առասպելներից» ենթավերնագրից հետո ավելացնում է՝ «Հատված»: Հետագայում Կ. Պոլսի ժողովածուն կազմելիս Թումանյանը նորից անդրադառնում է այս ստեղծագործությանը և կատարում ոճական նոր ուղղումներ. 99-րդ տողը՝ «Դուրս թափվեցին թաքուստներ***են***»՝ դարձնում է «Դուրս թափվեցին թաքուստնե-ր***ից***», 100-րդ տողը՝ «Վըրա տըվին, ելան վըրեն»՝ ***«Ելան վըրեն, դեսից, դենից»,*** 133-րդ տողը՝ «Գնաց իրեն մորը պատմեց»՝ «Գնաց ***հսկան*** մորը պատմեց», այնուհետև փոխում է բալլադի վերնագիրը, դարձնելով «Հսկան» և վերջից կրճատում ևս 32 տող: Այս փոփոխություններից հետո Կ. Պոլսի ժողովածուի մեջ նա հանում է նաև «Հատված» նշումը: Այս կապակցությամբ Էդ. Ջրբաշյանը գրում է. «Թումանյանը կրճատման միջոցով ավարտուն տեսք է տալիս նախկինում հատվածի բնույթ ունեցող ստեղծագործությանը... Դրանով բանաստեղծը ընդգծում, առաջին պլան է բերում ստեղծագործության հումանիստական գաղափարը»[156]: Այժմ Թումանյանի երկերի ակադեմիական հրատարակության III հատորի համապատասխան բաժնում իբրև «Հսկան» բալլադի հիմք ընդունված է 1922 թ. Կ. Պոլսի ժողովածուում տպագրված տարբերակը:

Ըստ կազմողի ներկայացրած ցուցակի, ժողովածուի մեջ պետք է մտներ նաև Մ. Յու. Լերմոնտովի «Մծիրի» պոեմը: Այդ կապակցությամբ Մ. Տեր-Անդրեասյանը խորհուրդ է տվել բանաստեղծին մի վերջին ան-

---

[156] Տե՛ս **Էդ. Ջրբաշյան,** Տեքստաբանական դիտողություններ Հ. Թումանյանի ստեղծագործության մասին, Երևան, 1968, էջ 117:

գամ խմբագրել իր թարգմանությունը, կատարել ուղղումներ՝ նկատի ունենալով իր՝ նոյեմբերի 24-ի նամակում նշված դիտողությունները: Հիշատակված նամակը չի պահպանվել, սակայն ձեռքի տակ ունենալով 1903 թ. «Բանաստեղծություններ» ժողովածուի Մ. Տեր-Անդրեասյանին նվիրած օրինակը, որտեղ վերջինս մատիտով բազմաթիվ նշումներ է արել, և «Մծիրիի» 1908 թ. տպագրության նմուշը (օտիսկ), պարզեցինք, որ բանաստեղծը իրոք որոշ ուղղումներ անելուց և խմբագրելուց հետո է «Մծիրին» ուղարկել Ե. Թաղիանոսյանին: Նա ոչ միայն առանձին ոճական շտկումներ է արել իր թարգմանության մեջ (հաշվի առնելով Մ. Տեր-Անդրեասյանի նշումները), այլև լրացրել է 3-րդ գլխի վերջից պակաս թարգմանած հինգ տողը, որոշ փոփոխություններ կատարել 26-րդ գլխում: Այսպես. այդ գլխի 3-րդ տողը՝ «Դու հրամայիր դիակս տանելու» դարձրել է՝ «**Պատվեր տուր այնժամ դու ինձ** տանելու», 10-րդ տողը՝ «Դու հրամայիր ինձ այնտեղ թաղեն»՝ «Դու հրամայիր ինձ այնտեղ **տանեն**» և այլն: Չնայած այս ամենին, Մ. Տեր-Անդրեասյանի նամակից պարզվում է նաև, որ խմբագրական նիստերից մեկում որոշվել է «Մծիրին» դուրս թողնել ժողովածուից:

Բաքվի ժողովածուի «Երգեր» բաժինն ունի ընդհանուր թվագրություն՝ 1887-1907: Ինչո՞ւ են այսպես թվագրել հրատարակիչները: Բանն այն է, որ Թումանյանը շատ ոտանավորներ ժամանակին չի թվագրել, իսկ այդ մասին հրատարակիչների տված հարցերին պատասխանել է. «Ո՞վ է հիշում...»[157]: Այդ պատճառով Ե. Թաղիանոսյանի առաջարկությամբ թվագրության միօրինակություն մտցնելու նպատակով ընտրել են վերը հիշված ձևը:

Ինչպես նախորդ ժողովածուների հրատարակության ժամանակ, այս անգամ ևս բանաստեղծը անձամբ հետևել է սրբագրության աշխատանքներին, պահանջելով իրեն ուղարկել տպագրված թերթերը: Այդ կապակցությամբ ահա թե ինչ է գրում Ե. Թաղիանոսյանը իր 1908 թ. ապրիլի 18-ի նամակում. «Սրբագրությունը Ձեզ ուղարկելը կառաջացնի շատ անհարմարություններ և դժվարություններ, և չափից դուրս կդանդաղեցնի գործը: Մենք բոլորս հատուկ խնդրում ենք Ձեզ հավատալ, որ մենք առանձին սիրով ու խնամքով վերաբերվել ու վերաբերվում ենք Ձեր երկերին... Հայտնում եմ Ձեզ իմ խորին հարգանքը և սրտանց փափագս սեղ-

---

[157] Հմմտ. ԳԱԹ, ԹՖ, N 194:

մել մի օր Ձեր ձեռքը, որ այդքան գոհարներ է նվիրել մեր աղքատիկ գրականությանը»[158]:

Չնայած հրատարակիչների հավաստիացումներին, բանաստեղծը տպագրության ընթացքում լինելով Բաքվում, միջամտել է գրքի հրատարակությանը: Այդ մասին դստերը՝ Աշխեն Թումանյանին, գրած նամակում կարդում ենք. «Իմ գրքում բաներ էին փոփոխել: Տպագրությունը կանգնեցրի. նորից տպել եմ տալի փոխած տեղերը» (V, էջ 315):

Գիրքը պետք է ունենար նաև առաջաբան: Որպես այդպիսին ընտրված էր Ավ. Աhարոնյանի հոդվածը բանաստեղծի երկերի մասին[159]: Սակայն Թումանյանի մի նամակում արած ակնարկից (V, էջ 227) երևում է, որ հեղինակը գոհ չի եղել հիշյալ հոդվածից, և երևի դա է պատճառը, որ ժողովածուն հրատարակվել է առանց առաջաբանի:

Օգոստոսի վերջին ավարտվում է գրքի տպագրությունը: Մ. Տեր-Անդրեասյանի սեպտեմբերի 24-ի նամակից իմանում ենք, որ նա Թումանյանին է ուղարկել գրքի 17 օրինակ և խնդրել, որ բանաստեղծը մի-մի օրինակ հանձնի «Մշակ», «Գործ», «Յովիվ», «Тифлисский листок» պարբերականների խմբագրություններին՝ գրախոսելու:

Բայց բանաստեղծն այնքան էլ գոհ չի եղել ժողովածուի հրատարակությունից, քանի որ դրա մեջ, այնուամենայնիվ, սպրդել են որոշ վրիպակներ ու սխալներ: Այդ մասին 1909 թ. հուլիսին Ա. Չոպանյանին հասցեագրած նամակում նա կես կատակ, կես լուրջ գրում է. «Այնտեղ (բանտում - Ձ. Ա.) ձեռքս ընկավ Բաքվում հրատարակված իմ բանաստեղծությունների գիրքը, ուշադիր կարդացի և զարմանքով տեսա, որ ամբողջ գիրքը փչացրել են մարդիկ և փոխանակ հրատարակիչների, դարձել են իմ խայտառակիչները»[160]:

Կարծում ենք այս հարցում բանաստեղծն այնքան էլ արդարացի չէր:

*

* Յովհ. Թումանյանի ստեղծագործություններից կատարված մեջբերումները, բացի հատուկ նշվածներից, քաղված են բանաստեղծի երկերի ակադեմիական հրատարակությունից (Երկերի ժողովածու, (գիտական հրատարա-

[158] Տե՛ս ԳԱԹ, ԹՖ, N 633:
[159] Տե՛ս «Մուրճ», 1904, N 1:
[160] Տե՛ս «Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ», հտ. 1, էջ 379:

կություն) վեց հատորով, Երևան, 1940-1959)։ Մեջբերումների աղբյուրները նշվում են բնագրում, փակագծերի մեջ՝ ցույց տալով համապատասխան հատորն ու էջը («Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ»-ի 4-րդ հատորի (Երևան, 1985) խմբագրություն)։

***«Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ», հ. 4, Երևան, Հայկական ՍՍՀ ԳԱ հրատարակչություն, 1985, էջ 157-163***

## *ԱՐԾՐՈՒՆ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ*

# ՎԵՐՆԱՏՈՒՆ

Համաշխարհային գրականության պատմությունն արձանագրել է մի հետաքրքրաշարժ փաստ, որը, սակայն, քիչ է ուսումնասիրված: Միևնույն հայացքների և գրական նախասիրությունների տեր գրողներն անցյալում միշտ էլ ձգտել են միավորվել գրական խմբակցությունների մեջ, որ համատեղ խորհեն ստեղծագործական աշխատանքի այս կամ այն հարցի շուրջը, կարծիքներ փոխանակեն: Հայտնի է Գոնկուր եղբայրների (Էդման և Ժյուլ) խմբակցությունը Ֆրանսիայում, որի անդամները՝ Զոլան, Դոդեն, Հյուսիմասը և այլք, հաճախ հավաքվում էին Գոնկուրների տանը «Ամբար» կոչված վերնահարկում և զրուցում գրականության, արվեստի և այլ հարցերի վերաբերյալ: Փարիզում գործել է և տիկին Անելոյի սալոնը, որի մշտական հաճախորդներն էին Հյուգոն, Շատոբրիանը, Վինյին և ուրիշներ: Համբավ է ունեցել «Պառնաս» բանաստեղծական խմբակը, որը հետևում էր «արվեստն արվեստի համար» սկզբունքին: Ռուսաստանում Պուշկինի կենդանության օրոք գործում էր «Արզամաս» գրական խմբակը: Նման խմբակներ էին ստեղծել Ստանկևիչը, Գերցենը, Ակսակովը, Նիկիտինը և ուրիշներ, ընդգրկելով մեծ թվով գրողների ու քննադատների (Կռիլով, Ժուկովսկի, Բելինսկի, Օգարյով, Դոստոևսկի, Սալտիկով-Շչեդրին և ուրիշներ):

Մի քիչ այլ է եղել պատկերը հայ գրականության մեջ: Հայ գրողներն անցյալում որպես կանոն աշխատել են մեկուսի, կտրված գրական միջավայրից: Հիշենք թեկուզ Աբովյանին, Պռոշյանին, Սունդուկյանին, Րաֆֆուն, Դուրյանին, Մուրացանին, Փափազյանին, Նար-Դոսին և էլի ուրիշների: Այդ երևույթից դժգոհ Հովհ. Թումանյանը 1899 թ. Ծատուրյանին գրել է. «Դժբախտաբար մեր գրողների մեջ կապ ու հարաբերություն չկա, այնինչ մենք ունենք ընդհանուր ցավեր ու շահեր, որ կարևոր են դարձնում այդ հարաբերությունը, մենք զգացմունքներ ու մտածմունքներ ունենք, որ միայն իրար կարող ենք հայտնել ու խոսել, Թիֆլիսում գտնվողներս հաճախ մտածել ենք այդ մասին, և մինչև անգամ անցյալ տարի մի տասը ժողով արինք: Մոտիկ ապագայում, հարկավ, գլուխ կգա»:

Բայց, այնուամենայնիվ, մեզ մոտ ևս, թեև որոշ ուշացումով 20-րդ դարի սկզբից երևան եկան գրական խմբակներ, սալոններ ու ասուլիսներ, օրինակ՝ 1906 թ. սալոն բացվեց Թիֆլիսում: 1913 թ. «Ասուլիս» անունով խմբակ էր ստեղծվել Պոլսում, որը կազմակերպում էր երեկոներ նվիրված Վարուժանին, Սիամանթոյին, Զոհրապին: Խորհրդային առաջին տարիներին (1922-1923 թթ.) երևան եկան «Մուրճ», «Դարբնոց» և «Քուրա» առաջին խմբակները Երևանում, Թիֆլիսում և Մոսկվայում: Ստեղծագործական այդ խմբակների թվում էր 1899 թ. Թիֆլիսում Թումանյանի կազմակերպած «Վերնատունը»: 1888 թվին Թումանյանը ստեղծել էր մի այլ խմբակ, որի մասին վկայում է նրա մտերիմ ընկեր Արսեն Ղլտճյանը: Այդ առաջին «Վերնատունը», որ «ցարդ մնացել է անծանոթ ու անհայտ», ընդգրկել է հինգ գրականասերների՝ Հ. Թումանյան, Դ. Շահլամյան, Ա. Առաքելյան, Գր, Վանցյան, Ա. Ղլտճյան: Հավաքույթները տեղի են ունեցել Թիֆլիսում Դաթիկո Շահլամյանի բնակարանում, բացի այդ, դարասկզբին «Վերնատանը» զուգահեռ Աղայանը, Թումանյանը, Իսահակյանը, Շիրվանզադեն, Շանթը, Դեմիրճյանը և ուրիշներ հաճախում էին նաև իշխանուհի Մարիամ Թումանյանի հինգշաբթիներին, կարդում իրենց նոր գրվածքները, քննարկում: Միշտ էլ Թումանյանի համար գրական աշխատանքը նեղ հասկացողություն չէր և սերտորեն առնչված էր հասարակության կյանքի ու խնդիրների հետ: Մեծ նշանակություն տալով գրողների փոխադարձ կապերին, նա անձամբ տալիս է լավագույն օրինակը՝ լայն կապեր հաստատելով ո՛չ միայն թիֆլիսահայ, այլև ռուսահայ և արևմտահայ գրողների հետ: Նրա ստեղծագործությունը սնվում էր մարդկանց հետ ամենօրյա շփումից, կենդանի զրույցներից: Նա հաճախադեպ էր և «բանավոր կյանքում»՝ բազմատեսակ կապերի ու առնչությունների մեջ: Նա առանձնասենյակային գրող չէր և երբեք չէր ներփակվում փղոսկրյա աշտարակի մեջ: Թումանյանը մշտապես զգում էր ընկերների կարիքը, սովորություն ուներ կարդալ գրվածքները, ճշտել ու ստուգել իրեն արված դիտողություններով: Նրա տունը հյուրընկալ հավաքատեղի էր գրողների, արվեստագետների, մշակութային գործիչների համար:

Թումանյանի հետ հանդիպումը մեծ դպրոց էր հատկապես երիտասարդության համար: Դ. Դեմիրճյանը այսպես է հիշում իր առաջին այցը. «1895-96 թիվն էր... արդեն հանդես էի եկել իբրև բանաստեղծ, շտապում էի վայելել տաղանդավոր բանաստեղծի ծանոթությունը: Շատ շուտով եկավ այդ բաղձալի օրը, Ավետիք Իսահակյանը վերջապես ներկայաց-

րեց ինձ Թումանյանին: Արդեն իսկ մի բան էր այդ 17 տարեկան աշակերտի համար... Առաջին տպավորությունը... այն էր, որ Թումանյանը հարատև ոգևորության մեջ էր: Նրա ժպտուն աչքերում կարդացվում էր լայնորեն կյանք նետված և հաղթանակած բանաստեղծի գիտակցությունը... Այդ օրվանից ես զգացի, որ Թումանյանը նոր բանաստեղծության կենտրոնաձիգ և կենտրոնական ուժն է»:

Սկզբում Թումանյանի տանը հանդիպում էին «գրական երեքը»՝ Թումանյանը, Իսահակյանը և Դեմիրճյանը: Առաջին հանդիպումները, իհրավի, վճռորոշ եղան: Նրանց կապում էր «նոր տենչանքների ու սպասելիքների նույնությունը»: Դա ապագա խմբակի հիմքն էր: Գնալով հանդիպումները դարձան հաճախակի ու նպատակային, ընդգրկելով նոր անդամների՝ Ղ. Աղայանին, Լ. Շանթին, Ն. Աղբալյանին: Պատվավոր տեղ էր հատկացվում Ղ. Աղայանին, որը Թումանյանի մտերիմն էր, բոլորի «սիրելի բարեկամը», գրական հին սերնդի ներկայացուցիչն ու «երիտասարդ ծերը», որին և «նահապետ» անունը տրվեց: Բնականաբար անհրաժեշտություն առաջացավ գրական երեկոներին անուն տալ, որոշվեց անվանել «Վերնատուն». Թումանյանի բնակարանը գտնվում էր Բեհբության փողոցի շենքի վերնահարկում: Թերևս որոշ սիմվոլիկ նմանություն էր դիտվում այդ հանդիպումների և Քրիստոսի աշակերտների վերնատան հավաքույթների միջև: Խմբակը կնքվեց 1900 թ., բայց այն փաստորեն գործում էր մեկ-երկու տարի առաջ: «Վերնատանը» մասնակցում էին, իհարկե, ուրիշ գրողներ, այլ մասնագիտության տեր մարդիկ ևս՝ արվեստագետներ, պատմաբաններ, լեզվաբաններ, նկարիչներ: Որպես հյուրեր հաճախ ներկա էին լինում Պ. Պռոշյանը, Մուրացանը, Վրթ. Փափազյանը, Կոմիտասը, Գ. Բաշինջաղյանը, Փ. Թերլեմեզյանը, Լեոն, Հ. Հակոբյանը:

Ի՞նչ նպատակ ուներ «Վերնատունը»: Լեոյի կարծիքով, այն ուներ ուսումնառության նպատակ: Ունկնդիրներն սկզբում զրուցում էին գրականության բազմապիսի հարցերի շուրջը, վիճում, մտքեր փոխանակում: Հաճախ ամբողջ երեկոներ էին նվիրվում դասականների երկերի ընթերցմանն ու քննարկմանը: Հատուկ պարապմունքներ նվիրվեցին Սոֆոկլեսին, Էսքիլեսին, Եվրիպիդեսին, Շեքսպիրին, Գյոթեին, Բայրոնին, Հայնեին, Պուշկինին, Լերմոնտովին: «Կարդում էինք ժողովուրդների ֆոլկլորից,- հիշում է Իսահակյանը,- և հիանում էինք ժողովուրդների անկեղծ ստեղծագործություններով՝ ռուսական բիլինաներով, սիրիական պոեմներով, մեր «Սասունցի Դավթով» և շատ ուրիշներով: Մեր բոլորի սիրածն

էր Սայաթ-Նովան, որին բարձրացրինք հանճարների դասին, ունեցանք պաշտամունք նրա հանդեպ, մեր բոլոր խնջույքներում երգում էինք նրա տաղերը... Մենք վերակենդանացրինք նրան, տարածեցինք նրա համբավը»:

Վերնատնեցիները ունեին գրական կյանքի վրա ներգործելու նպատակներ ևս: 1902 թ. Փ. Վարդազարյանին ուղղված մի նամակում Թումանյանը, խոսելով «գրական եռանդուն կյանք» սկսելու անհրաժեշտության մասին, գրում է. «Պետք է մի նոր հոսանք առաջ բերել, նոր գրական հասկացողություններ, ճաշակ, լուրջ վերաբերմունք, պատկառանք դեպի գրիչը, գրչի անպայման մաքրություն»:

Ուրեմն և «Վերնատունը» նոր տիպի գրական կազմակերպություն էր, ուր սովորելով դասականներից, թափանցելով նրանց արվեստի գաղտնիքների մեջ, անդամները ձգտում էին մշակել իրենց սկզբունքներն ու ըմբռնումները: Դա երևում է պարապմունքների ընդհանուր բնույթից: Նրանցում շոշափվում էին գրականության բազմաթիվ հարցեր, ստանում նոր լուսաբանություններ: Վերնատնեցիների ուշադրության կենտրոնում էին գրական կենդանի կյանքը, ստեղծագործական բուն ընթացքը, գրողների առջև դրված հրատապ խնդիրները՝ գրականություն և արդիականություն, ժողովուրդ և գրականություն, լեզու և ոճ, ստեղծագործության ձև և բովանդակություն և այլն:

Վերնատնեցիները սահմանագծվում էին անցյալի տարաշխարհիկ գրողներից, «Մշակի» լիբերալ ուղղությունից, բայց բարձր էին գնահատում հայրենասեր գրողներին՝ Աբովյանին և Րաֆֆուն, ընդգծում հայ դասականների ժողովրդայնությունն ու մարդասիրությունը: Յավանական է, որ 90-900-ական թվականներին Թումանյանի հոդվածներն ու ելույթները Շեքսպիրի, Սայաթ-Նովայի և մյուս գրողների վերաբերյալ մտահղացվել են «Վերնատան» պարապմունքներում: Այդտեղ անցկացվող զրույցները թափանցել են Իսահակյանի, Դեմիրճյանի, Շանթի, Լեոյի և ուրիշների այդ և հետագա շրջանի ելույթները, նամակները և հուշերը:

Երբեմն էլ «Վերնատանը» տեղի են ունեցել բուռն բանավեճեր:

«Յիշում եմ, մի բանավեճ սկսվեց իմ և Աղայանի միջև,- գրում է Դեմիրճյանը,- պատճառը ես էի, որ չգիտեմ մեր զրույցի ինչ մտքից անցա գրական հին և նոր սերունդների հակամարտության խնդրին:

- Ոչ մի հակամարտություն էլ չկա այս ձեր սերնդի և մեր սերնդի միջև,- ասաց Աղայանը հեղինակավոր ձայնով և առանձին շեշտով:

Ես պնդեցի, որ կա և ընդհանուր մտքերից անցա կոնկրետ բացատրությունների՝ օրինակ բերելով ուղղակի իրեն՝ Աղայանին և մեր «Վերնատան» մյուս անդամներին: Թումանյանը գոհունակ նայեց Շանթին և քթի տակ ժպտաց: Այնուհետև քանի գնաց՝ մեր վեճը տաքացավ: Աղայանն սկսեց անհանգիստ նստել, վեր կենալ, հաղթ մարմինը վրա բերել, կայծակ ու շանթ թափել ինձ վրա: Նա զարմացած էր իմ հանդգնության վրա, զայրանում էր, որ չեմ համոզվում, և այնպես էր անհանգիստ, կարծես ես կարող էի վտանգել նրա ամբողջ գրական գործունեությունը: Թումանյանը ժպտում էր շարունակ և չէր միջամտում: Ես զգացի, որ մի տեսակ կատարում եմ նրա և Շանթի պատվերը և խոսում եմ նաև նրանց կողմից: Վերջապես Թումանյանը մի կատակով ընդհատեց ինձ, ես լռեցի, Աղայանն սկսեց մշմշալ և գլուխը տանել-բերել:- Դու բանի մտիկ... սա ինչեր է ասում...

Այնուհետև շատ անգամ Թումանյանը հիշեցնում էր ինձ և Շանթին իմ հանդգնությունը և ծիծաղելով կրկնում էր՝ «Նա կարծում է, թե աշխարհքն էլի էն է»:

«Վերնատանը» բացի դասականների երկերից, քննվում էին նաև ժամանակակիցների նոր գրվածքներ: Ամենայն հավանականությամբ այդտեղ են նայվել Թումանյանի «Դեպի անհունը», «Թմկաբերդի առումը», «Փարվանա» պոեմների նախագծերը, «Մծիրիի» թարգմանությունը, Իսահակյանի և Շանթի առանձին բանաստեղծություններ, որ լույս էին տեսնում «Մուրճում» և «Տարազում», Դեմիրճյանի «Կյանքի տեսիլը» և այլ գործեր:

«Վերնատան» լուրջ երեկոներին հաջորդել են տանտիրոջ առատ սեղանի շուրջը կենդանի զրույցները, ուրախ կատակները, երգն ու արտասանությունը: Բոլորի հիացմունքն է առաջացրել Ղազարոս Աղայանը, որը կատարել է Քյորօղլու ասպետական երգերը իր թարգմանությամբ: Իսկ ավելի հաճախ Թումանյանը կենդանի զրուցում էր, պատմում Լոռու կյանքից, խոսքը համեմելով լիաթոռ հումորով և ժողովրդական բառ ու բանով: «Վերնատունը» ամուր մտավ նրա անդամների կենցաղի մեջ, որպես մի նվիրական հավաքատեղի. «Անմոռանալի ժամեր ենք անցրել վերնատանը,- հիշում է Իսահակյանը,- իմաստավորված, բովանդակալից, ներշնչող պահեր»: Տարիներ անց Լ. Շանթը մի առանձին սիրով է հիշել գրական բարեկամների հետ հանդիպումները:

«Վերնատան» օրերի նվիրական պահերի մասին ժողովրդական նկարիչ Փանոս Թերլեմեզյանը գրում է. «Նրա տունը արվեստի մարդոց ժամադրավայրն էր... այդ տանն էր, որ հայ արվեստը բարձրացնելու ձգտումներն ու հույզերն իրար են խառնվում»:

«Վերնատունը» իր գոյությունը ընդհատեց 1906-1907 թթ.: Դրանից հետո Թումանյանի տունը, իհարկե, շարունակեց մնալ գրական հանդիպումների հավաքատեղի, սակայն վերնատնեցիներին և այդ թվում Հովի. Թումանյանին սպասվում էին գործունեության նոր շրջանակներ: Հայ հասարակական բարդացող կյանքը թելադրում էր այլ պահանջներ, առաջ քաշում գործունեության նոր ծրագրեր ու խնդիրներ, որոնց համար «Վերնատան» շրջանակներն արդեն նեղ էին:

«Վերնատան» գործունեությունն անցավ բանավոր և մեզ հասավ հիմնականում ժամանակակիցների հիշողությունների մեջ: Այնուամենայնիվ, անտարակույս է, որ այն բարերար ներգործություն ունեցավ 20-րդ դարի սկզբի հայ գրական-ստեղծագործական կյանքի վրա:

***«Հայոց լեզուն և գրականությունը դպրոցում»,***
***1990, N 5, էջ 24-26:***

# ԾՈՑԱՏԵՏՐ N 8 (3)

< > - Սուրանկյուն փակագծերի մեջ դրված են «Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ», հ. 5-ի խմբագրության վերականգնած և ըստ տրամաբանության անհրաժեշտ տառերն ու բառերը:

* - Այս նշանով տողատակ բերվում են «Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ», հ. 5-ի խմբագրության ծանոթագրությունները և հայատառ թուրքերեն գրառումների թարգմանությունները:

1. Ինձ համակրում են՝ I 14.
Գիրգիդյան
Օր. Գյուզալյան
Բարխուդար
Աստվածատուր
Գարիծելյան
Նազարեթյան
Ես երաշխավոր եմ՝
Վարդուհի Գարիծելյան

2. 1897 թ. հուլիսի 6-ին, առավոտյան ժ. 7-ին ընտանիքով Թիֆլիսից դուրս եկանք դեպի Լոռի:

3. 1899 թ. հուլիսի 16-ին քեռի Սիմոնը պատմեց.

Մի ծիտ բռնել էին, դրել մի ոսկե ղափաղում, որ երգի, ուրախանան: Սա հենց միալար ձեն էր տալիս՝ վա՜յ վաթան, վա՜յ վաթան: Բերին, սրա ղափաղն ավելի սիրունացրին, շաքար ուտացրին, շաքարի հաց: Էլի՝ վա՜յ վաթան, վա՜յ վաթան: Ղանեցին թե՝ սրան բաց թողեք, տեսնենք ուր է գնում, սրա վաթանը ո՞րն է: Գնաց, մտավ ջրափերի չայլղը - խոտերի մեջ: Էն օրվանից երգում է՝ վա՜յ վաթան: Մի քանիսն ասում են (Խանբիձեն), թե էն օրվանից սկսեց երգել՝ ա'յ վաթան, ջա'ն վաթան, ջա'ն վաթան: Ասում էին, որ սա տորոլ է (торол), Արտույտը:

4. **(Բաղո բիձու պատմածը)**

Թռլոնը երգում է՝ Սիքտի-սիքմատի, ղուչդի-թուղմատի, սիք, վերջումը սիք:

Իբրև թե մկան հետ են ընկել: Մուկը նրան ...ել է ու մտել ծակը [սիրեց, խաբեց, թողեց ինձ, գնաց, ետ չեկավ] ինքը մնացել է, խաբվել է: Էն

օրվանից երգում է դավաճանության կամ խորթ-օտար տարրի հետ սիրային կապի ողբերգությունը:

Եվ <1 անընթ.> ասում է, թե բոլորս էլ մեղքի գործով աշխարհ եկած բաներ ենք և այլն: Թռլոնն ասում է՝ առաջ ես, մուկը թե՝ չէ, դու մի թռչուն ես, կանես ու կթողնես, հետո ես ի՞նչ անեմ: Համաձայնում են. մուկը անում է, թռլոնն ետ է մտիկ անում, որ ծակն է մտել(1):

5. Աղաբեկանց Արութի ասածը մեր երկաթուղու վրա.
Թիֆլիզ շեհարընտան յարըբ գեալիր մաշինա,
Տամուրլարի բասար, գիտար,
Ինջեների պլան վերերիմ, քեասար, գիտար,
<1 տող անընթ.>
Գեազեր, ստանցիալարտա բիր-բիր տուրար,
Նաչալլիկ ղուլլուղլարի բույրեր*:

6. Ղոշա թելլար տալընջա վարտըր,
Գեալտի գէչտի Լոռու միալի,
Թորփաղա գիրտի ատը Շիալի,
Բույուրուր գեալիր Փամբակ, Ղարաքիլիսա:

Շիարտան գեթըրարըմ շաքարի, ղանդի,
Չոխ հունտուր ղուրուփտըլար զամլունըն բանտի,
Ղարաքիլիսատան չխար, գեատար Ղշլաղքեանտի,
Յըմարտան գեատար մաշինա յոլի**:

---

* Թիֆլիս քաղաքից սուրալով
Գալիս է գնացքը,
Երկաթգծով կտրում, անցնում է,
Ինժեների պլանով կարճ ճանապարհով է անցնում,
<1 տող անընթ.>
Գալիս է, կայարաններում մեկ-մեկ կանգնում,
Պետի ծառաներին հրամայում:

** Մեջքին ունի զույգ հյուսեր,
Եկավ-անցավ Լոռու թաղով,
Շիալի անունով հողի մեջ մտավ
Հրամայելով գալիս է Փամբակ, Ղարաքիլիսա:

Քաղաքից կբերեմ շաքար ու ղանդ,
Շատ են ամրացրել զուլումի շղթան,
Ղարաքիլիսայից դուրս կգա կմտնի Ղշլաղ գյուղը,
Մեր մոտից է անցնում գնացքի ճամփան:

7. Ուստումզտա վար Չատի գյոլի,
Փամբակտա չխար գիրար Ալեքսանդրապոլի,
Գեջա գյունդուզ գիազար գիտար,
Թունելլարի տաշար գիտար:

Ալեքս - չխար, Ղարսի ղալա գիտար,
Աղաբակ օղլում էյլարմ բիր ղալա քարիփ,
Օքախլարտա օքուրելլար իչելլար շարբաթ շարխի,
Ուստաքի ղամեարտա քիմշի ուլուտը քիմշի ղարիբ
Յարըփ թազա գեալար գյորմամիշա մաջա գեալար[*]:

8. (Գրիգորն է լսել Ախալքալաք)

Փարվանա (կրակի թիթեռ) թագավորը մի աղջիկ է ունենում. ասում է՝ ով որ կրակ բերի, նրան կտամ: Դա գալիս է, կրակի շուրջը պտտվում, որ կրակ տանի և միշտ ընկնում է մեջը, այրվում(2):

9. Գոմեշը - օ՜օ՜:

10. Թիֆլիսեցիների բարբառ

Маскарад - մասխարեք

11. Սովորական բանաձևեր, որ ամեն մեկը գործ է ածում ամեն ժամանակ.

Մեր ընկած հոգևորականությունը.
Մեր աղքատ գրականությունը.
Արասխանյանցի «Մուրճը»
(Չեն ասում Սպա<նդարյանի> «Նոր-Դարը», Արծրունու «Մշակը», Նազարյանի «Տարազը»)
Մեր կեղտոտ մամուլը.
Մեր խեղճ գրողները.

---

[*] Մեր վերևում կա Չատի լիճը,
Փամբակից ելնում է, մտնում Ալեքսանդրապոլ,
Գիշեր-ցերեկ թափառում է, գնում
Թունելները մտնում-անցնում,

Ալեք<պոլից> դուրս է գալիս, Ղարսի ճամփան բռնում,
Աղաբակ աղայիս կկանգնեցնեմ մի ամրոց գովելի,
Սենյակներում կնստեն, կխմեն օշարակ <1 անհասկ. բառ>
Վերևի կտուրներում ո՞վ էր <1 անհասկ. բառ>
Ո՞վ էր ղարիբը,
Արդյոք նորից կգա՞: Ինձ չտեսած կգնա՞:

12. Սրա թայի քար էլ չկա - (շատ է մեծ տարիքով)

13. Մի քոռի ասում են՝
- Կնիկդ մեռել է,- թե՝
- Ասենք քոռ եմ, բա գիշերն է՞լ չեմ տեսնում, որ կողքիս չի:

14. Գլուխը ժաժ տալը
Օսեփ աղի՝ բոշի կնկա <1 անընթ.> փոշին
Օսանենց Ղազարի հարսանիքը Գագոլի կնկա կշտին Օծնա տան-ուտերը քթոցի տակ:

15. Օծնեցի Կոկոլի տրեխ պահելը ամպի թուշին:

16. Ծմակի կուկուն կտրացնել պտի:

17. ցրվում-ցնորվում
-
կաս կարմիր - կայծ կարմիր
-
Կնդրուկ
-
Ծերությունից դեղնել էր
-
Օձի խորովածուտացրեց
-
Դու նոր կկենաս, քանի որ կա այս աշխարհքը նոր ու հին
-
Սանձի փոխարեն գավազան է բռնել
<1 անընթ.> այնպես բռնել, ինչպես <2 անընթ.>
-
լա'ց ու թաց անել
-
թամբդ լիքը կենա

18. **Ֆելիետոն**
Ո՞վ են Անգլիայի պարծանքները.
Քոռ Միլտոնը
Քաչալ Շեքսպիրը

Չոլախ Բայրոնը

19. Իմ հիշողություններն արյունոտ են, նրանք զարկված են սրով:

-

Իմ ուրախությունը քեզնով է կյանք առնում, քեզանով ապրում:

-

Դու սիրում ես գովեստներ, դրանով էլ պակսեցնում ես նրանց թիվը:

-

Էս աշխարհը ոգի չունի, հիմքը [դրած] գերեզմանի վրա:

-

Երկինք-գետինք չափող թևեր

-

Մարդու կյանքը սրտի մեջ է:

-

(Նա էն մարդկանցից է, որ շան հետ հաչում են, գիլի հետ ուտում)

-

Արել ա իր ձեռքով, թող լա իր աչքով:

-

Լվի աչքից արին եմ առնում (էնպես շնորհք ունեմ):

*

Պահվում է Թումանյանի թանգարանում, N 1029 / Թ-2617:

Ծոցատետրի N 2 գրառումը թվագրված է «1897 թ. հուլիսի 6», N 3-ը՝ «1899 թ. հուլիսի 16»: Այստեղից կարելի է ենթադրել, որ մյուս նյութերը ևս վերաբերում են 1897-1899 թվականներին:

1. Այս բանահյուսական նյութը Թումանյանը մշակել է և հրատարակել «Թռլոնն ու մուկը» վերնագրով (տե'ս Յովհաննես Թումանյան, Երկերի լիակատար ժողովածու, հ. 2, Երևան, 1990, էջ 192, 421, 571):

2. «Փարվանա» լեգենդի առաջին գրառումներից է (տե'ս նույն տեղում, էջ 121, 385, 558):

***«Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ», h. 5, Երևան, ՅՅ ԳԱԱ «Գիտություն» հրատարակչություն, 1998, էջ 251-255, 396***

*ՍՈՒՍԱՆՆԱ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ*

# ԹՈՒՄԱՆՅԱՆԻ ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ 1901 ԹՎԱԿԱՆԻՆ

«Աշխարհքում եթե մի քանի լավ բաներ կան - մեկն, անշուշտ, ճանապարհորդությունն է: Ճանապարհորդելով մարդու և' աչքն է բացվում, և' սիրտը»[161]:

ՀՈՎՀ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

Անցյալ դարի առաջին տարիները Թումանյանի ստեղծագործական վերելքի շրջանն էին: 1903 թ. ժողովածուն նրա բանաստեղծական ոգևորության խոշոր բռնկումներից էր, նվաճում, գեղարվեստական տեսողության զորացման, բանաստեղծի տաղանդի հասունացման արտահայտություն, արվեստի կատարելության դրսևորում, բյուրեղացում: Ստեղծագործական որոնումների շրջանը հանգեցրեց լավագույնի հայտնաբերմանը, մարդագիտության ոլորտում հետաքրքրական բացահայտումներին:

XX դարասկզբի այդ արտասովոր ներշնչանքն ու ոգևորությունը, արվեստի նոր հորիզոնների նվաճումը չէր կարող պայմանավորված չլինել բանաստեղծի կյանքի հանգամանքներով: Այդ վերելքը Թումանյանի ապրած կյանքի բնականոն արտացոլքն էր: Ստեղծագործական երկամյա տևական (1901-1903 թթ.) ոգևորությունը պայմանավորված էր նաև կենսական լիցքերով, գրական աշխատանքին ուղեկցող հոգեբանական գործոններով:

Ըստ գրականագետ Լևոն Հախվերդյանի՝ XX դարի առաջին տարիները՝ Վերնատան տարիները, Թումանյանի «չգիտակցված երջանկության» տարիներն էին, որովհետև բանաստեղծը չգիտեր, որ այլևս երբեք, մինչև կյանքի վերջը երբեք չի գտնելու հանգիստ աշխատելու հնարավորություն, չի ապրելու ստեղծագործական կյանքի այդպիսի վերելք[162]: Վերջինս պայմանավորող գործոններից է այն, որ այդ տարիներին Թումանյանը շատ է ճանապարհորդել, տպավորվել և ստեղծագործել:

---

[161] **Հովհ. Թումանյան,** Երկերի լիակատար ժողովածու 10 հատորով, հ. 9, Երևան, էջ 278 (այսուհետև հատորը և էջը կնշվեն մեջբերումներին կից):

[162] Մեծերը ամենամեծի մասին (Վերնատան անդամները Թումանյանին), կազմող և առաջաբանի հեղինակ՝ Լ. Հախվերդյան, Երևան, 1999, էջ 4:

Թումանյանը գրողի համար բարեբախտություն էր համարում ճանապարհորդելու հնարավորությունը, որովհետև միայն այդպես կարելի է հասնել տպավորությունների հարստության, հակառակ դեպքում՝ «...վայ այն բանաստեղծին, որ աղքատ է տպավորություններով» (9, 268): Բանաստեղծն ինքն իրեն «այդ կողմից բախտավոր» չէր համարում: Կյանքն ու պայմանները Թումանյանին աշխարհներ տեսնելու հնարավորություն չընձեռեցին: Թեպետ նրա բարեկամներն ու ընկերները հաճախ էին փորձեր անում նյութական միջոցներ գտնել նրա արտասահմանյան ուղևորությունների համար, սակայն ապարդյուն. երբեմն բանաստեղծն ինքն էր հրաժարվում՝ չկարողանալով անտեսել իր բազմաթիվ պարտատերերին: 1901 թ. այդպիսի մի փորձ արեցին Բաքվի հայ գրասերները, որոնք ամեն ինչ արեցին Թումանյանին նյութապես օժանդակելու համար, որպեսզի նա ուղևորվի Ռուսաստան, բայց չկարողացան: Ինքը՝ բանաստեղծը, Հայաստանի գավառներում շրջելը պակաս կարևոր չէր համարում, քան աշխարհով մեկ շրջելը: Ա. Ղլտճյանին ուղղած նամակում Թումանյանը գրում է. «Ես ու Աղայանցը որոշել ենք գնալ գավառները՝ նյութեր հավաքելու: Ահա քեզ Ռուսաստանից ավելի կարևոր մի բան» (9, 249): Իհարկե, Թումանյանը մեծ ցանկություն ուներ տեսնելու Պուշկինի և Տոլստոյի, Լերմոնտովի և Դոստոևսկու հայրենիքը, սակայն «...ինչպե՞ս կարող եմ Ռուսաստան գնալ՝ ...ետևիցս թողնելով մի այսպիսի մանրապճեղ ընտանիք ու պարտքատերերի բազմություն» (9, 248):

Եվ, իրոք, 1901 թ. Թումանյանին չի հաջողվում ո'չ Ռուսաստան գնալ, ո'չ էլ Ղ. Աղայանի հետ ճանապարհորդել, բայց այդ տարվա ամառը նրա համար դառնում է տպավորությունների հարստացման, ստեղծագործական ոգևորության տարի:

1901 թ. Թումանյանի ուղևորությունների առաջին կանգառը Ուրավելն էր՝ Բելի Կլյուչը, ուր նա հասավ հունիսի 21-ին[163]: Առաջին գիշերը հյուրընկալվում է Կարապետ Գալֆայանին, որը վարձել էր փայտե մի տնակ՝ լվերով լեցուն: Այդ շրջանում Ուրավելում կառուցվող բոլոր տները փայտից էին, քանի որ կառավարությունն իրավունք չէր տալիս քարե տներ կառուցելու: Անքուն «դժոխային» գիշեր անցկացնելուց հետո Թու-

[163] Ժամանման օրը պարզ է դառնում Փիլ. Վարդազարյանին ուղղված հուլիսի 20-ի նամակի թվագրությունից՝ «Այսօր ուղիղ մի ամիս է, որ ես Ուրավել եմ», ինչպես նաև կնոջը՝ Օլգա Թումանյանին ուղղված հունիսի 22-ի գրեթե անընթեռնելի թվագրության համադրությամբ (9, 593):

մանյանը փորձում է ավելի լավ պայմաններով քարե տուն գտնել: Թանկության պատճառով հրաժարվում է 65 ռուբլով վարձով տրվող բնակարանից և 30 ռուբլով վարձում է նախկին հիվանդանոցի՝ հոսպիտալի՝ գրեթե ավերակների վերածված, սակայն նորոգվող ու քարաշեն խոհանոցը: Ընդ որում, տանտերը խոստացել էր օգոստոսի 1-ից հետո վարձը դարձնել 20 ռուբլի: Սակայն երբ ավելի բարեկարգ 65 ռուբլով վարձով տրվող տան տերը ծանոթանում է Թումանյանի հետ և տեղեկանում, որ նա Տեր Թադևոսի որդին է, անմիջապես խնդրում է կես գնով, թեկուզ անվճար մնալ իր տանը, որպեսզի կարողանա գեթ մի քիչ փոխհատուցել Տեր Թադևոսին այն բոլոր լավությունների դիմաց, որոնք նա արել էր Գյառգյառում ուսուցիչ աշխատելիս: Բայց Թումանյանն անվճար տրամադրվող կենցաղային պայմաններից ու հարմարություններից հրաժարվում է, թեև դեռ չէր տեղափոխվել նոր վարձած բնակարանը, սակայն արդեն խոսք էր տվել: Ոչ մի գայթակղիչ առաջարկ չէր կարող սասանել, խախտել Թումանյանի տված խոսքը, որը նրա համոզմամբ միշտ տիրոջ իրավունք ունի խոստացողի նկատմամբ:

Առաջին օրերին Թումանյանն աշխատում է նոր ծանոթություններից խուսափել և հանդիպում էր հիմնականում Կարապետ Գալֆայանին, որի հետ անտառներում զբոսնելիս վիճում և զրուցում էր Աստծո գոյության, ամուսնական կյանքի օգտակարության, «Մշակի» «լրբության» մասին[164]: «Սրտիս ուզած ժամանակ,- գրում է Թումանյանը,- խոսում էի

[164] 1897 թ. Կ. Գալֆայանը Թումանյանի միջնորդությամբ և բարեգործական ընկերության միջոցներով մեկնում է Փարիզ՝ դերասանական արվեստը կատարելագործելու: «Մշակը» տպագրում է (1897, N 6) Արշակ Հարությունյանի «Նամակ խմբագրությանը» հոդվածը, որտեղ ծաղրուծանակի է ենթարկում Կ. Գալֆայանին: Թումանյանն անմիջապես պաշտպանության տակ է առնում երիտասարդ դերասանին՝ դատապարտելով բոլոր նրանց, ովքեր դափնիներով են որոշում տաղանդը, մինչդեռ «հասկացող մարդը երեխայի խզբզանքից կամ տունիկներ շինելուց է կարողանում նկատել ապագա նկարչին ու ճարտարապետին»: Բանաստեղծը պաշտպանության տակ է առնում Ս. Մ. Ծոցիկյանի «Ապագա դերասանը» հոդվածի դրվատական խոսքը Գալֆայանի մասին («Արձագանք», 1897, N 2): Գալֆայանին պաշտպանելով՝ Թումանյանը «Տարազում» տպագրում է իր հրապարակախոսության փայլուն էջերից մեկը՝ «Տաղանդ և բթամտություն» հոդվածը, որը պատասխանն էր Հ. Սևյանի «Թատրոնի շուրջը» հոդվածի, ուր հեղինակը ծաղրուծանակի է ենթարկում Կ. Գալֆայանին՝ ասելով. «...Հայտնվեց այս նորածինը, մեր աչքի առաջ եղած ոչինչը վեց ամիս հետո մի ինչ դարձավ, մի տարուց հետո տաղանդ և այժմ, մոտ երկու տարի՝ «աստղ», «արտակարգ երևույթ» («Մուրճ», 1898, N 10-11, էջ 1578-1579): Թումանյանը պատասխանում է դիպուկ և սուր, իրեն այնքան բնորոշ ասութային արժեք ունեցող բանաձևով՝ «Մի գաղտնի խորհրդով տաղանդի երևույթից միշտ վրդովվում

Շեքսպիրի, Գյոթեի, Նիցշեի ու Բրանդեսի հետ ու կրկին խաղաղ մենակ մտորում, մինչև որ Գալֆայանը գոռում էր դիմացի բլրից - բանաստեղծ հայոց, այստեղ՝ անտառում, քո մուսաները ման են գալիս և այլն, և այլն, և դաչնիկները դուրս էին թափում թամաշա անելու «խելառին» (9, 263):

Թումանյանի, այսպես կոչված, մենակությունը տևում է մեկ-երկու օր: Բանաստեղծը զարմանքով պարզում է, որ այդ քաղաքում ոչ միայն ճանաչված է, այլև սիրված. «...հայտնվեց, որ ես այդ քաղաքում անծանոթ ղարիբ չեմ, հայտնվեցին շատ բարեկամներ, որոնցից շատ շատերին, իհարկե, չեմ ճանաչում» (9, 249): Պարզվում է նաև, որ այդ փոքրիկ քաղաքում իր բոլոր բանաստեղծությունններն անգիր գիտեն, գիտեն նույնիսկ իր ժողովածուների տպագրության տարեթվերը, ուշադիր հետևում են մամուլում նրա յուրաքանչյուր ստեղծագործության հրապարակմանը. «...մի խոսքով, շուտով տարածվեց, որ ես ազգային ջոջ եմ, ոչ թե Վարշավից եկած մի հրեա վաճառական» (9, 250): Թումանյանը այս ասելով, նկատի ուներ իր արտաքինը, հագուստը, «նոր առած գլխարկը», որոնք նրան եվրոպացու էին նմանեցնում:

Ուրալելում տարածված և սիրված է եղել Թումանյանի 1891 թ. գրած «Կանչ» («Եթե կաս, Աստված») բանաստեղծությունը, որն այդ օրերին հեղինակին առանձնապես դուր չէր գալիս, բանաստեղծություն, որը չարին պատժելու կոչ էր Աստծուն, միաժամանակ աղերս ու պահանջ, բանաստեղծություն, որի տպագրությունը «Մուրճում» ժամանակին արգելել էր գրաքննությունը, այդ պատճառով էլ առաջին անգամ ոչ թե մամուլում, այլ ժողովածուում լույս տեսավ: Ի դեպ, բազմաթիվ վկայություններ կան, որ «Կանչը» շատ սիրված է եղել ժամանակակիցների կողմից: Քննադատ և մանկավարժ Գ. Վանցյանը 1893 թ. ապրիլի 8-ին բանաստեղծին հղած նամակում գրում է. «Կանչը» ամեն տեղ ֆուրոր է անում... Եթե, Հովհաննես ջան, ուրիշ ոչ մի բան չգրեիր, այդ ստեղծագործությու-

---

է բթամտությունը» (6, 1994, 110-111), որը միշտ խեղդում է ու աշխատում է խեղդել տաղանդը, բայց երբ չի հաջողում և տաղանդը հարթում է իր ճամփան, անամոթ ճակատով կանգնում ու նրան կուռք է դարձնում: Գալֆայանը 1900 թ. ամռանը եղել էր Պոլսում հյուրախաղերով, «Մշակը» դարձյալ իր հեգնական վերաբերմունքն էր դրսևորել («Մշակ», 1900, N 154): Բնական է, որ «լրբություն» ասելով Գալֆայանը նկատի է ունեցել հենց այդ վերաբերմունքը, որը շարունակությունն էր Պետրոս Ադամյանի հանդեպ հալածանքների: Ադամյանի խաղը «Մշակը» համարել էր անբնական, արվեստական, տգեղ, իսկ տաղանդներին բաժանելով տանելի և անտանելի, Ադամյանին նույնիսկ անտանելի տաղանդ չէր համար («Մշակ», 1879, N 224):

նը բավական էր քեզ բանաստեղծի կոչմանը արժանացնելու: ...Ունիս, այո, շատ գեղեցիկ բաներ... բայց «Կանչը» դա գլուխգործոցդ է, դա մի գոհար է»[165]: Նույնն են վկայում Ներսիսյան դպրոցի Թումանյանի դասընկերներ Արամ Առաքելյանը (ՈՒՀ, 4, 314) և մանկավարժ, թարգմանիչ Ջալալ Տեր-Գրիգորյանը (ՈՒՀ, 4, 318):

Եթե կաս Աստված,
Մեղմացրու մարդկանց
Կիրքն ամբարտավան:
Եթե Աստված ես դու խաղաղության,
Ինչո՞ւ տակավին
Չես պատժում չարին,
Ո՞ւյժդ է պակասում,
Թե չենք աղերսում,
...Թե՞ դու չըգիտես,
Որ այստեղ, երկրում
Մարդը ժպտերես
Մարդ է գիշատում...
(1, Երևան, 1988, 85, 86)

Այնպես որ, Թումանյանին առանձնապես չի զարմացնում, որ հենց այդ բանաստեղծությունն անգիր գիտեին գրեթե բոլորը: Քաղաքագլխի հետ ծանոթանալուց հետո Թումանյանն էլ ավելի նշանավոր հյուր է դառնում: Սակայն Թումանյանը շատ ավելի ցանկություն ուներ ընթերցանությամբ զբաղվելու, այդ պատճառով էլ իր հետ մեծ քանակությամբ գրքեր էր բերել ու դեռ ափսոսում էր, որ քիչ է բերել: Եվ նա ցավում էր, որ «առաջին օրերը միայն բավական կարդացի» (9, 258): Ուրավելում ստանում էր «Նովոյե օբոզրենիե», «Մշակ», «Տարազ» պարբերականները, կարդում և տրամադրում էր ուրիշներին: Այստեղ էլ նրա տունը դառնում է գրասերների հավաքատեղի. «...Ուրիշներն էլ ինձանից են վերցնում. գրադարանը իմ տունն է» (9, 259):

Հուլիսի 11-ին Թումանյանը տեղափոխվում է նոր սենյակ՝ «անտառի մեջ կամ մոտ»: Թեև Ուրավելը ամառանոցային քաղաք էր, ուներ գետ,

[165] Թումանյան. Ուսումնասիրություններ և հրապարակումներ, հ. 4, Երևան, էջ 313 (այսուհետև՝ ՈՒՀ, հատորը և էջը կնշվեն մեջբերումներին կից):

անտառ, աղբյուր, սակայն բավական խոնավ էր ու «ճահճային տեղ» (9, 265): Թումանյանի համար Ուրավելը առանձնապես գեղեցիկ չէր, որովհետև «ընկած է փոսի մեջ, հորիզոն չունի» և որպես ամառանոց իր ժամանակի համար «զուրկ էր բոլոր հարմարություններից» (9, 252): Սակայն Թումանյանը Ուրավել չէր եկել բնությամբ հիանալու: Նա վատառողջ էր և կարիք ուներ հանքային ջրերի բուժիչ ներգործության: Հունիսի վերջին օրերին հիվանդության ընթացքը սրվում է, և բանաստեղծը ընդունում է նախ տաք լոգանքներ, որից հետո՝ սառը, սկզբում՝ օրը երկու անգամ երեքից հինգ րոպե տևողությամբ, հետո՝ մեկ: Ամեն օր հանդիպում էր հանքային ջրերի վերատեսուչներին («բանշչիկներին»)՝ Ակոփ աղային և Ստեփանին (9, 268):

Առողջարանային բուժումը, հատկապես սառը լոգանքները, քաղաքի հոգսերից ու աղմուկից հեռու, սիրով ու ջերմությամբ շրջապատված լինելը, Կարապետ Գալֆայանի ընկերակցությունը բարերար ազդեցություն են ունենում, և Թումանյանը զգում էր՝ «Ձղայնությունս գրեթե անցել է» (9, 255): Մեկ այլ նամակում նա գրում է. «...Ջուրն էլ է օգնում, օդն էլ, բայց մանավանդ ազատ լինելը» (9, 259): Ութ երեխայի հայրը դեռ երբեք իրեն այդքան ազատ չէր զգացել ընտանիքի հոգսերից: Թեև այստեղ էլ տասը օրով նրա խնամքին էր հանձնվել Երվանդ Լալայանի աներոջ՝ Հարություն Հարությունյանի որդին՝ 5-րդ դասարանցի մի գիմնազիստ: Թումանյանը նրան պահում է երկու-երեք շաբաթ: Միայն օգոստոսի սկզբին Հարությունյանի ընտանիքը գալիս է Ուրավել և որպես շնորհակալություն փորձում է թույլ չտալ Թումանյանին մեկ այլ տեղ ճաշել: Սակայն դա ոչ մեկին չէր կարող հաջողվել, որովհետև Թումանյան-մարդը հսկայական այնպիսի դրական էներգիա ուներ, որ միշտ իրեն էր ձգում մեծից փոքր անխտիր բոլորին՝ անկախ դասային, սոցիալական, կուսակցական պատկանելություններից: Այսպես, հուլիսի 10-ին 10-12 ուսուցիչներ, գիմնազիստներ, բժիշկներ և այլ մասնագիտության երիտասարդներ Թումանյանին հրավիրում են խնջույքի՝ բնության գրկում, անտառի փեշին, գետի ափին: Նույն օրը Թումանյանի բեմադրությամբ [«...ռեժիսորն էլ ես էի» (9, 255)] տեղի երիտասարդների և ուսուցիչների մասնակցությամբ բացօթյա ներկայացվում է Վասակ Մադաթյանի մեկ արարվածով «Կըռթ-կըռթ» ե-

ռեքլեզվյան վոդևիլը[166]: Որպես բեմ ծառայում էր պատշգամբը, իսկ հանդիսատեսն ունկնդրում էր հոտնկայս:

Հուլիսի 17-ին՝ առավոտյան ժամը 5-ին ուսանողներն ու գիմնազիստները Թումանյանին քնից արթնացնում են և ուղեկցում ուղիղ Ախալցխա, որտեղ բանաստեղծին, ինչպես միշտ և ամենուր, հրճվանքով են ընդունում: «Թե տեսնես ոնց են պատիվ տալիս այստեղ... ինչ առոքփառոք»,- գրում է Թումանյանը կնոջը (9, 257):

Բայց մի օրում ձիով սար ու ձորերով Ախալցխա գնալն ու Ուրավել վերադառնալը հոգնեցնում է վատառողջ Թումանյանին («ջարդված եմ ես») (9, 258):

Հոգնածությունը դեռ չթոթափած՝ հուլիսի 18-ին Ախալքալաքից ստանում է, ըստ երևույթին, Վահան Տերյանի եղբոր՝ Ղազար Տեր-Գրիգորյանի (Ջավախեցի) հրավերը՝ նամակով: Թումանյանին նոր ուղևորության հեռանկարը չէր հրապուրում՝ թե' հոգնած էր, թե' մեծ ցանկություն ուներ ստեղծագործելու, աշխատելու. «Շատ քիչ եմ պարապում, գրեթե չեմ պարապում, ժամանակ չունեմ, հանգիստ չեն տալիս» (9, 258):

Ուրավելում հանգստացողները հիմնականում ախալքալաքցիներ էին, միայն 4-5 ընտանիք եկել էին Թիֆլիսից ու Բաքվից: Ախալքալաքցիներից Վարդան Շահպարոնյանը, ինժեներ Հովհաննես Կարապետյանը և ուրիշներ մի քանի օր շարունակ ամեն օր այցելում էին Թումանյանին, նրա հետ բարձրանում սարերը Ուրավելի անտառապատ կիրճերով, խորդուբորդ ճանապարհներով, ուղևորվում Ուրավելից 5 կմ վրա գտնվող ավերակները դիտելու[167]:

Հուլիսի 27-ին բաքվեցի քահանա Գեղամյանների ընտանիքն էր Թումանյանին սարեր հրավիրել: Բանաստեղծը չի կարողանում երկար մնալ՝ չնայած հյուրընկալների թախանձանքին, որովհետև չկար մի օր, որ ինքը հյուրեր չընդուներ, այդ օրն էլ՝ «Շտապում եմ, մոտս մարդիկ են գալու» (9, 266),- ասում է նա:

Որքան էլ մարդկանց բազմությամբ շրջապատված՝ Թումանյանը կարոտում էր ընտանիքին, հարազատներին ու ընկերներին: Մեկ ամսվա ընթացքում կնոջը հինգ նամակ է գրում, թեև ստացել էր միայն երկուսը:

[166] Վոդևիլի ձեռագիր մի օրինակ պահվում է Թումանյանի անձնական գրադարանում (տե'ս Հ. Թումանյանի տուն-թանգարան, N 10-682):

[167] Թումանյանը ժամանակակիցների հուշերում, էջ 417 (այսուհետև՝ ԹԺՀ, էջը կնշվի մեջբերումներին կից):

Գրում և առանձնապես սպասում էր երեխաների նամակներին: Այսպես, Ուրավելից երեխաներին գրած մի նամակ պահպանվել է միայն Նվարդ Թումանյանի «Հուշեր և զրույցներում»: Այդ նամակում Թումանյանը սովորեցնում էր երեխաներին ուղևորությունների ընթացքում բնության և մարդկանց կյանքի մասին գրի առնել ամեն ինչ՝ ուրախ և տխուր. «Սիրելի Մուշեղ, Աշխեն և Նվարդ, ձեր հիշատակարաններն այնքան կարճ են, որ ավելի շուտ մոռացարաններ են... Բնությունը - ժողովուրդը, նրանց կերպարանքը, ապրուստը, ձեր կարծիքը այդ բոլորի մասին, ձեզ հետ պատահած ու ձեր մոտիկներին պատահած դեպքերը»[168]:

Երբ և որտեղ էլ եղել է Թումանյանը, երբեք չի մոռացել ժողովրդական բանահյուսական նյութեր ամբարելու, միևնույն լեգենդի, հեքիաթի զանազան տարբերակները ձեռք բերելու, դրանք համադրելու, դրանցում ժողովրդական իմաստությունը հայտնաբերելու գերխնդիրը: Ուրավելը նույնպես բացառություն չէր: Այստեղ հուլիսի 1-ին նա գրի է առնում «Հոգեհանը» լեգենդը, որը պատմում է գիշերով Ղըրխքեսալովը (Կիրքեսալով): Լեգենդը վերաբերում էր Ախալցխայի և Ուրավելի մեջտեղում գտնվող Հոգեհան բարձունքի ստուգաբանությանը, ինչպես Փոցխովի ձորից գեղեցիկ Շամոն ստիպում է իր սիրուց տառապող Համոյին՝ իբրև սիրո հավաստիք իրեն ուսին դրած, սրինգ նվագելով ու պարելով՝ տանել սարի գագաթը, որը, սակայն, դառնում է սիրատենչ և անձնազոհ պատանու գերեզմանը.

- Այժմ քո սերին հավատում եմ ես,
Այս ժամից ահա քոնն եմ հավիտյան,
Ճըչաց աղջիկը, գըրկեց վերջապես,
Գըրկեց Համոյի... դիակն անկենդան:

Թումանյանը հեշտությամբ է գրում այս լեգենդը[169]: Պահպանվել է նրա խոստովանությունն այդ մասին իշխանուհի Մարիամ Թումանյանին

---

[168] **Նվարդ Թումանյան,** Հուշեր և զրույցներ, Երևան, 1987, էջ 22 (այսուհետև՝ ՆԹ, էջը կնշվի մեջբերումներին կից):

[169] Թումանյանը լեգենդը գրել է Ուրավելում, սակայն վերջնական մշակումն ավարտել է նույն թվի դեկտեմբերին և հանձնել է «Մուրճին» տպագրության՝ ծանոթագրելով նաև Հոգեհան լեռան վրացերեն ու թուրքերեն անունները և այն, որ Փոցխովի ձորը Ախալցխայի ձորն է. «Վրացիք ասում են «Սուլթմեդիա» - հոգին դուրս եկավ, իսկ թուրքերը՝ «Օղլան փաթրալան» - տղա ճաքեցնող» («Մուրճ», 1902, N 12, 35-37):

ուղղված նամակում. «Գիտեք, երբ որ մարդ առողջ է, շուտ է տպավորվում և հեշտ է գրում» (9, 253):

Թումանյանը մտադրվում է ճանապարհորդել մոտակա գյուղերում՝ լեգենդներ և նյութեր հավաքելու, ինչպես նաև աշուղների ու աշուղության մասին տեղեկություններ ձեռք բերելու համար:

Թումանյանը լսում է, որ մոտակա թուրքաբնակ գյուղում մի աշուղ է ապրում: Անմիջապես հրավիրում է նրան: Թեև աշուղի երգացանկն այնքան էլ մեծ չէր, բայց Թումանյանը նրանից գրի է առնում իր կարծիքով Սայաթ-Նովայի թուրքերեն խաղերից մեկը՝ «Ղադըր մավլամ, դու դըր սան դիլադըմ» («Տե՛ր իմ հզոր, ուզածս այս է քեզանից») սկսվածքով, որն ուղարկում է ընկերոջը՝ Փիլիպոս Վարդազարյանին: Թումանյանը շփոթում էր. նրա գրի առած չափածո ոտանավորը ոչ թե Սայաթ-Նովայից էր, այլ պարսկերեն գրված «Սայադի և Սադաթի» հեքիաթից, որի հեղինակն աշուղ Փասանդին է:

Ուրավելում հիմնականում ապրում էին Էրզրումից գաղթած հայերը, որոնք տեղյակ չէին տեղի հինավուրց ավերակների, սար ու ձորերի, գետ ու լճերի հետ կապված ավանդություններին: Չանգամանք, որ ավելի էր մեծացնում Թումանյանի՝ գյուղերում ճանապարհորդելու ցանկությունը. «Բայց որքա՜ն մեծ բան է, եթե գրողը կարողանա ճանապարհորդել, ուսումնասիրել իր ժողովուրդն, նրա ավանդությունները, լեզուն, ադաթները: Սաստիկ զգում եմ այս կարիքը ամեն անգամ, **երբ լինում եմ ժողովրդի մեջ - ծո՛վ է, ծով**» (9, 264):

Եվ, իրոք, Թումանյանը մտադրվել էր 1901 թ. օգոստոսի սկզբին դուրս գալ Ուրավելից, մի քանի օր մնալ Աբասթումանում, այնուհետև Ախալքալաքի և Շիրակի գավառներով, «եթե հաջողի» (9, 268), Ալեքսանդրապոլից սեպտեմբերի սկզբին, Կարսի երկաթուղով վերադառնալ Թիֆլիս: Մեծ ցանկություն ուներ տեսնել Անին: Ախալքալաքից հրավեր ստանալուց հետո սպասում էր Փիլիպոս Վարդազարյանի նյութական աջակցությանը, որ դուրս գար ամառանոցից, մանավանդ որ վատառողջ էր: Սաստիկ շոգերը խոնավ Ուրավելում անտանելի էին դառնում, և նա ավելի հաճախ էր ջերմում, լեռնային չոր օդի կարիք ավելի շատ էր զգում: Թումանյանն ուզում էր ճանապարհորդել ինչպես լեգենդներ հավաքելու և ժողովրդին մոտ լինելու նպատակով, այնպես էլ Թմկաբերդը տեսնելու համար, որի մասին արդեն լսել էր. «Թմկաբերդի լեգենդան՝ այն կինը, որ ուզեց շահի թագուհին դառնալ» (9, 268):

Ուրավելում շատերը հողատարածքներ են վերցնում ամառանոցներ կառուցելու համար: Թումանյանը մի պահ նույնպես այդպիսի ցանկություն է ունենում: Պատճառը, հավանաբար, Ուրավելի ջուրն էր, որը բարերար ազդեցություն էր ունեցել բանաստեղծի առողջության վրա. «Սաստիկ սիրեցի Ուրավելի ջուրը..., և առհասարակ հրաշքներ է գործում» (9, 271): Այդ մասին պատմում է նաև Նվարդ Թումանյանը. «Մի օր Ուրավելի ձորով բարձրանում է գետի հունքով... երկար ժամանակ մնում է ջրի մեջ... հանկարծ սառնություն զգում... եկավ, հիվանդացավ ու սկսեց ջերմը... Հիվանդ ժամանակ շարունակ հիշում էր գետի ջուրը. «Զարմանալի պարզ էր, վճիտ ու սառը...»,- շատ էր սիրում Ուրավելը: Մտածում էր երկու սենյակ ունենալ Ուրավելում» (ՆԹ, 104):

Թեև Ուրավելը փոքրիկ քաղաք էր, բայց հանցագործություններն այնտեղ քիչ չէին[170]: Այդ պատճառով Թումանյանը մի ատրճանակ էր գնել: Չնայած այդ զգուշությանն ու անհանգստությանը՝ նա իրեն արտաքուստ այնքան ուրախ էր պահում, որ բոլորը համոզվում էին, որ նրա շուրջը միայն ուրախությունն է իշխում. «Այստեղ ինձ շատ են հավանում և իբրև մարդ... ասում են՝ կռվելու անընդունակ ես դու» (9, 269):

...Իսկ հրավերքները անվերջ շարունակվում էին, և միևնույն մարդուն կամ ընտանիքին մեկ անգամ հրավերն ընդունելը չէր գոհացնում. շուրջբոլորը անվերջ ցանկանում էին վայելել Թումանյանի ներկայությունը: Ինչպես հուլիսի 18-ին, այնպես էլ օգոստոսի 4-ին Թումանյանը ճաշի էր հրավիրված գրող Մաղաք Պետրոսյանի տուն, որի կինը Օլգա Թումանյանի ընկերուհին էր՝ «շարունակ հիվանդ»: Հանդիպում է նաև Արտիկի ախալցխացի ընկերներից մեկի հետ:

Ուրավելի բնակիչներն ու հովեկներն այնպես են կապվում բանաստեղծին, որ մի քանի անգամ խանգարում են Ուրավելին հրաժեշտ տալու նրա մտադրությունը: Ախալցխայում նույնպես սրտատրոփ սպասում էին նրան: Օգոստոսի 6-ին կառք են վարձում և ուղարկում Թումանյանի ետևից: Ուրավելցիները թույլ չեն տալիս, որ նա մեկնի, կառապանին տալիս են հետդարձի վճարը և ճանապարհում առանց Թումանյանի: «Էլ քեֆ, ներկայացում, պարեր, մի խոսքով շատ պատվեցին»,- գրում է բանաստեղծը (9, 270): Հարություն Հարությունյանի տանը օգոստոսի 6-ին կազմակերպված այդ խնջույքին ներկա էին ախալքալաքցի երիտա-

[170] Օգոստոսի լույս 1-ի գիշերը թալանել էին Թումանյանի լվացք անողի տունը (9, 269):

սարդներ՝ ինժեներ Հովհաննես Կարապետյանը, Վարդան Շահպարոնյանը և ուրիշներ: Թումանյանն այդ խմբի համար հանպատրաստից, «տեղն ու տեղը» երգիծական ոտանավորներ է հորինում և արտասանում՝ չափածո բնորոշելով ամեն մեկին:

Հաջորդ օրը՝ օգոստոսի 7-ի առավոտյան դուրս է գալիս Ուրավելից և ուղևորվում Աբասթուման:

Կարելի է միայն պատկերացնել, թե Թումանյանի ներկայությունը մեկ օր ավելի վայելելու համար կառքը ետ ուղարկած ուրավելցիները ինչպիսի ջերմությամբ ճանապարհեցին սիրելի բանաստեղծին. «Ուրավելի անտառները թնդացին երգերով, ուռաներով ու հրացանների որոտով և երկար ձեռքերի վրա բարձրացրած թռցնում էին օդի մեջ» (9, 270): Նույնը վկայում է ականատեսը. «Մենք հանաքներով, ուռաներով ճանապարհեցինք նրան, իսկ նա ժպտալով երկար ժամանակ ձեռքով հրաժեշտ էր տալիս» (ԹԺՀ, 417): Ընդառաջելով Շահպարոնյանի խնդրանքին՝ Թումանյանը խոստանում է այցելել Ախալքալաք:

Դուրս գալով Ուրավելից և հասնելով Աբասթուման՝ Թումանյանը հաստատվում է Վարդազարյանների տանը, ուր պատրաստվում էր մնալ մինչև Ախալքալաք գնալը՝ օգոստոսի 12-13-ը: Վարդազարյանները մտադիր էին ավելի երկար պահել Թումանյանին, թեև նրան սրտատրոփ սպասում էին ախալքալաքցիները: Օգոստոսի 10-ին Փիլիպոս Վարդազարյանի քրոջ՝ Մարուսյայի ուղեկցությամբ Թումանյանն այցելում է Աբասթումանում Ալեքսանդր Երրորդի 1899 թ. վախճանված որդու՝ Գեորգի Ալեքսանդրովիչի պալատ: Տխուր խոհեր են պատում բանաստեղծին մարդու կյանքի անցողիկության վերաբերյալ: «Ամեն բան, ինչպես թողել է, այնպես էլ մնում են. կիսատ թողած Նանսենի ճանապարհորդությունը սեղանի վրա, շորերը իրանց տեղը կախած, հուշատախտակի վրա ինչ-որ խզմզած... Տխուր-տխուր մտքեր են ծագում մարդու հոգում: Տեսնում ես՝ ինչպես անցնում է մարդ և միայն իր հետքն է մնում, և այն էլ նայած կարողացել է թողնել, թե չէ» (9, 272): Ալեքսանդր թագավորի աղջկա սքանչելի այգուց վարդեր է քաղում և իբրև հաշտության նշան ուղարկում կնոջը[171]:

[171] Թումանյանին դուր չէր եկել զոքանչի և աներոջ՝ Հովհաննես քահանա Մարտիրոսյանի որոշումը՝ երեխաներին իր կամքին հակառակ տանել Շուլավեր, որովհետև ինքն արդեն Աղբուլաղում ամառանոց էր վարձել նրանց համար երկու ամսով:

Մի շաբաթ Աբասթումանում մնալուց հետո, օգոստոսի 13-ին կամ 14-ին, Թումանյանը մեկնում է Ախալքալաք, որտեղ հասնում է գիշերվա ժամը տասին, և իջևանում է Շահպարոնյանների տանը: Այդ ընտանիքի մասին Թումանյանը գրում է. «Այն տունը, ուր ես հրավիրված էի, ուր մնում էի, մի հրաշալի ընտանիք է՝ Շահպարոնյան» (9, 277): Թումանյանն առաջին իսկ օրվանից տեղի հարուստների հրավերքներից հանգիստ ու դադար չուներ. «ամեն օր ճաշին մի տեղ ենք լինում, ընթրիքին՝ ուրիշ տան՝ շրջապատված շատ լավ մարդկանցով, միանգամայն ամենաքաղցր տպավորություններով եմ թողնելու այս քաղաքը, ուր այնքան սեր ու պատիվ ցույց տվին ինձ» (9, 274):

Այս հանգամանքը նույնիսկ տեղի ոստիկանության ուշադրությունն է գրավում, և նա հետաքրքրվում է, թե ով է այդքան մեծ սիրո և հարգանքի արժանացած մարդը: Թումանյանը նվերներ էր ստանում ոչ միայն Վարդազարյաններից, Մարուսյայից և ընկեր-բարեկամներից, այլև անծանոթ մարդկանցից: Այսպես, մի արհեստավոր արծաթե գրիչ է նվիրում, «որ նրանով գրեմ» (9, 274):

Թումանյանը Ախալքալաք էր եկել՝ անձամբ տեսնելու Փարվանա (Թափարվան) լիճը և Թմկաբերդի ավերակները, որովհետև լեգենդն առաջին անգամ լսելուց հետո միանգամից մտադրվել էր գրել «Փարվանան» և «Թմկաբերդի առումը»: Տարբեր երկերի ժողովրդական տարբերակները Թումանյանին պատմել էր Ջավախեցին, որն իր հերթին օգտվել էր «Հազարան բլբուլի»՝ Գանձայից Պատշինոնց Ավենի, Սաթխեցի Կարոյի պատմած տարբերակներից (ԹԺՀ, 429):

Թումանյանը հինգ օր շարունակ շրջում էր Ախալքալաքի սարերում ու ձորերում, հիանում բնության տեսարաններով. «...Ինչ-որ ուրախ տրամադրություն է ստեղծվում, կարծես ժպտում է երկինքը» (ԹԺՀ, 418): Ականատեսները վկայում են, որ Ախալքալաքն իր սիզավետ խոտերով, ծաղկավետ բլուրներով, վճիտ աղբյուրներով ու ջրվեժներով Թումանյանի վրա խոր տպավորություն է թողնում: Ասում են, որ նա ժպտալով կրկնում էր. «Բիբլիական Եդեմը հենց էս է, որ կա...» (ԹԺՀ, 418):

Ախալքալաքում գտնվելու վեցերորդ օրը Թումանյանը մեկնում է Թմկաբերդ, որը գտնվում էր քաղաքից արևմուտք՝ մոտ 15 կմ հեռավորության վրա, Քուռ գետի անդնդախոր ձորերում: Ճանապարհին բանաստեղծն արտահայտում է թռչելու, թևեր ունենալու և ինքնաթիռի նման սավառնելու երազանքը. «Ա՜խ, ինչ լավ կլիներ, եթե մարդիկ թևեր ունենա-

յին կամ թևերին փոխարինող մի բան...» (ԹԺՀ, 418): Այս ցանկությունը ծնվում էր նաև ձիով գնալու անհարմարությունից: Ախալքալաքից Գյումուրդա գնալու ճանապարհին Թումանյանը Ջալալ Տեր-Գրիգորյանին, Վարդան Շահպարոնյանին և մյուս ուղեկցողներին բացատրում էր Թմկաբերդի ավերակները տեսնելու իր մեծ ցանկությունն ու հետաքրքրությունը, գրողի համար իր ապագա հերոսների, տեղագրության ու միջավայրի հետ ծանոթանալու անհրաժեշտությունը: Կեսլուրջ, կեսկատակ Թումանյանը ասում է. «Չէ՞ որ ես զորքերի ու ճակատամարտի մասին եմ գրում, պիտի անձամբ տեսնեմ՝ բերդի մոտ հարմարություն կա՞ զորք շարժելու...» (ԹԺՀ, 402): Ճանապարհին ոգևորված որոշ հատվածներ է արտասանում «Թմկաբերդի առումից» ու «Հազարան բլբուլից»:

...Հասնում են Գյումուրդա հայկական գյուղը, որը Քուռ գետի ձորաբերանին էր՝ Թմկաբերդի դեմուդեմ: Իջևանում են այդ գյուղում, հանգստանում, որովհետև դեպի Թմկաբերդ ձորն իջնելու համար այլևս ձիու ճանապարհ չկար: Մոտ հարյուր քայլից ձորագլխից բացվում է տպավորիչ տեսարան, ահռելի ձոր՝ 1000-1500 մ բարձրությամբ ցից-ցից ժայռեր, օձապտույտ գլորվող-գալարվող գետ, այգիներ և դեպի արևմուտք փռված մի գեղեցիկ լճակ՝ ճոխ բուսականությամբ: Հենց Գյումուրդայի այդ բարձունքից է Թումանյանը հեռադիտակով դիտում Քուռի հովտի վեհ, ահարկու, բայց և գեղեցիկ տեսարանը, Թմուկ բերդի ավերակները: Ներկաներից Ջ. Տեր-Գրիգորյանը, այդ պահին Թումանյանին նմանեցնելով զորահրամանատարի, լուսանկարում է նրան: Երկար դիտելով վայրի գեղեցկությամբ հմայող բնության տեսարանը՝ Թումանյանը ծոցատետրում նշումներ է անում, պառկում խոտերի մեջ և ժպտալով ասում. «Ախ, թևեր, թևեր... այստեղից ուղղակի կթռչեինք Թմկաբերդ... վայրենի վեհություն, զմայլելի փարթամություն...» (ԹԺՀ, 419-420): Այդ թևերը բանաստեղծական վառ երևակայության թևերն էին, որոնցով նա փորձում էր թափանցել դարերի խորքը և բնության վայրենի վեհության ու զմայլելի փարթամության մեջ հայտնաբերել բնության խորհուրդը:

Մոտ երկու ժամից վերադառնալով՝ Թումանյանը Շահպարոնյաններին խնդրում է պատմել Թմկաբերդի ավանդությունները՝ հույս ունենալով որևէ մանրամասն ավելացնել իր իմացածին: Ավանդության նոր տարբերակի փոխարեն Թումանյանին պատմում են, որ 1860-ական թվականներին մի քուրդ հովիվ ավերակներում պատահաբար գտել էր հայերեն

մի եկեղեցական գիրք ու մի զանգ՝ հայերեն մակագրությամբ, ինչպես նաև այլ իրեր, որոնք հանձնել է Ախալցխայի հոգևոր հայրերին:

Այնուհետև Թումանյանը, շրջագայելով Ախալքալաքում, լինում է Տավշանթափա ծաղկավետ բլրակում, Թափարվան գետակի ժայռոտ մեծ ձորում և Քառասուն աղբերանց ծաղկավետ ձորակում: Մի երկու անգամ էլ գնում է ձուկ որսալու: Թումանյանին պատվելու համար քաղաքի հասարակությունը, հավանաբար, օգոստոսի 21-ին ճաշկերույթ-հանդես է կազմակերպում Թափարվան գետակի ափին՝ Վարդան Շահպարոնյանի քաղաքամերձ շոգեջրաղացի երկրորդ հարկի դահլիճում: Ներկա էին մոտ 150 մարդ: Կանայք եկել էին ազգային տարազով: Թումանյանն արտասանում է Ուրավել այցելած դեպի Փարվանա և Թմկաբերդ իրեն ուղեկցող ախալքալաքցիների խմբի մասին գրած իր բանաստեղծությունը, «որով ներկա եղողներին հմայեց ու պաշեցրեց» (ԹԺՅ, 403):

Շրջակա գյուղերում նույնպես խանդավառություն է առաջանում: Գանձայից և այլ վայրերից հրավերներ է ստանում: Եկել էր Ղազար Տեր-Գրիգորյանը (Ջավախեցի) և Թումանյանին հրավիրում էր Գանձա: Ու թեև Թումանյանը մտադիր էր մերժել հրավերը ու վերադառնալ Թիֆլիս, սակայն Ջավախեցու համառությունը մեծ էր, բացի այդ մեծ էր նաև Թումանյանի ցանկությունը տեսնել Փարվանա լիճը, որը Գանձայից երեք կմ հեռավորության վրա էր: Ավելին, ըստ Ջավախեցու հուշերի, Թումանյանն ինքն էր նամակով խնդրել ուղեկցել իրեն. «Ղազար ջան, գալիս եմ Փարվանի փերիներին տեսնեմ, կգաս Ախալքալաք, որ առաջնորդես»[172]:

Եվ օգոստոսի 22-ին Թումանյանը Ախալքալաքից ուղևորվում է Գանձա: Այդ երեսուն կիլոմետրն անցնելու համար Թումանյանին ձի են առաջարկում: Բանաստեղծին տխրեցնում է այդ տանջալից ճանապարհը ձիով գնալու հեռանկարը, բայց երկաթուղու մասին երազելով, այնուամենայնիվ, ճանապարհվում է:

Գանձան գավառում հայտնի էր իբրև ամենաառատ ու բազմերանգ ծաղիկներ ունեցող բնության, բարձրադիր լեռների միջև ծվարած մի գյուղ: Ամեն ամիս իր հատուկ ծաղկախումբն ուներ, մայիսից մինչև սեպտեմբեր նույնիսկ արտերն ունեին գունավոր փարթամ գորգի տեսք: Թումանյանին ներկայացնում են այն ճանապարհները, որոնք տանում են

---

[172] Այդ նամակը մեզ անհայտ է, նրա բովանդակությունը պահպանվել է միայն Ջավախեցու հուշերում (ԹԺՅ, 429):

Գանձա. և' ամենակարճ 25 կիլոմետրանոց ճանապարհը, որն անցնում է Աբուլ սարով՝ լեռնոտ ու քարքարոտ, բայց գեղատեսիլ, և' երկարը՝ Սաթխայինը՝ դաշտավայրով, սակայն ոլորապտույտ. նրա երկարությունը 35-40 կմ էր: Բանաստեղծին առաջարկում են ընտրել՝ որ ճանապարհով գնալ, որով վերադառնալ: Նախ, Թումանյանը, նայելով գեղեցիկ, բայց շատ աշխույժ ձիուն, վախեցած կարկամում է. «Չէ, Ղազար ջան, չէ, էդ խելառի հետ գլուխ չունեմ ես (ձիուս մասին էր խոսքը), ինձ համար էշի երիշով մի խելոք ձի գտիր, որ Հիսուսի պես հանգիստ նստեմ վրան, դու էլ Պետրոս առաքյալի նման առաջ ընկիր ու հարթ, հանգիստ ճանապարհով տար ինձ Երուսաղեմ» (ԹԺՀ, 430): Գտնվում է «խելոք ձին», և Թումանյանն ընտրում է երկար ճանապարհը, որպեսզի հնարավորություն ունենա ծանոթանալու գավառի ավելի մեծ մասին: Երբ հասնում են Ջիգրաշեն գյուղին, Թումանյանը հետաքրքրվում է անվան ստուգաբանությամբ: Պատասխան չստանալով՝ հանձնարարական է տալիս. «Բա չես ամաչում, գրականությամբ պարապող մարդ, ամեն օր անցնում ես էս գյուղի մոտով ու մինչև հիմա չգիտես նրա անվան ծագումը: Անշուշտ, մի հետաքրքրական ավանդության հետ կապված կլինի, անպատճառ կիմանաս ու մանրամասն կգրես ինձ» (ԹԺՀ, 431): Անցնելով Ղավուրմա, Օրնձալար գյուղերով, հասնում են Սաթխա, որտեղից գիշերով նրանց խմբին միանում են երկու ուսուցիչ, որոնցից մեկը նստում է բանաստեղծի ձիու գավակին, մյուսը՝ Ջավախեցու: Մեծ ու Փոքր Արագյալ գյուղերն անցնելուց հետ ձիերից իջնում են և ոտքով բարձրանում Ս. Հովհաննու սարը: Թումանյանի վատառողջ լինելն իրեն զգալ է տալիս. նրա խնդրանքով մի քանի անգամ հանգստանում են: Թողնելով հասուն արտերի ոսկե շղթան՝ հաղթահարում են Թումանյանի համար ոչ այնքան դյուրին ճանապարհը և հասնում սարի գագաթին, որտեղից բացվում է սքանչելի տեսարան՝ Փարվանա լիճը: Թումանյանի հիացմունքը բնության այդ տեսարանով դառնում է վարակիչ, փոխանցվում մյուսներին՝ այն աստիճան, որ Ջավախեցու մեջ նկարիչ լինելու անզուսպ ցանկություն է առաջանում, որպեսզի կարողանար կտավի վրա անմահացնել Թումանյանի՝ բնության նկատմամբ պաշտամունքի այդ անմոռանալի պահը, բնության անսահման գաղտնիքների մեջ թափանցելու բանաստեղծի ձգտումը. «Ո՞վ կարող էր թափանցել... այդ գաղտնիքը, եթե ոչ միայն մեծ բանաստեղծը, որ Պուշկինի արձանի պես ձեռքերը խաչած կրծքին՝ որպես բնության սքանչելի գեղեցկությունը լրացնող զարդերից մեկը, իր բարձր հասակով քա-

րացել էր Ս. Հովհաննու կատարին ու արծվի խորաթափանց հայացքը հառել էր դիմացը նազանքով խլվլացող, հմայիչ այդ լճի խորքերը» (ԹԺՀ, 432): Բնության կախարդող տեսարանի, ծաղիկների շշմեցուցիչ բուրմունքի առաջացրած խորհրդավոր լռությունը հանդգնում է խախտել Հովի. Թումանյանը. «Ես կարծում էի, թե Լոռուց գեղեցիկ տեղ չկա աշխարհում... Ձեր Ջավախքն անցավ Լոռուց... էն էլ առանց ծառ ու թփի» (նույն տեղում): Երկար նստում են Ս. Հովհաննու կատարին: Թումանյանը ոգևորված մերթ հատվածներ է արտասանում իր բանաստեղծություններից, մերթ անեկդոտներ պատմում տեսած-ապրածից: Նրան շրջապատողները դեռ երբեք Թումանյանին այդպես վերացած չէին տեսել. «Փարվանի «փերիները» գերել էին Լոռվա կտրիճին» (նույն տեղում):

Երբ գիշերվա ժամը 3-ին հասնում են Վահան Տերյանի հայրական տունը, տեսնում են ոտք դնելու տեղ չկա: Գյուղի բոլոր ուսուցիչները, ուսանողները, լսելով Թումանյանի գալու լուրը, երկար սպասելուց հետո պարզապես մնացել էին գիշերելու այնտեղ. քնած էին թախտին, հատակին և ամենուր: Հաջորդ օրը կեսօրին 10-15 հոգով ճամփա են ընկնում Փարվանա: Տեղացիների վկայությամբ՝ լիճը, որ միշտ պարզ ու վճիտ է եղել, այդ օրը Թումանյանին դիմավորել է կատաղած՝ «ծագը կորցրած վագրի պես» մռնչալով, հուժկու ալիքներով: Ծրագրված էր Թումանյանին նավակով տանել լճի խորքը՝ Փարվանա իշխանի սպիտակ ապարանքը տեսնելու, սակայն փոթորկված լիճը, որից նույնիսկ «ծառս էին լինում» եկվորների ձիերը, թույլ չի տալիս: Լճի հուզմունքը փոխանցվում է Թումանյանին. «Իր երկար բազուկները մեկնած դեպի լիճը, մերթ գոռում էր լճից ավելի բարձր, արտասանում քառյակներ, մոնոլոգներ, մերթ բողոքում, մերթ աղերսում» (ԹԺՀ, 434):

Մինչդեռ վերադարձի ճանապարհին բանաստեղծը լուռ էր: Հավանաբար, արդեն խորհում էր Փարվանա դստեր, անշեջ սիրո և հանուն այդ սիրո թիթեռներ դարձող Փարվանա կտրիճների մասին, որովհետև տեղ հասնելով՝ անմիջապես առանձնանում է և հենց Տերյանների տանն է սկսում շարադրել «Փարվանան»: Դուրս գալով սենյակից՝ բոլորի համար արտասանում է «Փարվանայի» նախերգանքն ամբողջությամբ.

Բարձրագահ Աբուլն ու Մթին սարեր
Մեջք մեջքի տված կանգնել վեհափառ,
Իրենց ուսերին Ջավախքից էլ վեր՝

Բռնած պահում են մի ուրիշ աշխարհ...

Եվ անմիջապես ստեղծագործական թռիչքի պահի բերկրանքը լիուլի վայելած բանաստեղծն անցնում է թամադայական իր պարտականություններին՝ զգալով, որ ստեղծել է իր լավագույն, անմահ գործերից մեկը: Լսածի ու տեսածի տպավորությունները, ներշնչանքն ու ապրվածը ակնթարթորեն մի կախարդական ուժով վերածվել էին բնության ու մարդկային հոգու գեղեցկությունների հոգեբանական առումով դեռևս անորսալի գեղարվեստական պատկերի: Իրականությունը որպես հոգեբանական ազդակ միահյուսվելով բանաստեղծի գեղարվեստական երևակայությանը, ձևավորում է երկրային ու հեքիաթային գեղեցկության հանդեպ մարդ արարածի հիացմունքը, նրա երազանքի ու անդիմադրելի ձգտման հարատևությունը:

Ստեղծագործական հզոր թռիչքի պահը չի խանգարում Թումանյանմտածողին սեղանի շուրջը խոսք ու զրույց բացել Նիցշեից, Տոլստոյից, քրիստոնեական վարդապետությունից, կյանքից, գրականությունից ու փիլիսոփայությունից: Թումանյանի հիմնական զրուցակիցը դառնում է Վահան Տերյանի հայրը՝ Սուքիաս Տեր-Գրիգորյանը, որի բանիմացությունը գիտական, փիլիսոփայական աշխատություններից, ռուս դասականներից զարմացնում է բանաստեղծին[173]: Գանձայում անցկացրած երեք օրերի ընթացքում Թումանյանը անչափ մտերմանում է նրա հետ: Վահան Տերյանը գրում է. «Շատ անգամ հորս հետ խոսելով՝ լուսացնում էին ողջ գիշերը, և երկուսն էլ չէին կշտանում» (ԹԺՀ, 436):

Մոտ երկու շաբաթ մնալով Ախալքալաքում, որը նրա համար անցավ «երկու օրի նման», Թումանյանը հեռանում է հարուստ տպավորություններով՝ իր բաժանումով տխրեցնելով բոլոր նրանց, ովքեր վայելում էին իր ներկայությունը. «Իմ տանտիրուհին ինձ ճամփու դրեց մի հեռացող որդու նման և առհասարակ ամբողջ ընտանիքը» (9, 277):

---

[173] Վահան Տերյանի հայրը դպրոց չէր ավարտել, սակայն ինքնակրթությամբ ձեռք էր բերել գիտելիքների հսկայական պաշար: Ինքնուրույն սովորել էր ռուսերեն, իսկ Ալֆրեդ Դրեյֆուսի դատավարության օրերին, արդեն 60 տարին անց լինելով, սկսել էր ֆրանսերեն սովորել, որպեսզի Զոլայի ելույթները բնագրով կարդար: Նրան շատ էր հուզել այն հանգամանքը, որ վերջինս իր համարձակ ելույթների համար մեղադրվել և դատապարտվել էր մեկ տարվա ազատազրկման, թեպետ անցնելով Անգլիա՝ խուսափել էր բանտարկությունից:

1901 թ. օգոստոսի 27-ին Թումանյանն ուղևորվում է Ալեքսանդրապոլ: Ղարախաչի սարերում փոթորկի ու ծյան պատճառով ստիպված մնում է կայարանում: Հաջորդ օրը՝ օգոստոսի 28-ի առավոտյան, հասնում է Ալեքսանդրապոլ, իջևանում հյուրանոցում. «Բայց մի ժամ տևեց հյուրանոցը» (9, 277): Գալիս է Ավետիք Իսահակյանը՝ քույրերի հետ և միասին կառքով հասնում են Ղազարապատի իրենց կալվածքը: Հանդիպման պահին՝ ողջագուրումից անմիջապես հետո, Թումանյանը խնդրում է ուղևորություն կազմակերպել դեպի Անի, որը Ղազարապատից 25 կմ տարածության վրա էր: Թումանյանը և Իսահակյանը դիմում են Հովհաննես Կոստանյանին, որպեսզի վերջինս ուղեկցի իրենց Անի, քանի որ նա բազմիցս եղել էր Անիում, ուսումնասիրել, պարբերաբար տեղեկություններ հաղորդել ակադեմիկոս Ն. Մառին Անիի և նրա շրջակայքի մասին, աջակցել էր Անիի պեղումների նախապատրաստական աշխատանքներին, Անիի մասին բավականաչափ նյութեր ուղարկել Ղ. Ալիշանի «Այրարատի» համար: Բնականաբար, Հ. Կոստանյանն ուրախությամբ համաձայնում է, և երեք բանաստեղծները օգոստոսի 30-ին ուղևորվում են Անի: Իսահակյանը նշում է. «Օհաննեսը անհամբեր էր, ուզում էր շուտով տեսնել Անին» (ԹԺՀ, 13): Ճանապարհին կանգ են առնում Ղազարապատում՝ Ավ. Իսահակյանի մորը տեսնելու համար: Այդ երկու օրվա ընթացքում Թումանյանը ջրաղացպանից և գյուղացիներից գրի է առնում հեքիաթներ ու ժողովրդական երգեր, հարցուփորձ անում «Հազարան բլբուլի» մասին: Այդ շրջանում երկաթուղին հասնում էր մինչև Աղին. երթևեկում էին միայն բեռնատար գնացքներ: Աղինից այցելուները սովորաբար ոտքով էին գնում, հասնում Արփաչայ և անցնելով գետը՝ բարձրանում Անի: Այդ ճանապարհով ուղևորվեցին նաև բանաստեղծները, որոնք ճանապարհին բավական ժամանակ ունեին զրուցելու Անիի պատմությունից, ճարտարապետությունից, արաբների արշավանքներից, կործանարար երկրաշարժից...: Եվ երբ բարձր-բարձր զրուցելով հասնում են Անիի պարիսպներին ու բուրգերին՝ Ավագ դռանը, լսում են հրազենի կրակոց: Գիշերով ավերակ քաղաքի մեռելային լռությունը խախտեց նաև դուրս թափված թափառող շների հաչոցը: Ավ. Իսահակյանը հիշում է. «Մթության մեջ պայթեց հրացանը, որի գնդակն անցավ մեր երեքիս առաջով, եթե մի քայլ առաջ լինեինք, ով գիտե ինչ պիտի լիներ մեր վիճակը» (ԹԺՀ, 14): Շփոթված բանաստեղծների վրդովմունքին և բացականչություններին դարպասների միջև հայտնված վանատան պահապանը՝

հրացանը ձեռքին, բացատրում է, որ վանահոր քաղաք գնալու պատճառով ավերակներում միայնակ է մնացել և քանի որ դաշտային աշխատանքներն էլ վաղուց էին ավարտվել՝ ոտնաձայներ լսելով կարծել է՝ ավազակներ են: Ավ. Իսահակյանը բառացի վերարտադրում է այդ զրույցը.

«- Տո՛,- ասաց Օհաննեսը ծառային, բերդանկա հրացանը տեսնելով,- մի գյուլլով երեք բանաստեղծի պիտի սպանեի՞ր:

- Լավ պրծաք, ըսել է՝ ձեր վերջը չէր եկեր,- ամենայն անտարբերությամբ պատասխանեց ծառան» (ԹԺՀ, 14):

Պատահական հրազենի կրակոցից փրկված՝ հաջորդ օրը Թումանյանն ընկերների հետ քայլերն ուղղում է Մայր եկեղեցի, լինում է պալատում, աշտարակում, Ծաղկոցաձորում, Հռոմոսի նշանավոր վանքում, հիանում նրա՝ սքանչելիք համարվող նախագավիթով: Հովհ. Կոստանյանը նկարում է Հովհաննես Թումանյանին և Ավետիք Իսահակյանին Աշոտ Ողորմած թագավորի դամբարանի աջ ու ձախ կողմերում կանգնած: Անին իր հոյակապ ճարտարապետությամբ մեծ տպավորություն է թողնում. «Օհաննեսը հիացմունքով և ուշով դիտում էր ամեն մի բեկոր՝ արվեստի կնիք կրող: Լուռ, մտասույզ թափառում էր՝ անցյալի հետ ներքին խոսակցությամբ տարված, կանգնում էր հրաշակերտ շենքերի առաջ, հայացքը լարած նայում էր սյուներին, կամարներին, քանդակներին, ապա աչքերը գոցում և ականջները լարում, կարծես մի երաժշտություն էր լսում ո՛չ սովորական, ո՛չ այս աշխարհից»,- վկայում է Ավ. Իսահակյանը (ԹԺՀ, 14): Մյուս ականատեսը՝ Հովհ. Կոստանյանը, ավելացնում է. «Թումանյանը հաճախ այդ հուշարձանների առաջ կանգնած բացականչում էր. «Ի՜նչ հոյակապ ճարտարապետություն, որքա՜ն բարձր մշակույթ է եղել, որքան ճաշակ, եռանդ և աշխատանք, և դարերից հետո նայում են էնպես, կարծես երեկ են շինվել» (ԹԺՀ, 463):

Դեռ Անին չտեսած՝ Թումանյանը ցանկություն ուներ դրամա գրել Հովհաննես Սմբատ Բագրատունու (1021-1047) կյանքից, որը, թեպետ «թանձրամիտ ու թանձրամարմին», գրասեր ու իմաստասեր մարդու համբավ ուներ: Կարելի է միայն պատկերացնել, թե որքան դառնացած, հայրենիքի փառավոր անցյալի կորստյան վիշտը հոգում, ծանրացած սրտով է Հայոց ազգային բանաստեղծը հեռացել Հայոց երբեմնի փառավոր մայրաքաղաքի ավերակներից: Երբ Անիի պարիսպներից դուրս է եկել, մի վերջին անգամ հետ է նայել և ասել. «Ինչքան մարդ պետք է անբան-անասուն լինի, որ ձեռք բարձրացնի այս հրաշալիքների վրա...

Մի՞թե այս գեղեցկությունը պիտի մեռնի առանց հետք թողնելու հայկական և ուրիշ ժողովուրդների արվեստի վրա... Այսօր զարգացման ի՞նչ աստիճանի հասած կլիներ մեր արվեստը, եթե թուրք-թաթար ցեղերը չքայքայեին մեր ժողովրդին» (ԹԺՀ, 14-15):

Արևը մայր չմտած՝ Թումանյանն ընկերներով հասնում է Անին: Քանի որ բեռնատար գնացքը դեռ չկար, խարույկ են վառում և թեյի սեղանի շուրջ հավաքում շրջակա գյուղերի բնակիչներին, նրանց հետ զրուցում Ալեքսանդրապոլ-Երևան երկաթգծի, ցարիզմի վերաբերմունքի, աշխատանքային պայմանների և այլնի մասին:

Սեպտեմբերի 1-ի լույս 2-ի գիշերը Անիից Ալեքսանդրապոլ հասած բանաստեղծներին դիմավորում են և նույն օրը՝ սեպտեմբերի 2-ի երեկոյան նրան ուղեկցում են քաղաքային ակումբ Մխիթարյան միաբանության 200-ամյա հոբելյանին նվիրված միջոցառմանը: Մխիթարյանների գործունեության մասին զեկուցել է Պ. Մոճոռյանը, ներկայացրել են երկու վոդևիլ, եղել է ասմունք, համերգ՝ դերասան Խաժակի, երաժիշտ-դաշնակահար Նիկ. Տիգրանյանի և այլոց մասնակցությամբ[174]:

Անի կատարած առաջին ուղևորությունից հետո Թումանյանը սեպտեմբերի 2-ին խոստովանում է. «Հոգնած եմ ու ծանրաբեռնված տպավորություններով... Աշխարհքում եթե մի քանի լավ բաներ կան - մեկն, անշուշտ, ճանապարհորդությունն է: Ճանապարհորդելով մարդու և' աչքն է բացվում, և' սիրտը: Իզուր չեն ասել, թե շատ կարդացողը չի իմանալ, շատ ման եկողը կիմանա: Մանավանդ գրողի համար» (9, 279):

Անիից վերադարձած բանաստեղծները քաղաքից ստացած իրենց տպավորություններն արտահայտում են Վենետիկի մխիթարյանների միաբանությանն ուղղված շնորհավորական հեռագրում՝ շեշտելով. «Ճանապարհորդելով... մենք անդադար հիշում էինք ձեր բազմավաստակ միաբանությունը, որ պանդխտության մեջ երկու հարյուր տարի շարունակ երգեց ու պատմեց մեր տխուր հայրենիքն ու նրա ավերակները...» (9, 279): Ընդգծում էին նաև մխիթարյանների մշակութային մեծ ավանդը՝ առաջինը մայրենի լեզվով եվրոպական հանճարներին հային ծանոթացնելը և երախտագետ սրտով ողջունելով պանծալի հոբելյանը. «Համբուրում անմահ Մխիթարա և նրա մեծանուն հետնորդների շիրիմները» (9, 280):

[174] «Մշակ», 1901, N 192:

Սեպտեմբերի 4-ին Թումանյանը գնացքով հասնում է Ղարաքիլիսա, որտեղ նրան դիմավորում են Թումանյանի համագյուղացիներից Մամիկոնյան Երվանդը և Թումանյանի հորաքրոջ թոռը՝ Տիրուհին: Ղարաքիլիսան Թումանյանի այս ճամփորդության վերջին կանգառն է, որտեղից Թումանյանը վերադառնում է Թիֆլիս:

***«Պատմա-բանասիրական հանդես», 2008, N 3, էջ 60-76***

